ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆԻ ՍՊԱՆՈՒԹԵԱՆ
110-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
Ա.

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆԻ ՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԲ.

ԳԱՀԻՐԷ
2018

ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆԻ ՍՊԱՆՈՒԹԵԱՆ
110-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
Ա.

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆԻ ՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԲ.

ԳԱՀԻՐԷ
2018

# ՄՈՒՏՔ

Արձակագիր, գրականագէտ, լրագրող, Հնչակեան, ապա Վերակազմեալ Հնչակեան գործիչ Արփիար Արփիարեանի (Սամսոն, 1851 – Գահիրէ, 12 Փետրուար 1908) դէմ կատարուած է երկու մահափորձ, մէկ միջանկեալ յարձակում եւ սպանութիւն։ Առաջին մահափորձը եւ միջանկեալ յարձակումը կազմակերպած է Հ. Յ. Դաշնակցութիւնը՝ ոչ միաձայնութեամբ, երկրորդ մահափորձը եւ սպանութիւնը՝ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան բռնապետական թեւի առաջնորդ Վահէ Արզունեան եւ իր խմբակը։

Եգիպտահայ բանասէր Տիգրան Գէորգեան առաջինն է, որ 2003-ին ամբողջ ուսումնասիրութիւն մը կը յատկացնէ Արփիարեանի մահափորձերուն եւ սպանութեան։ Ան դիտել կու տայ.

*Ոճրագիտութեան մէջ, արդարեւ, հազուադէպ երեւոյթ է անհատի մը երեք մահափորձի ենթարկուիլը՝ իրագործուած իր ոխերիմ հակառակորդներուն կողմէ. գէթ հայ իրականութեան մէջ Արփիարեան եղաւ մեզի ծանօթ այդ անզուգական զոհը... Արփիարի կենսագիրները՝ որոշ նկատումներով, խուսափած են անոր դէմ կատարուած երեք մահափորձերը մանրամասն նշելէ. այստեղ, առաջին անգամ ընթերցողին ուշադրութեան կը ներկայացնենք երեք մահափորձերուն համապատկերը՝ քաղուած ժամանակակիցներու յուշերէն, եւ անծանօթ մնացած յարձակումի մը մանրամասնութիւնը՝ հաղորդուած իր իսկ կողմէ:*
(Տիգրան Գէորգեան, «Գաղափարի զոհը՝ Արփիար Արփիարեան», *Հայկազեան հայագիտական հանդէս*, Պէյրութ, ԻԳ. հատոր, 2003, էջ 9-57)։

Շուրջ 50 խիտ էջերու մէջ Գէորգեան կը մանրամասնէ մահափորձ-սպանութիւններուն ներքին ծալքերը, կը հրապարակէ նոր փաստաթուղթեր, ինչպէս՝ Միհրան Տամատեանի անտիպ գրութիւնը, եւ կը հիւսէ ամբողջական պատմականը։

Ներկայ գրքոյկիս համար մեծապէս օգտուած եմ Գէորգեանի ուսումնասիրութենէն, իմ կողմէս աւելցնելով յատկապէս Արփիարեանի ժամանակակից մամուլի անսպառ տեղեկութիւնները, ինչպէս նաեւ միջկուսակցական եւ ներկուսակցական մեքենայութիւնները, որոնք պիտի առաջնորդէին մեծ գրողի սպանութեան։

# ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ՈՒՐՈՒԱԳԻԾ

## ՊՈԼՍՈՅ ՇՐՋԱՆ

- 1850 կամ 1851 – Կը ծնի Սամսոն կամ Կ. Պոլիս (Օրթագիւղ)։
- 1867-1870 – Կ'ուսանի Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան Վարժարանը, Հ. Ղեւոնդ Ալիշանի տեսչութեան ժամանակ։
- 1876 – Մինաս Չերազի եւ Մկրտիչ Փորթուգալեանի հետ Պոլսոյ մէջ կը հիմնէ Արարատեան Ընկերութիւնը, նպատակ ունենալով տարածել ուսումը եւ արհեստները։
- 15/27 Յուլիս 1890 – Գում-Գաբուի ցոյցը, կազմակերպութեամբ Հնչակեան Կուսակցութեան։
- 1890-ի երկրորդ կէս – Արփիարեան մաս կը կազմէ հինգ հոգինոց ընդհատակեայ նորակազմ յեղափոխական յանձնախումբի մը, որ կապի մէջ կը մտնէ ուրիշ նորակազմ յեղափոխական խումբի մը հետ։ Մատնութեան պատճառով կառավարութիւնը կը յայտնաբերէ երկու խումբերը։
- 9/21 Նոյեմբեր 1890 – Արփիարեան կը ձերբակալուի։
- 11/23 Նոյեմբեր 1890 – Առաջին ոստիկանական հարցաքննութիւնը Արփիարեանի հետ՝ ըստ *Դրօշակ*ի տուեալներուն։
- 22 Նոյեմբեր / 4 Դեկտեմբեր 1890 – Երկրորդ ոստիկանական հարցաքննութիւնը Արփիարեանի հետ՝ ըստ *Դրօշակ*ի տուեալներուն։
- 12/24 Դեկտեմբեր 1890 – Երրորդ ոստիկանական հարցաքննութիւնը Արփիարեանի հետ՝ ըստ *Դրօշակ*ի տուեալներուն։
- 5/17 Յունուար 1891 – Ազատ կ'արձակուին Արփիարեանի հետ բանտարկուած Վահրամ պէյ Տատեան, բժիշկ Յարութիւն Թիրեաքեան եւ ուրիշներ։
- 6/18 Յունուար 1891 – Արփիարեան ազատ կ'արձակուի։
- 12/24 Յունուար 1891 – *Արեւելք*ի մէջ Արփիարեան կը ստորագրէ Սուլթանին նուիրուած ներբող մը, որ կը հռչակուի «Մեղայագիր» անունով։ Անկէ ետք կը հեռանայ *Արեւելք*էն, կը միանայ *Հայրենիք*ին եւ կը դառնայ անոր կարեւոր խմբագիրներէն մէկը։
- 1895-ի սկիզբ – Արփիարեան կ'անդամակցի Հնչակեան Կուսակցութեան Պոլսոյ մասնաճիւղին եւ կը դառնայ անոր վարիչներէն մէկը։
- 3/15 Սեպտեմբեր 1895 – *Դրօշակ* կը յայտարարէ՝ թէ իր մօտ կը գտնուին 1890-ի ոստիկանական հարցաքննութիւններուն փաստաթուղթերը։

- 18/30 Սեպտեմբեր 1895 – Պապը Ալիի ցոյցը, կազմակերպութեամբ Հնչակեան Կուսակցութեան։

- 13/25 Նոյեմբեր 1895 – Դաշնակցութիւնը նամակ կը ղրկէ *Արեւելք*ին, *Հայրենիք*ին եւ *Ճէրիտէի շարգիէ*ին՝ հրամայելով դադրեցնել իրենց հրատարակութիւնը։ *Հայրենիք*՝ Արփիարեանի գլխաւորութեամբ, կը մերժէ հնազանդիլ։

- 23 Նոյեմբեր / 5 Դեկտեմբեր 1895 – Դաշնակցութիւնը Վճիռ կ'արձակէ սպաննել Արփիարեանը, քանի որ մերժած էր գործադրել նամակին հրամանը։

- 25 Դեկտեմբեր 1895 / 6 Յունուար 1896 – Պոլսոյ մէջ կը կատարուի Արփիարեանի առաջին մահափորձը, Հ. Յ. Դաշնակցութեան անզիջող թեւին կողմէ։

Մահափորձին կրկնութեան հնարաւորութիւնը կը մղէ Արփիարեանին հեռանալ Պոլիսէն։

## ԼՈՆՏՈՆԻ ՇՐՋԱՆ

- Փետրուար 1896 – Վերջնականապէս կը հեռանայ Պոլիսէն ու կը հաստատուի Լոնտոն, ուր կը գտնուէր Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնը առաջնորդութեամբ Աւետիս Նազարբէկեանի։

- Ապրիլ 1896 – Անհամաձայնութիւններու հետեւանքով Արփիարեան կը վտարուի Հնչակեան Կուսակցութենէն։

- Օգոստոս 1896 – Յաջողելով իր շուրջ համախմբել Հնչակեան Կուսակցութենէն դժգոհ անձեր՝ Միհրան Տամատեան, Միհրան Սվազլը, Արթիւր Օհանջան, Անտօն Ռշտունի, Աղասի, Ապահ եւ ուրիշներ, Լոնտոնի մէջ հիմք կը դնէ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան։

- 15 Ապրիլ 1897 – Լոնտոնի մէջ կը սկսի լոյս տեսնել Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան պաշտօնաթերթը՝ *Մարտ*, խմբագրութեամբ Արփիարեանի։ Լրագիրը անկանոն պարբերականութեամբ կը շարունակուի մինչեւ 1901 Մարտ, ընդամէնը՝ 28 թիւ։

- Սեպտեմբեր 1897 – Կը ժամանէ Աղեքսանդրիա մասնակցելու Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան պատգամաւորական ժողովին, որ կ'երկարի 1898 Յունուարէն մինչեւ Հոկտեմբեր։

- 1 Յունուար 1898 – Լոնտոնի մէջ լոյս կը տեսնէ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան *Նոր կեանք* հանդէսը, որուն խմբագրութիւնը ժամանակաւորապէս կը ստանձնէ Լեւոն Բաշալեան։ Արփիարեան կը մասնակցի բազմաթիւ յօդուածներով։

- 1898-1900 – Անընդհատ կը շրջագայի Աղեքսանդրիոյ, Մարսիլիայի, Փարիզի եւ Լոնտոնի միջեւ։

- Ապրիլ 1900 – Վերահաստատուած ըլլալով Լոնտոն, կը ստանձնէ *Նոր*

*կեանք*ի խմբագրութիւնը։

- 1900-1901 – Վահէ Արզուեանի ազդեցութիւնը կը հզօրանայ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութենէն ներս։

- 15 Յունուար 1901 – Արփիարեան վերջնականապէս կը հրաժարի Կուսակցութենէն, բայց կը շարունակէ խմբագրել *Նոր կեանք*ը եւ *Մարտ*ը։

- 15 Մայիս 1901 – Արզուեանի ազդեցութեամբ *Նոր կեանք*ի խմբագրութիւնը կը տրուի Սուրէն Պարթեւեանին։

## ՎԵՆԵՏԻԿԻ ՇՐՋԱՆ

- 1901-ի վերջը – Բնակութիւն կը հաստատէ Վենետիկ։

- 1 Օգոստոս 1902 – Վենետիկի մէջ կը խմբագրէ *Հայ հանդէս* կիսամսեակի առաջին թիւը։

- 15 Յունուար 1903 – Լոյս կը տեսնէ *Հայ հանդէս*ի վերջին թիւը (Ա. տարի, թիւ 10)։

- 22 Փետրուար 1903 – Վենետիկի մէջ տեղի կ'ունենայ երկրորդ մահափորձը, նախաձեռնութեամբ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան բռնատիրական թեւի առաջնորդ Վահէ Արզուեանի։

## ԳԱՀԻՐԷԻ ՇՐՋԱՆ

- 1904-ի վերջը – Բնակութիւն կը հաստատէ Եգիպտոս։

- Յունուար 1905 – Աղեքսանդրիոյ մէջ լոյս կը տեսնէ *Շիրակ* ամսաթերթը, ուր յօդուածներով հանդէս կու գայ Արփիարեան։

- 17 Հոկտեմբեր 1905 – Կը սկսի խմբագրել Գահիրէի *Լուսաբեր* եռօրեան։

- Յունիս 1906 – *Շիրակ* կը փոխադրուի Գահիրէ եւ Արփիարեան կը դառնայ անոր խմբագիրը։

- 12 Փետրուար 1908 – Կը սպաննուի Գահիրէի մէջ՝ Վահէ Արզուեանի նախաձեռնութեամբ։

## Ա.
## ԱՌԱՋԻՆ ՄԱՀԱՓՈՐՁ

### 1. ԴԷՊՔԸ

Առաջին մահափորձը տեղի կ'ունենայ 1895 Դեկտեմբեր 25 / 1896 Յունուար 6-ի երեկոյեան, օսմանեան ժամը 2-ին (եւրոպական ժամը 8-ին):

Երկու օր ետք, Արփիարանի ամենամտերիմ մտաւորականներէն մէկը՝ *Հայրենիք*ի արտօնատէր եւ տնօրէն Յովհաննէս Շահնազար կը նկարագրէ որոշ մանրամասնութիւններ.

*Երկուշաբթի իրիկուն, ժամը 2-ին մօտ, Արփիար էֆէնտի Արփիարեան Հայրենիքի խմբագրատնէն մեկնելով իր տունը կ'երթար Բանկալթի, երբ Թաքսիմի Ջօրանոցին առջին հասնելուն, մարդ մը, որ ետեւէն կուգար, մէկ ձեռքը Արփիար էֆէնտիի ուսին վրայ կը դնէ եւ միւսովը դաշոյն մը կ'ուղղէ անոր կուրծքին: Արփիարեան էֆէնտի ետ դառնալով կը փորձէ ինքզինքը ոճրագործին ձեռքէն ազատել. այդ միջոցին երեք հարուած կը ստանայ մինչ իր հովանոցը անոր գլխուն կը զարնէր:*

*Այս մարտնչումը կատարուած ատեն, դիմացէն զինուորները կը հասնին, եւ Արփիար էֆէնտի «Բան մը չի կայ» ըսելով կ'ուղեւորի շիտակ իր տունը, իսկ ոճրագործը դէպի Թաքսիմ վազելով աներեւոյթ կ'ըլլայ:*

*Հարուածին երկուքը սրտին ուղղուած էին, բայց վրիպելով բազուկին վերի կողմին հանդիպեր են, իսկ երկրորդը տրուած է աջ ծծին տակը:*[1]

Արփիարեանի մահափորձի դէպքը եւ անոր յաջորդող քանի մը ժամերը յետագային *Ժամանակ* օրաթերթին մէջ մանրամասն պիտի պատմէր *Հայրենիք*ի խմբակի նուիրեալ անդամ Երուանդ Օտեան.

[18]95-*ի վերջերն էր, երբ Արփիար Արփիարեան, որ Բանկալթի Ս. Յակոբի կալուածներէն մէկուն մէջ կը բնակէր իր եղբօր Տիգրան Արփիարեանի հետ, ուշ ատեն, բնակարանը գացած միջոցին, Թաքսիմի պարտէզին դէմը՝ դաշունահար վիրաւորուեցաւ Դաշնակցականի մը կողմէ:*

*Արփիար, հակառակ իր ստացած ծանր վէրքերուն, կրցած էր սակայն մինչեւ տուն հասնիլ եւ դուռը բաղխել: Բայց երբ դուռը բացած էին՝ արիւնլուայ գետին տապալած էր՝ ինքզինք կորսնցուցած:*

*Տօքթոր Զօհրապ, որ մօտերը կը բնակէր, իսկոյն կանչուած էր եւ նախնական դարման-ները տուած:* [...]

*Մեր* [իմա՝ Երուանդ Օտեանի եւ իր ընտանիքի, Հ.Ա.] *տունը Բանկալթիի չխտակ ճամբուն վրայ, Տամ տը Սիօնի վարժարանին կից, հազիւ երկու քայլ հեռու էր Արփիարեանի բնակարանէն:*

*Դեռ սեղանին վրայ էի՝ երբ Արփիարի եղբօրորդին Փիլիկը, այն ատեն տասը տարեկան նիհար ու տժգոյն տղեկ մը, եկաւ իմաց տալու չարաշուք դէպքը:*

*Իսկոյն վազեցի իրենց տունը: Գետնայարկը երկու սենեակ կար, մին բակին աջ կողմը եւ միւսը դէմը: Աջ կողմի սենեակին մէջ տեսայ Տիգրան Արփիարեանը, որ խրխա մը հագած ու բազմոցին վրայ ծալլապատիկ նստած մանկալի մը առջեւ, անընդհատ ետեւ առաջ կը շար-ժէր հեծկլտալով: Կարծես թէ ինքն էր վիրաւորեալը:*

*Իսկ Արփիար, դէմի սենեակը, բազմոցին վրայ երկնցած էր անշարժ, Տօքթոր Մախոխեան, զոր կոչած էին Տօքթոր Զօհրապէն յետոյ, սենեակին մէջն էր տակաւին ու զանազան հրա-հանգներ կուտար տանտիկնոջ՝ տիկին Փէմպէ Սանճաքճեանի՝ որուն վարձակալն էր Ար-փիար եւ որ աննման անձնուիրութեամբ մը խնամեց վիրաւորը մինչեւ վերջը:*

*Տօքթորը որ Արփիարի հիացող մըն էր ու մտերիմ բարեկամը, ինչպէս նաեւ Հայրենիքի աշխատակիցը, չատ մտատանջ կը թուէր:*

*- Կեանքը վտանգի մէ՞ջ է, հարցուցի՝ երբ սենեակէն դուրս ելաւ:*

*- Ստինքին տակ վէրք մը ունի որ բաւական վտանգաւոր է, պատասխանեց, եթէ տենդ ունենայ կրնայ աղետաւոր ըլլալ:*

*- Ինք գիտէ՞ իր վիճակին ծանրութիւնը:*

*- Յայտնեցի իրեն՝ որովհետեւ զիս ստիպեց ճշմարտութիւնը խօսելու...:*

*Յետոյ մօտեցայ Արփիարին ու համբուրուեցանք:*

*Իր գունատ դէմքը ա՛լ աւելի տժգունած էր, բայց աչքերը սովորականին պէս կը պճլտա-յին չարաճճիօրէն:*

*- Շահնազարը անմիջապէս պէտք է գտնաս ու բերես, ըսաւ ինծի... կարելի է կը մեռնիմ՝ խօսելիքներ ունիմ իրեն:*

*- Բայց մեռնելու երեւոյթ չունիս, ըսի խնդալով:*

*- Մախոխեանը տակաւին վստահ չէ, պատասխանեց, եւ ես կ՚ուզեմ գործերս կարգադրել, չո՛ւտ գնա՛ զինքը փնտռէ՛... կամաց մը իմացո՛ւր իրեն զարնուած ըլլալս եւ ա՛ռ զինքը հոս բեր:*

*Քառորդ ժամ ետքը Թօքաթլեանին էի ուր վստահ էի թէ պիտի գտնէի Շահնազարը:*

*Արդարեւ սեղանի մը քով նստած՝ լրագիր կը կարդար: Խնդալով մօտեցայ իրեն.*

*- Հաւնեցա՞ր Արփիարին ըրածը, ըսի:*

*- Ի՞նչ, հարցուց:*

*- Իր վրայ խօսեցնելու համար Դաշնակցականի մը վիրաւորել տուեր է ինքզինքը...*

*Շահնազար կարեւորութիւն չտուաւ ըսածիս, կարծելով որ կատակ կ՚ընեմ:*

*- Իրա՛ւ կ՚ըսեմ, չարունակեցի, դանակի երեք հարուած, որոնց մին բաւական ծանրկեկ, ե՛լ, իրեն երթանք, քեզ կ՚ուզէ կոր... կտակը պիտի ընէ:*

*Շահնազար զգաց որ բաներ մը կայ։*

*- Զարկի՞ն, գոչեց։*

*- Այո՛, պատասխանեցի կամաց մը, բայց շատ թեթեւ է վէրքը...։*

*Իսկոյն կառք մը նստեցանք ու վերադարձանք Արփիարին քով, որ ամենայն հանդարտութեամբ իր «կտակ»-ը ըրաւ Շահնազարին։*

*Մինչեւ առտու իր քովը անցուցինք եւ տենդը, որմէ կը վախնային բժիշկները, չեկաւ ու հետեւեալ օր վիրաւորը աւելի կազդուրուած էր։*[2]

## 2. Ո՞Վ ԿԱԶՄԱԿԵՐՊԵՑ ՄԱՀԱՓՈՐՁԸ

Մահափորձը կազմակերպողը Հ. Յ. Դաշնակցութիւնն էր։

Վերոյիշեալ յօդուածին մէջ Յովհաննէս Շահնազար անմիջապէս կը սկսի բացայայտումներ կատարել.

*Այս մարդասպանական փորձին շարժառիթը մեզի գաղտնի կը մնայ։ Իրաւ է թէ վերջերս, ստացանք նամակներ, որոնցմով հրաւիրուած էինք, մահուան սպառնալիքի ներքեւ, ա՛լ եւս չհրատարակել Պաշտօնական Ջեկուցումները, բայց որովհետեւ Արփիար էֆէնտի Հայրենիքի մէջ խմբագիր մըն է միայն եւ տաճկերէնի ալ բոլորովին անտեղեակ խմբագիր, որովհետեւ՝ միւս կողմէ ալ՝ այդ զեկուցումները թուրք թերթերու մէջ տպուելէ, հայ թերթերու մէջ թարգմանուելէ ետքը, 24 ժամ յետոյ Հայրենիքի մէջ կը հրատարակուին՝ լոկ անոր արտօնատէր եւ տնօրէնին պատասխանատուութեան տակ, տեղի կայ գործին այս հանգամանքներէն հետեւցնել թէ նոյն այն մարդիկը որոնք, մեզի անծանօթ շահերնուն մէջ, իրենք զիրենք վնասուած նկատելով Հայրենիքի գոյութեամբ, ասկէ առաջ մեծ խորհրդաւորութեամբ տնէ տուն, խանէ խան անզիտակից պատանիներ պտտցուցին Արփիար էֆէնտիին վրայ սոսկալի զրպարտութիւններ ընելով եւ Հայրենիք մի՛ կարդաք պատուիրելով, այս անգամ ալ մէկ քարով քանի մը նպատակ մէկանց իրագործելու փափաքով, յաջողեր էին խեղճ մարդու մը ձեռքը զէնք մը դնել՝ իրեն կարծեցնել տալով թէ օգտակար ոճիր գործած պիտի ըլլայ Արփիարեան էֆէնտին մեռցնելով։*[3]

Այդ սպառնալիքները կու գային Դաշնակցականներէն։ Օտեան կը յիշէ՝ որ նոյնիսկ Դաշնակցականներ այցելած են Արփիարեանին, արդարացնելու համար մահափորձը, իսկ Հնչակեանները վրէժ պահանջած են Դաշնակցականներէն.

*Մահափորձին լուրը հազիւ թէ Պոլսոյ մէջ տարածուած՝ ամէն կողմէ այցելուներ սկսան թափիլ Արփիարի տունը որ կարծես ուխտատեղի մը դարձաւ։ Նոյն իսկ Դաշնակցականներ կու գային այցելութեան եւ ասոնց մէջ կը յիշեմ Օննիկ Դերձակեանը (Ա. Վռամեան), որ եկաւ Արփիարեանի ապացուցանելու թէ իր վրայ կատարուած մահափորձը արդարացի գործողութիւն մըն էր։*

*Հնչակեանները՝ բնականաբար՝ խորին յուզումով եւ գրգռութեամբ լսեցին իրենց մեծաւորին վիրաւորուիլը: Ամէնքը բուռն կերպով վրէժխնդրութիւն կը պահանջէին, մանաւանդ Վահէ Արզուեան կ՚ուզէր տէռօրի ենթարկել մէկ քանի յայտնի Դաշնակցականներ:*

*Բարեբախտաբար Արփիարեան քանի մը օր ետքը բոլորովին վտանգը անցուց եւ ապաքինման ճամբուն մէջ մտաւ. ասիկա եղաւ գլխաւոր պատճառը որ Հնչակեան կուսակցութիւնը ուրիշ մահափորձներով չպատասխանեց իր հակառակորդին: Արդէն Արփիար բացարձակօրէն հակառակ էր փոխադարձ վրէժխնդրութեան եւ բոլոր ուժովը կը մաքառէր Վահէի ու իր գաղափարակիցներուն դէմ:*[4]

Օտեան կը յիշէ նաեւ մահափորձին նախորդող շրջանը, թէ ինչպէս Դաշնակցութիւնը փորձած է «սեւացնել» Արփիարեանն ու *Հայրենիք*ը.

*Այս մահափորձը անակնկալ մը չէր ո՛չ իրեն ո՛չ ալ մեզի համար: Ամիսներէ ի վեր Դաշնակցութիւնը, մութին մէջ, ընդհանրապէս Հայրենիքի եւ մասնաւորաբար Արփիարեանի դէմ կը գործէր:*

*«Արփիարին սեւացրէ՛ք» հրահանգը եկած էր արդէն եւ խղճի մտօք – եթէ կարելի է այս խօսքը գործածել – կը գործադրուէր: Դաշնակցականները բերնէ բերան լուր կը տարածէին թէ Արփիարը մատնիչ է, թէ Նազըմ փաշայի մարդն է, թէ ամէն գիշեր անոր հետ կը ճաշէ, եւն.: Նոյն իսկ Հայրենիքի դէմ պօյքօթ մըն ալ սկսաւ, որ պահ մը, գոնէ քանի մը օր, յաջողութիւն ունեցաւ:*[5]

Հարցը այսքան բացայայտ էր մահափորձին ժամանակ։

Հնչակեան Կուսակցութեան առաջնորդ Աւետիս Նազարբէկեան եւս Լոնտոնի մէջ գործողութիւնը անմիջապէս կը վերագրէ Դաշնակցականներուն.

*Կ. Պօլսից մեզ հասած յաջորդական տեղեկութիւններից ապացուցւում է, որ այդ զզուելի սպանութեան փորձը գործադրվել է «Հայ Յեղափ. Դաշնակցութիւն» անուն կրող խմբի կողմից:*[6]

## 3. ԴՐՕՇԱԿԻ ԵՐԵՔ ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ

Մահափորձէն երեք ու կէս տարի ետք, Դաշնակցութեան պաշտօնաթերթ *Դրօշակ*ը կը հրատարակէ երեք Յաւելուած՝ 15 Ապրիլ 1899, 15 Յուլիս 1899 եւ 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899։ Երեքն ալ ուժեղ քննադատութիւններ են Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան եւ անոր գործիչներուն։ Քննադատութեան առիւծի բաժինը տրուած է Արփիարեանին։

Ինչո՞ւ 1899-ին։ Այդ տարի իր բարձրակէտին հասած էր Վերակազմեալ

Հնչակեան Կուսակցութեան եւ Հ. Յ. Դաշնակցութեան միջեւ միութեան կամ համերաշխ գործակցութեան գաղափարին շուրջ ծաւալուող բանավէճերն ու բանակցութիւնները։ Վերակազմեալներուն գլխաւոր բանակցողներէն եւ խօսնակներէն մէկը Արփիարեանն էր, որ կուսակցութեան պաշտօնաթերթ *Մարտ*ի մէջ գրիչ չէր խնայած արծարծելու եւ իր տեսանկիւնէն վերլուծելու միութեան հարցը։ Միութիւնը՝ իրականանալու հաւանականութենէ հեռու գեղեցիկ գաղափար մը, բաւական ճիգ խլեց երկու կողմերէն։ Երեք Յաւելուածներուն նպատակն էր ներկայացնել Դաշնակցութեան վճռական, բացարձակ ու վերջնական տեսակէտը Վերակազմեալ Կուսակցութեան դրութեան եւ անոր անդամներուն բարոյական մթնոլորտին նկատմամբ, եզրակացնելու համար՝ որ անոնք անատակ են շարունակելու միութեան գործընթացքը։ Իսկ Արփիարեանի նման անբարոյական ու դաւաճան անձի մը գոյութիւնը իբրեւ Վերակազմեալներու ղեկավար, ապացոյց մըն է կուսակցութեան քայքայուած, շահախնդիր եւ ապակեդրոնացած վիճակին։ Այս էր երեք երկար Յաւելուածներուն իմաստը։

Նիւթիս կապակցութեամբ անոնք մանրամասնութիւններ կը հաղորդեն մահափորձի մասին, հետեւաբար անհրաժեշտ է ուշադրութեամբ կարդալ ամբողջ շարադրութիւնը, կարեւորութիւն տալով նաեւ *Մարտ*ի մէջ գրած Արփիարեանի պատասխաններուն։

Նախ Դաշնակցութիւնը պաշտօնապէս կը հաստատէ՝ թէ ինքն է մահափորձի միակ պատասխանատուն.

> ***Պօլսում տեղի ունեցաւ Դաշնակցականների փորձը նրա դէմ։***[7]

Ուրեմն, Յաւելուածները կեանքի կոչուած են արդարացնելու այդ մահափորձը, մէկ կողմէն՝ «փաստել»-ով Արփիարեանի անպարկեշտութիւնն ու մանաւանդ դաւաճանութիւնը, միւս կողմէն՝ սպանութեան գործողութիւնը ենթարկելով Դաշնակցութեան *պաշտօնական* որոշումին։

1896-ին սկսած էին Արփիարեանի անհամաձայնութիւնները Նազարբէկեանի հետ։ Ապրիլին Հնչակեան Կուսակցութիւնը իր շարքերէն կը վտարէ Արփիարեանը։ Վերջինս, յաջողելով իր շուրջ համախմբել Հնչակեան Կուսակցութեան անդամագրուած ընդդիմադիր անձեր, Օգոստոսին, Լոնտոնի մէջ Հնչակեան Կուսակցութեան անունով պատգամաւորական ժողով մը կը կազմակերպէ, ուր Կուսակցութենէն կը վտարէ Աւետիս եւ Մարօ Նազարբէկեանները։ Այստեղ հիմք կը դրուի «նոր» Հնչակեաններուն, որոնք շուտով պիտի կազմէին յայտնի Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութիւնը։ Նազարբէկեան, որ մերժած էր ներկայ գտնուիլ ժողովին, բնականաբար, այս որոշումը կը հռչակէ ապօրինի, եւ կը շարունակէ մնալ «հին» Հնչակեան Կուսակցութեան ղեկավարը։ Կը յառաջանան փոխադարձաբար իրար մերժող երկու Հնչակեաններ՝ «հին» կամ «բուն»

Հնչակեաններ (Նազարբէկեան) եւ «նոր» կամ Վերակազմեալ Հնչակեաններ (Արփիարեան)։

*Դրօշակ*ի առաջին Յաւելուածը (15 Ապրիլ 1899) իբրեւ աղբիւր կ՚օգտագործէ երկու Հնչակեաններուն գրութիւնները, կարծիքները եւ փոխամբաստանութիւնները՝ տպագրուած Վերակազմեալներու *Մարտ*ի, Նազարբէկեանի *Հնչակ*ի եւ երկու կողմերու շրջաբերականներուն մէջ, ցոյց տալու համար անոնց միջեւ 1896-ին սկսած պառակտումը։ Ասիկա ճշմարտութիւն մըն է։ Բայց հետաքրքրական է՝ որ *Դրօշակ*ի բոլոր քննադատութիւնները ուղղուած են Հնչակեաններուն իբրեւ կուսակցութիւն, բացի Արփիարեանէն, որ ենթարկուած է անհատական քննադատութեան. «Հնչակեան Կեդրոնի [իմա՝ «հին» Հնչակեաններու, Հ.Ա.] ասելով՝ Արփիար Արփիարեան անյայտ պատճառներով աջողել է ներս սպրդել Պոլսի Հնչակեան վարչութեան մէջ եւ դառնալ նրա անդամ»,[8] «իր կեղտոտ անցեալով յայտնի Արփիարը [1896-ին] Լօնդօն է գալիս»,[9] «Կեդրօն մտնելով, Արփիարը սկսում է ինտրիգներ սարքել»,[10] «Հնչակեան կուսակցութիւնից արտաքսուած Արփիարը, Պարիզ գնալով, բոլորովին տրամադրութիւն չի ցոյց տալիս իր դէմ արձակուած վճռին համակերպելու»,[11] «Արփիարը լարում է [Անտօն] Ռշտունուն»։[12] Ասիկա կարեւոր սկիզբ մըն է խնդիրին ծանրութիւնը ուղղելու դէպի Արփիարեան եւ առաջին քայլ մը արդարացնելու մահափորձը։

Երկրորդ Յաւելուածը (15 Յուլիս 1899) ունի երկու ենթագլուխ՝ «Վերակազմեալ Հնչակեան կուսակցութեան տեսական հայեացքները» եւ «Վերակազմեալ վարչութեան վերաբերումը դէպի դաշնակցութիւնը»։ Օգտագործուած միակ աղբիւրը *Մարտ* լրագիրի տարբեր թիւերն են։ Արփիարեանի անունը ոչ մէկ անգամ յիշատակուած է, բայց բոլորին յայտնի է՝ որ *Մարտ*ի խմբագիրը եւ գրեթէ բոլոր յօդուածներուն հեղինակը Արփիարեանն է։ Հասկնալի է, երկրորդ Յաւելուածը Արփիարեանին հասցէագրուած անանուն քննադատութիւն մըն է։

Բայց «գլուխ-գործոց»-ը երրորդ Յաւելուածն է (15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899), որ գրուած է միայն Արփիարեանի համար։ Արփիարեան պաշտօնապէս կը հռչակուի դաւաճան։

Նախ, հակիրճ պատմական մը։ Արփիարեան *Մարտ*ի մէջ 1897-ին կը տեղեկացնէ.

***Տրապիզոնի կեդրոնի մը ներկայացուցիչ Պ*[ետրոս] *Մ*[արիմ]*եանին միջնորդութեամբը* 1890*-ին կազմուեցաւ մեր յեղափոխական յանձնախումբը*, *հինգ անդամէ։***

Արփիարեանէն բացի, անդամներէն մէկն էր յետագայ Դաշնակցական Մելքոն Կիւրճեան (Հրանդ)։

***Անուններնին մեզի բոլորովին անծանօթ յեղափոխական ուրիշ խմբի մը հետ յարա-***

*բերութեան մտանք Պ*[ետրոս] *Մ*[արիմ]*եանի միջոցաւ: Անոր մեկնելէն ետքը փոխադարձ յարաբերութիւնները ընդհատեցան մինչեւ նամակներու ժամանումը, եւ Տրապիզոնէն ուրիշ ներկայացուցչի մը, Պ. Վարդ Պատրիկօֆի գալուստը, օգոստոս 14-ին: Երկու խումբին յարաբերութիւնները վերսկսուեցան մեր կողմէն ներկայացուցիչ կարգուելով գանձապետ-քարտուղարնիս. անոնց ներկայացուցիչը մեր չորսին անծանօթ կը մնար: Պայմաննիս այն էր որ երկու ներկայացուցիչները միայն իրարու պիտի ծանօթանային:*

Ապա Արփիարեան կարճ ժամանակով կը մեկնի Թիֆլիս։

*Պոլսէն իմ մեկնելէս յետոյ այս կարգադրութիւնը յեղաշրջուեցաւ. երկու խումբերը շատ անգամ իրարու միացեր եւ իրար ճանչցեր էին: Կովկասէն երբ վերադարձայ միւս խումբը արդէն վերջացած գտայ. բոլոր անդամները կամ փախած էին, կամ ձերբակալուած. անոնցմէ միայն Մամբրէն կը մնար: Շատ չանցած ձերբակալուեցայ եւ ես. այս առթիւ գանձապետնիս ու մեր մէկ ընկերը անմիջապէս Պոլսէն դուրս ելան. Կիւրճեան զերծ կը մնար ամէն վտանգէ. մեր միւս հինգերորդ ընկերոջ անունը ո՛չ Մամբրէին, ո՛չ ուրիշներու ծանօթ ըլլալով անոր համար ո՛ եւ է վախ չի կար, ուստի մնաց Պոլիս եւ բնաւ չի նեղուեցաւ, զի ոչ ոք կը կասկածէր անոր վրայ:*

*Իմ ձերբակալութեանս պատճառն էր Տրապիզոնի կեդրոնէն Պոլիս համբարձում Պօյաճեանին (Մուրատ) գրուած կարգ մը նամակներ, որոնց մէջ անունս յիշատակուած էր զանազան պարագաներով: Պօյաճեանի բացակայութեանը Մամբրէ ինքն առնելով այդ նամակները յանձնած էր Նազըմին. յեղափոխական շատ մը գաղտնիքներ երեւան եկան այդ նամակներէն:*[13]

Ըստ *Դրօշակ*ի տուեալներուն, Արփիարեան կը ձերբակալուի 1890 Նոյեմբեր 9/21-ին։[14] Իսկ *Դրօշակ*ի առաջ բերած ամբողջ դաւաճանութիւնը կապուած է բանտարկութեան այս շրջանին հետ։ Դաւաճանութեան հասնելու համար *Դրօշակ* կը դիմէ երեք լրացնող քայլերու.

## ա. Հարցաքննութիւններուն «փաստաթուղթեր»-ը

### Փորձ ընթերցանութեան

Բանտարկութեան շրջանին, բնականաբար, տեղի պիտի ունենային ոստիկանական (ոչ դատական) հարցաքննութիւններ։ *Դրօշակ* ձեռք բերելով երեք հարցաքննութեան օսմաներէն փաստաթուղթերը (ձեռքբերումի հարցականութեամբ լեցուն հանգամանքներուն մասին մանրամասն պիտի անդրադառնամ ստորեւ), զանոնք հայերէն թարգմանելով կը հրատարակէ իր էջերուն մէջ։ Համաձայն այս տուեալներուն, առաջին հարցաքննութիւնը կը կատարուի 1890 Նոյեմբեր 11/23-ին։ Ոստիկանութիւնը Արփիարեանին կը ներկայացնէ հետեւեալ ամբաստանութիւնները.

*[Դ]ուք օսմանեան տէրութեան դէմ աննպաստ արարքներու մէջ գտնուած էք. բացարձակ խօսիմ՛ք ուրեմն. դուք իբրեւ խռովարար եւ յեղափոխական ամբաստանուած էք, դուք մասնակցած էք Գում-Գաբուի դէպքին, դուք մասնակցութիւն ունիք փաստաբան Խաչիկ էֆէնտիի սպանութեան գործին մէջ, դուք գիտակից էք օսմանեան տէրութեան դէմ Հայոց իգործ դրած ամեն շարժումներուն, եւ ահա այս պատճառաւ է որ կառավարութիւնը ստուգելէ վերջ զքեզ ձերբակալած է:*[15]

Հարցաքննութիւններուն ժամանակ Արփիարեան կը հերքէ բոլոր ամբաստանութիւնները.

*Կը խնդրեմ, էֆէնտի, այդ ինչ ծանր ամբաստանութիւն է, որ կը վերագրէք ինձ. էֆէնտիմ, դուք զիս իբրեւ ոճրագործ, իբրեւ մարդասպան կը դատապարտէք, ես չեմ ընդունիր ձեր ըսածները, կը բողոքեմ. ասոնք բոլորը թշնամական զրպարտութիւններ են ինձի դէմ. իմ անձիս վրայ կրնաք տեղեկութիւններ հաւաքել. այո՛, կը կրկնեմ թէ՝ այդ մեղադրանքները որ ըրած են իմ անձիս դէմ, անոնք անխիղճ զրպարտիչներ են:*[16]

Առաջին հարցաքննութեան մէջ աչքի կը զարնէ երկու մանրամասնութիւն: Երբ հարցաքննիչը կը հարցնէ իր տարիքը, Արփիարեան կը պատասխանէ. «38-39 տարեկան ըլլալու եմ:»[17] 38 թէ՞ 39: Կրնա՞յ ըլլալ ասիկա թրքական արտայայտութիւն մըն է՝ որ կը նշանակէ թէ ան կը գտնուի 38-39 տարեկանի միջեւ, եւ ոչ թէ, ինչպէս հայերէն բնագիրը կ՚արտայայտէ՝ «38-39 տարեկան *ըլլալու եմ*», այսինքն՝ չի յիշեր ճիշդ տարիքը: Նոյնպէս երբ կը հարցնէ թէ քանի տարի ապրած է Վենետիկ, կը պատասխանէ. «5-6 տարիի չափ կեցած եմ:»[18] Դարձեալ տարիներու քանակի անվստահութիւն մը: Այս թուային պզտիկ տատանումները տակաւին ոչ մէկ բան կրնան փաստել, այլ պարզապէս կէտեր են զորս դժուար է աննկատ թողուլ:

Երկրորդ ոստիկանական հարցաքննութիւնը, ըստ *Դրօշակ*ին, տեղի կ՚ունենայ Նոյեմբեր 22/Դեկտեմբեր 4-ին: Անիկա իբր կատարուած է ընդառաջելով Արփիարեանի երկտող խնդրանքին: Հարցաքննիչը կ՚ըսէ՝ թէ Վահրամ Տատեան բացայայտումներ կատարած է Արփիարեանի դէմ.

*Վահրամ պէյ ալ ձերբակալուած է. իր հարցաքննութեան մէջ կը խոստովանի նա թէ ձեզի բարեկամ է. կը խոստովանի նաեւ թէ դուք Պոլսոյ մէջ գաղտնի ընկերութիւն մը կազմակերպած էք ձեր Թիֆլիսէ վերադառնալէ յետոյ:*[19]

Ապա հարցաքննողը կ՚առաջարկէ գործարք մը.

*Արփիար էֆէնտի, եթէ Վահրամ պէյի վնասակար եւ տէրութեան անհաւատարիմ մէկը ըլլալը հաստատէք, աս մասին մեզի մեծ ծառայութիւն մ՚ըրած պիտի ըլլաք, եւ կ՚ապահովեմ*

*ձեզ ազատ արձակել ու վարձատրել*։[20]

Միջանկեալ հարցում մը։ Արդեօ՞ք փոխգործարքները կը յիշատակուին պաշտօնական, ստորագրուած ու կնքուած արձանագրութիւններու մէջ։ Չէ՞ որ նման գործարքային փոխհամաձայնութիւնները ընդհանրապէս կ'իրականացուին պաշտօնական հանդիպումներէ ու մանաւանդ պաշտօնական արձանագրութիւններէ անդին։ Հարցում մը, որ ինչպէս միւսները, տակաւին ոչ մէկ բան կրնայ փաստել կամ հերքել։

Հարցաքննիչին փոխգործարքը լսելով, Արփիարեան անմիջապէս փոխմեղադրանքներ կ'ուղղէ չորս անձերու դէմ.

*Իմ գիտցածս եւ լսածս սա է որ Վահրամ պէյ Տատեան, տօքթօր* [Յարութիւն] *Թիրեաքեան եւ ուրիշ միքանի անձնաւորութիւններ այստեղ յեղափոխական ընկերութիւն մը կազմակերպած են. այս ընկերութեան մէջ Խորէն եպիսկոպոս (Նար-պէյ) եւ իւր քեռորդին Տիրան պէյ Մարկոսեանն ալ կը գտնուին. սոքա բաւական մեծ գումար մը հանգանակած են թէ տեղացի եւ թէ գաւառացի հարուստ ազգայիններէ. այս ըսածիս ճշմարտութեանը վրայ ապահով եմ*։[21]

Վահան Թէքէեան այստեղ կը գտնէ լուրջ հակասութիւն մը.

*Թողո՛ւնք հայթայթիչին անպատիւ անձնաւորութիւնը՝ որ հեռու է «փաստաթուղթ»-ին վաւերականութիւնը երաշխաւորելէ։ Կը բաւէ զայն կարդալ, համոզուելու համար որ երկրորդ հարցաքննութիւնը շինծու է սկսեալ այն մասէն ուր Արփիար կը պատասխանէ Վահրամ պէյ Տատեանի վերաբերմամբ հարցաքննիչին պնդումին։*

*Արդարեւ, դեռ վայրկեան մը առաջ ամէն բան ուրացող եւ ինքզինք վարպետօրէն պաշտպանող Արփիարը, որ ո՛ եւ է տանջանքի կամ նեղութեան իսկ ենթարկուած չէ, ըստ «տօքիւմէնտ»-ին յանկարծ մատնութեան կը սկսի՝ պարզ այն պատճառով որ հարցաքննիչը իրեն կը յայտնէ թէ «Վահրամ պէյ ալ ձերբակալուած է. իր հարցաքննութեան մէջ կը խոստովանի նաեւ թէ Դուք Պոլսոյ մէջ գաղտնի ընկերութիւն մը կազմակերպած էք ձեր Թիֆլիսէ վերադառնալէ յետոյ»։ Այս միակ խօսքը կը բաւէ՝ որպէս զի Արփիար «մատնէ» ոչ միայն Վահրամ պէյը եւ Տօքթ. Թիրեաքեանը, Խորէն Եպս. Նար-Պէյը եւ անոր քեռորդին Տիրան պէյ Մարկոսեանը։ Մասնաւորապէս Վահրամ պէյի համար՝ ան կ'ըսէ, թէ «նա է որ սակարկութեամբ վարձած է Պէչիկթաշէն երկու հայեր եւ այդ երկու չարագործներուն ձեռքով Խաչիկ էֆէնտին (փաստաբան եւ լրտես) սպաննել տուած է»։*

*Գոնէ ճիշդ ըլլա՜ր այս վերջին յայտնութիւնը։ Բայց ան սխալ է եւ Արփիար գիտէր թէ սխալ է, որով ոչ միայն «կը մատնէ» Վահրամ պէյը այլ նաեւ կը զրպարտէ մահացու յանցանքով մը։ Ի՞նչու։ Պարզապէս հաւատալով հարցաքննիչին ըսածին։ Բայց մանուկ մը անգամ պիտի խորհէր թէ կրնայ ստել հարցաքննիչը...*։[22]

Թէքէեան վստահօրէն կը հերքէ տոքթ. Թիրեաքեանի դէմ ամբաստանութեան իրաւացիութիւնը.

1890-*ի Արփիարեանի «Մատնութիւն»-ը, ըստ* 1895-*ի եւ անկէ վերջի ամբաստանիչներուն, իրեն զոհ ունեցած է գլխաւորաբար Տօքթ. Թիրեաքեանը:*

*Տօքթ. Թիրեաքեան այդ մասին թէ Պօլիս եւ թէ արտասահման իրմէ տեղեկութիւն ուզողներուն քանիցս բացարձակօրէն պատասխանած է՝ թէ սուտ մըն է ատիկա եւ թէ ինք առաջին շահագրգռուողը գործին մէջ որ ուրիշներէն աղէկ պիտի գիտնար այդ բանը, ոչինչ, ոչինչ կրնայ մեղադրել Արփիարին: Նոյնը ըսած է Արփիարին ալ:*

*Բայց Արփիար, հպարտութեամբ մը եւ իրեն դէմ նետուած ամենէն ստոր զրպարտութիւնները ամենէն աւելի արհամարհանքով դատելու իր սովորութեամբը, որոնք իր նկարագրին յատկանիշներն էին, պահանջած չէ Տօքթ. Թիրեաքեանէն այդ հերքումը հրապարակաւ ընել:*

*Ասիկա կը պահանջեմ հիմա մէկէ մը, որուն ազնիւ եւ հայրենասէր հայու համբաւը միայն լսած եմ մինչեւ հիմա:*

*Տոքթ. Թիրեաքեան այժմ* [1908-ին, Հ.Ա.] *Ամերիկա կը բնակի եւ ամէն դիւրութիւն ունի պահանջուած տեղեկութիւնը հրապարակաւ յայտնելու: Իր լռութիւնը, այս պարագային, պարզապէս պիտի նշանակէր մեղսակցիլ ամէնահրէշային սուտի մը, զոր կ'երեւի նորէն քալեցնել կ'ուզուի եւ որուն կը հաւատամ թէ ինքը անկարող է:*[23]

Հեռու մանրամասնութիւններէն եւ քննական ընթերցուածքներէն, իր ամբողջականութեան մէջ երկրորդ հարցաքննութեամբ լրացած կ'ըլլայ դաւաճանութեան առաջին քայլերը, մատնութիւն՝ փոխան ազատութեան եւ վարձատրութեան։ Չկայ ասկէ աւելի ամբողջական շրջագիծ մը։

Վերջապէս երրորդ եւ վերջին հարցաքննութիւնը՝ 1890 Դեկտեմբեր 12/24-ին։ Կը տեւէ շատ կարճ, որուն ընթացքին Արփիարեան հարեւանցիօրէն կը մեղադրէ Լոնտոն բնակող Մինաս Չերազը «անհաւատարմութեան» մէջ։[24]

Քանի որ, համաձայն *Դրօշակ*ին, ոստիկանութեան հետ փոխհամաձայնութիւն կար, Արփիարեան շուտով ազատ կ'արձակուի։ Կատարեալ դաւաճանի տիպար մը։

*Դրօշակ*ի Յաւելուածին Արփիարեան անմիջապէս կը պատասխանէ՝ թէ հարցաքննութեան բնագիրները ամբողջութեամբ կեղծ են.

*ԱՅԴ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ԹՈՒՂԹԸ ԱՌԱՋԻՆ ՏՈՂԷՆ ՄԻՆՉԵՒ ՎԵՐՋԻՆԸ ԱՄԲՈՂՋԱՊԷՍ ԿԵՂԾԱՐԱՐՈՒԹԻՒՆ Է:*[25]

Ան կը պահանջէ Պատուոյ Ատեան մը,[26] որ բնաւ չի կազմուիր։

Որքա՞ն կարելի է հաւատալ «Հարցաքննութեան» բնագիրներուն արժանահաւատութեան, կամ Արփիարեանի կտրական հերքումին։

**Իրաւական հարց մը**

Եգիպտահայ փաստաբան եւ բանասէր Ստեփան Շահպազ հարցաքննութեան բնագիրը, զուտ օրինական տեսանկիւնէն դիտելով, կ'ընդունի իբրեւ կեղծուած փաստաթուղթ.

*Այս ատենագրութիւնը* (procès-verbal), *ինքնին կեղծ ու շինծու է, ինչ որ իր առարկայական շարադրութեամբն իսկ կը յայտնուի իսկոյն: Ով որ զայն շինած է, զայն շարադրած է՝ իր առաջին տողէն կը մատնէ իր տգիտութիւնը՝ Հարցաքննութեան մասին, մանաւանդ պատժական խնդիրներու առթիւ կատարուած ոստիկանական Հարցաքննութեանց օրինական խնդիրներու ամէնէն տարրական պայմաններուն Հանդէպ, - մանաւանդ երբ խնդրոյ առարկայ եղող Հարցաքննութիւնը ոստիկանական նախարար մը կատարած է:*[27]

Արդեօք այդ օրինական խնդիրներուն կը հետեւէ՞ր 1890-ի օսմանեան ոստիկանութիւնը։ Չէ՞ որ ընդհանրապէս օրինականութիւնը կապուած է ժողովրդավարութեան հետ։

**Փաստաթուղթերուն աղբիւրը**

Փաստաթուղթերուն հակիրճ պատմական մը որոշ հարցադրումներ կը բարձրացնէ, առանց, սակայն, դիւրին եզրակացութիւններ առաջադրելու։

1895-ին Դաշնակցութիւնը *Դրօշակ*ի միջոցով կը յայտարարէր՝ թէ ձեռք անցուցած է 1890-ին Հնչակեաններուն կազմակերպած Գում-Գաբուի ցոյցերէն ետք ձերբակալուած հայերու հարցաքննութիւնները.

1890 *Թւականին, Յուլիս ամսոյ* 15-*րդ օրը Կ. Պոլսոյ Գում-Գաբուի նշանաւոր ցոյցին մասնակցող ծանօթ դէմքեր ի վերջոյ ուղղակի կամ անուղղակի կերպիւ դարձան մէկ մէկ վնասակար մատնիչներ. մենք ապագային այդ անձնաւորութեանց գործերը ճշմարտապէս երեւան Հանելու նպատակաւ ամենամեծ զոհողութիւններով յաջողած եմք ձեռք բերել իւրաքանչիւր խոստովանութեան պաշտօնական թղթերը եւ կարգաւ թարգմանելով՝ պաՀած եմք ապագային:*

*Կ. Պոլսոյ Կեդրոնական Կոմիտէ:*[28]

«Պաշտօնական թղթեր»-էն մէկն էր Մամբրէ վարդապետ Պէնլեանի 1890-ի հարցաքննութիւնը։ Հ. Յ. Դաշնակցութեան Կ. Պոլսոյ Կեդրոնական Կոմիտէի որոշումով Ռումբ կոմիտէի Ա. խումբի երկու ահաբեկիչներ 1895 Օգոստոս 3-ին (ն. տ.) կը գնդակահարեն Մամբրէն, որ իր ստացած վէրքերէն կը մահանայ Օգոստոս 7-ին։[29] Սպանութենէն մէկ ամիս ետք *Դրօշակ* կը յայտարարէ թէ իր ձեռքը կը գտնուին Մամբրէի հարցաքննութեան փաստաթուղթերը[30] եւ այդ նոյն թիւէն կը սկսի հրատարակել զանոնք։[31] Մեռած մարդը այլեւս չէր կրնար ինքզինք պաշտպանել։ Երբ *Դրօշակ* կը գրէր՝ թէ «մենք ապագային այդ անձնաւորու-

թեանց գործերը ճշմարտապէս երեւան հանելու նպատակաւ ամենամեծ զոհողութիւններով յաջողած եմք ձեռք բերել իւրաքանչիւր խոստովանութեան պաշտօնական թղթերը» եւ միաժամանակ կը հրապարակէր իր կողմէ սպաննուած անձի մը հարցաքննութիւնը, յստակ սպառնալիք մը կ'ուղղէր միւսներուն, որոնք կրնան ունենալ նոյն Մամբրէի ճակատագիրը, այսինքն՝ սպանութիւն եւ ապա հարցաքննութեան հրապարակում։ Այս սպառնալիքին գլխաւոր թիրախը Արփիարեանն էր։ *Դրօշակ*ի խօսքը՝ թէ «1890 թւականին, Յուլիս ամսոյ 15-րդ օրը Կ. Պոլսոյ Գում-Գաբուի նշանաւոր ցոյցին մասնակցող ծանօթ դէմքեր ի վերջոյ ուղղակի կամ անուղղակի կերպիւ դարձան մէկ մէկ վնասակար մատնիչներ», անպայմանօրէն նկատի ունէր Արփիարեան։

Ինչպէս տեսանք, *Դրօշակ* կը գրէր՝ թէ «ամենամեծ զոհողութիւններով յաջողած եմք ձեռք բերել իւրաքանչիւր խոստովանութեան պաշտօնական թղթերը։» Բնականաբար անուններ պիտի չնշէր, ոչ ալ ակնարկումներ կատարէր։ Բայց Արփիարեան պիտի նշէր։ *Դրօշակ*ի 1895-ի «բացայայտում»-ներէն երկու տարի ետք՝ 1897-ին, *Մարտ*ի էջերուն մէջ ան վստահ է՝ որ փաստաթուղթերուն աղբիւրը Մկրտիչ Թիւթիւնճիէֆն է.

*Մելքոն Կիւրճեան չարունակ ամիսներ ծանօթ Հայերու ականջէ առանձինն առանձինն կամացուկ մը կը փսփսայ թէ «Արփիարին Հարցաքննութեան թուղթերը Թիւթիւնճիէֆի ձեռքովը առինք ոստիկանատունէն, քովս են. սոսկալի մատնութիւններ ըրած է. բայց քեզի կ'ըսեմ ասիկայ, ուրիշին չըսես։» Կիւրճեանի եւ ընկերներուն Հնարամտութիւնն էր եղած Հոսանք մը առաջ բերել առանց բղխումին կեդրոնը յայտնելու։ «Կ'ըսեն»։ Նպատակնին էր այս անորոշ բացատրութեամբ Հալածել զիս. նոյն միջոցին կը տեղեկանամ թէ Կիւրճեան այդ «թուղթերը» Կեդրոնականի աշակերտներուն ցոյց տուեր է։ Անմիջապէս օձիքէն բռնեցի եւ պաՀանջեցի որ այդ թուղթերը ներկայացնէ երկու կողմէն կազմուած պատուոյ ատեանի մը։ Կեդրոնական վարժարանին տնօրէն Պ. Յարութիւն Մկրտիչեան պաշտօն ստացաւ Հայրենիքի տնօրէն Պ. ՇաՀնազարի կողմէն, պաՀանջել Կիւրճեանէ* [մէկ տպագիր տող մը անընթեռնելի է, Հ.Ա.] *ալ արձանագործ Պ. Յակոբ Արապեան յատկապէս գնաց այդ պաՀանջումը ըրաւ։ Պատասխանը փախուստ։ Գործը մեծցաւ։ Ուսումնական խորՀրդին մէջ ատենապետ Պ. Պէրպէրեան ստիպողաբար պաՀանջեց Կիւրճեանէն իրենց ալ ցոյց տալ այդ թուղթերը, քանի որ կեդծարարութեան ամբաստանութիւնը կը ծանրանայ իր վրայ։ Պատասխանը կորագլուխ լռութիւն։*[32]

Ուրեմն, Արփիարեան կասկածի կ'ենթարկէ փաստաթուղթերուն վաւերականութիւնը եւ անոնց զեղծումը կը վերագրէ Թիւթիւնճիէֆին եւ Կիւրճեանին։

*Մարտ*ի յետագայ թիւի մը մէջ, վստահաբար Արփիարեանի գրիչէն ելած անստորագիր յօդուած մը դարձեալ կը հերքէ այդ փաստաթուղթերուն գոյութիւնը.

1890-*ի ձերբակալուողներուն հարցաքննութեան «տեղեկագիրները» բնաւ իրենց* [իմա՝ Դաշնակցութեան Կ. Պոլսոյ Կեդրոնական Կոմիտէի եւ *Դրօշակ*ի, Հ.Ա.] *ձեռքը չէր անցած, ու չէր ալ կրնար երբեք անցնիլ, այն սքանչելի պատճառով որ այդ տեսակ տեղեկագիրներ գոյութիւն չէին ունեցած։*

Եզրակացութիւն.

*Դրօշակի հրատարակութիւնները գրպարտութիւններ էին, Կ. Պոլսոյ Կեդրոնական Կոմիտէին կողմէն խնամքով պատրաստուած։*[33]

Տիգրան Գէորգեան 2003-ին կը տպագրէ Միհրան Տամատեանի անտիպ ու անթուակիր յուշերը Արփիարեանի մասին, ուր հարցաքննութեան փաստաթուղթերուն զեղծումը դարձեալ կը վերագրուի Թիւթիւնճիէֆին.

*Իր համբաւաւոր «հարցաքննութիւն»ը որ իբրեւ իր մատնչութեան փաստ, ժամանակով հրատարակուեցաւ Դրօշակի մէջ, կեղծ տօքիւման մըն էր, զոր մատնիչ Թիւթիւնճիէֆ ինք դարբնած ու ծախած էր դաշնակցութեան, որոնք հաւատալով կամ չհաւատալով այդ տօքիւմանին հարազատութեանը, զայն գործածեցին իբրեւ զէնք Արփիարին դէմ։ Թիւթիւնճիէֆ մարդ մըն էր որ իր զեղխ կեանքին պէտք եղած դրամը հայթայթելու համար ամէն միջոց ներելի կը գտնէր։ Սկսաւ իբրեւ յեղափոխական, Կ. Պօլսէն փախաւ իբրեւ յեղափոխական, Պուլկարիոյ մէջ ազատաշունչ թերթ եւ գրքոյկներ հրատարակեց ատեն մը, մասնակցեցաւ առաջին անգամ Տինամիթներու պատրաստութեան գործին զոր յետոյ ինք մատնեց եւ յետոյ իբրեւ Թուրք կառավարութեան լրտես Կ. Պօլիս եկաւ ու շատ անմեղ Հայեր մատնեց. բայց իր արծաթասիրութեամբը ամէն բան ընելու ընդունակ ըլլալով՝ միեւնոյն ժամանակ Անգլ[իական] դեսպանատան կը հաղորդէր Թուրք կառավարութեան գաղտնիքները եւ, ո՜վ հեգնութիւն, դրամի սիրուն, շատ մը Հայ բանտարկեալներ ալ ազատած է։ Այս այնչափ ճիշտ է, որ երբ Թիւթիւնճիէֆ սպաննուեցաւ ահաբեկիչի գնդակով, Անգլ[իական] դեսպանը յայտնած էր թէ Հայերը ի՞նչպէս իրենց դատին բարեկամ եղող անձեր մահապատիժի կ'ենթարկեն։ Դեսպանին այս խօսքը պատմած էր Զայեան Իլիաս էֆէնտիին Խարախանեան Ներսէս եպիսկոպոսին եւ այս վերջինը պատմեց ինծի։*

*Արփիարի «մատնչութեան» այս կեղծ տօքիւմանը Թիւթիւնճիէֆէն ստացողները եւ անոր դէմ օգտագործողները եղան...* [*Յովհաննէս*] *Իսուֆեան, Մելքոն Կիւրճեան (Հրանդ) եւ Աւետիք Լալայեանց։*

Տամատեան կ'աւելցնէ՝ որ

*«Հարցաքննութեան պատճէն» եւն այդ* [իմա՝ Արփիարեանի, Հ.Ա.] *տեռօրին իբրեւ պատճառանք ծառայելու համար էր որ պատրաստուեցաւ։*[34]

Ջեղծումի մասին կ՚ակնարկէ 1900-ին Վերակազմեալ-Դաշնակցութիւն միութեան բանակցութիւններու միջնորդ Մխիթար, որ Դաշնակցական ուղղութեամբ *Հայրենիք*ի մէջ 1901-ին կը գրէ հետեւեալը.

*Դաշնակցականներուն գնդակովն իսկ վերջիվերջոյ պատուհասած Թրքահայ մը կը շինէ կեղծ Թղթեր, ու կ՚ամբաստանէ պն. Արփիարը իբրեւ մատնիչ, կը յաջողի խաբել աս ու ան, կ՚ստեղծէ անոր դէմ տեսակ մը հանրային կարծիք – սխալ – որմէ կը պաշարուին շատ մը ուղղամիտ եւ ազնիւ Թրքահայեր եւ ռուսահայեր, ճիշդ ինչպէս Տրէյֆիւսի պարագային մէջ խաբուեցան շատ պատուաւոր ֆրանսացիներ, եւ կ՚ունենանք այսպէս խնդիր մը որ ուրւականի պէս առջեւս եկաւ տնկւեցաւ, ամէն մէկ քայլիս:*[35]

Իսկ թէ ինչո՞ւ Դաշնակցական լրագիր մը կ՚ընդունի Մխիթարի այս պարբերութիւնը տպագրել՝ փաստաթուղթերու *Դրօշակ*ի հրապարակումէն երկու տարի ետք, մեզի կրնայ տանիլ բաւական հեռուները:

Բայց ո՞վ է Մկրտիչ Թիւթիւնճիէֆ: 1895 Յունիս 23-ին ան կը գնդակահարուի հայ ահաբեկիչներու կողմէ: Հ. Յ. Դաշնակցութիւնը կը յայտարարէ, որ ահաբեկչութիւնը կատարուած է Դաշնակցութեան Պոլսոյ Կոմիտէի պաշտօնական որոշումով եւ գործադրողները եղած են Դաշնակցութեան Պոլսոյ Ջոհ Կոմիտէի ահաբեկիչները:[36] Իր կողմէն, Հնչակեան Կուսակցութիւնը եւս կը յայտարարէ, որ գործողութիւնը իր արարքն էր եւ գործադրողները եղած են Հնչակեան Կուսակցութեան երկու ահաբեկիչներ:[37] Այսքան հաճելի բան մըն էր Թիւթիւնճիէֆի սպանութիւնը: Երկու կուսակցութիւններն ալ իրենց արարքը արդարացնելու համար շռայլաբար կը գործածեն դաւաճան բառը:

Արփիարեան, իր նոյն յօդուածին մէջ, կը մանրամասնէ Կիւրճեանի եւ Թիւթիւնճիէֆի սերտ յարաբերութիւնները, ինչպէս նաեւ կը բացայայտէ այլ տեղեկութիւններ՝ որոնք Կիւրճեանին մեղսակից կը դարձնեն հայամիջեան ամբաստանութիւններու (աւոր մասին՝ ստորեւ):

1900-ին, Դաշնակցութեան առաջնորդ Քրիստափոր Միքայէլեան շատ վիրաւորուած կը զգայ՝ երբ Յովհաննէս Շահնազար Ժընեւի մէջ Հնչակեան-Դաշնակցութիւն միութեան հարցը քննարկելու ժամանակ կը յիշեցնէ Թիւթիւնճիէֆի մեղսակցութիւնը հարցաքննութիւններու փաստաթուղթերուն նկատմամբ: 1900-ի վերջերը Միքայէլեան Ժընեւէն բարկացած նամակ մը կը գրէ Միքայէլ Վարանդեանին, ուր, ի միջի այլոց, կը նշէ.

*Ի՞նչ է նշանակում պ. Շահնազարի իբր Թէ «կարեւոր» յայտնուԹիւնը, Թէ ԹիւԹինջեվն է տուել մեզ Արփիարի քննուԹիւնը, - այն ԹիւԹինջեվը, որին մենք սպանել ենք ինքներս: Դրանո՞վ պէտք է հաստատեն կեղծիքը: Ո՞վ կարող է այդպիսի Թղթեր ձեռք բերել դիւանատներից (ոստիկանական), բայց եԹէ ոչ լրտեսը. դրանով նրանք չեն հերքել, այլ միայն կը հաստատեն... Իսկ մի հաստատուած լրտեսի սպանուԹիւնը մի՞Թէ դատապարտելի կարող է*

*լինել: Ամենաչատը կարող են բարոյական տեսակէտից Հարց զարթեցնել, թէ որքա՞ն արժանաւոր բան է՝ մի լրտեսի Հետ գործ ունենալ, նրանից օգտուելու եւ յետոյ նրան սպանելու Համար... Որքան ինձ գոնէ յայտնի է, մերոնք այդ թուղթը ստացել են Գիւրջեանից* [իմա՝ Մելքոն Կիւրճեան, Հ.Ա.] *եւ ոչ ոք իրենցից որեւէ յարաբերութիւնների մէջ չէ եղել Թիւթիւնջեվի Հետ. իսկ թէ որքան մօտ է եղել գործին Գիւրջեանը, - այդ էլ Յաւելուածի մի կէտում պարզուած է...:*[38]

Տրամաբանական է՝ երբ Քրիստափոր Միքայէլեան կը գրէ թէ միայն լրտես մը կրնար թրքական ոստիկանութենէն փաստաթուղթեր ձեռք բերել:

Միքայէլեան կ’ընդունի որ Թիւթիւնճիէֆ հայերուն դէմ գործող լրտես մըն էր (դաւաճան): Արդէն Դաշնակցութիւնը պաշտօնապէս յայտարարելով անոր դաւաճանութիւնը՝ 1895-ին սպաննած էր զայն: Լրտես՝ թուրքերուն ի նպաստ: Իսկ հայերու դէմ լրտես մը ինչո՞ւ թուրքերուն հետ մշակած լրտեսական յարաբերութիւնները եւ նոյնիսկ իր կեանքը վտանգի պիտի ենթարկէր՝ հայերուն (Դաշնակցութեան) տրամադրելով այնպիսի ոստիկանական գաղտնի փաստաթուղթեր, որոնք պիտի լրտեսէին թրքական ներքին գործառոյթները:

Նկատողութեան արժանի է, որ մինչեւ *Դրօշակ*ի կողմէ փաստաթուղթերու գոյութեան յայտարարութիւնը 1895 Սեպտեմբերին,[39] կը սպաննուին փաստաթուղթերուն հետ կապ ունեցող երկու անձ, մէկը՝ Թիւթիւնճիէֆ, 1895 Յունիսին, միւսը՝ Մամբրէ Պէնլեան, 1895 Օգոստոսին:

1895-ին հրատարակած Մամբրէի հարցաքննութիւններէն զատ *Դրօշակ* ոչ մէկ այլ հարցաքննութիւն կը հրապարակէ, մինչեւ 1899 թուական, երբ իր երրորդ Յաւելուածով մէջտեղ կը հանէր Արփիարեանի վերոյիշեալ երեք հարցաքննութիւնները:

**Ոչ-միաձայնական գործողութիւն մը**

Պատասխանելով 1899-ի Յաւելուածի զրպարտութիւններուն, Արփիարեան քանիցս շեշտած է՝ որ ամբողջ 1895-ի գործարքը անհատական նախաձեռնութիւն մըն էր.

1895-*ին Պոլիս լարուած դաւը պարզապէս անՀատական գործ մը նկատուած էր, Դաշնակցական կուսակցութիւնը զայն Հետզհետէ ամբողջապէս իրեն վերագրեց, ուստի եւ ոճրագործութեան պատասխանատուութիւնն ալ Հիմակ ամբողջապէս իր վրայ պիտի ծանրանայ, եթէ տակաւին յամառի ինքզինքը Համերաշխ Հռչակել քանի մը Հասարակ չարագործներու:*[40]

Հակառակ ասոր, 1899-ի Յաւելուածով Դաշնակցականները

*կուզեն* 1895-*ի անՀատական ոճրագործութիւնները ամբողջ դաշնակցական կուսակցութեան*

*գործը նկատել:*[41]

Արփիարեան աւելի կը մանրամասնէ իր տեղեկութիւնները՝ դարձեալ Յաւել-ւածը քննադատելու ծիրին մէջ.

*Եթէ ո՛ եւ է անհատի նկատմամբ տարածուած զրպարտութիւնները ի հարկին կարելի է սխալումի կամ միամտութեան վերագրել, կեղծարարութեան ոճիրը մեղմացուցիչ ո՛ եւ է պարագայի օժանդակութիւնը չկրնար յուսալ: Ընդհանրացած զրպարտութիւն մը յայտնի չէ թէ ո՞ւսկից եկած է, ի՞նչպէս. բոլոր ողորմելիներու, չարերու ընդհանուր սեփականութիւնն է. «Ի՞նչ գիտնամ, կ՚ըսեն»-ը օդին մէջ կը թռչտի. բայց կեղծ թուղթ մը օդէն չ՚իյնար, գրական գործողութեանց ծնունդ է: Պէտք է որ որոշ անձեր կանխապէս դաւադրութեան մը գաղափարը յղանան. ու յետոյ՝ գրասեղանի մը առջեւ նստած, թուղթ եւ գրիչ ձեռքերնին, չատ շրջահայեաց զգուշաւորութեամբ եւ խոհեմութեամբ իրենց ոճիրը ուշադիր մտքով գործեն: Ուստի եւ կեղծարարութիւնը ո՛ եւ է ներումի անարժան է:*

*Պոլիս 1895-ի օգոստոսին երբ Մելքոն Կիւրճեան այդ կեղծարարութիւնը սկսաւ տարածել, ո՛չ ես, ո՛չ ուրիշ ո՛ եւ է անձ րոպէ մը մտաբերեցինք Դաշնակցական Կուսակցութեան, կա՛մ անոր Մասնաճիւղին, կա՛մ անդամներէն մէկուն վերագրել այդ ստորին արարքը: Կեղծարարը ամբաստանեցի իբր պարզ անհատ մը որուն չարագործութիւնը ո՛ եւ է յարաբերութիւն չէր կրնար ունենալ Դաշնակցական Կուսակցութեան հետ: Կեղծարարը ուսուցիչ-հրապարակագիր Մելքոն Կիւրճեան-Հրանդն էր, եւ ոչ թէ Դաշնակցական-յեղափոխական Կիւրճեանը: Սակայն 1895 սեպտեմբեր 15-ի Դրօշակը անուղղակի յայտարարութեամբ մը Դաշնակցական Կուսակցութեան Կ. Պոլսոյ Մասնաճիւղը այդ կեղծարարութեան մեղսակից յայտարարած եղաւ, երբ իմացուց թէ Հնչակեան Կուսակցութեան անդամներուն անունով հարցաքննութեանց կեղծ թուղթեր պատրաստուած են Պոլիս, այդ միեւնոյն Մասնաճիւղին միջոցաւ: Իսկ հիմակ երբ Դաշնակցական Կուսակցութիւնը իր ընդհանուր ժողովքովը կ՚իւրացնէ այդ կեղծարարութիւնը, եւ կեղծ թուղթ մը իր պաշտօնաթերթին մէջ հրատարակել կուտայ, կեղծարարութեան ամբողջ պատասխանատուութիւնը ինքն ստանձնած կ՚ըլլայ:*[42]

Տարօրինակօրէն, *Դրօշակ*ի երրորդ Յաւելուածը կը հաղորդէ տեղեկութիւն մը՝ ուր Կիւրճեանը զերծ կը պահէ որեւէ կուսակցական պատկանելիութենէ.

*Իրողութիւնը սա է, որ [...] պր. Մելքոն Կիւրճեան (Հրանդ)՝ չ[է] պատկանած Պօլսի դաշնակցական ո՛չ մէկ խմբի եւ ո՛ եւ է մասնակցութիւն, հետեւաբար եւ պատասխանատուութիւն չ[է] ունեցած Դաշնակցութեան Պ[օլսոյ] Կեդր. Կօմիտէի գործերուն մէջ: Միանգամ ընդմիշտ փակելու համար այս խնդիրը կը յայտնենք, որ Պ. Կ. Կօմիտէն մէկ անգամ միայն, դրամական դիմումի մը առթիւ, յարաբերութեան մտած է պր. Մելքոն Կիւրճեանի հետ, եւ ան ալ գրաւոր, կեդրոնականի ուսանողի մը միջոցով:*[43]

Հակառակ ասոր, Կիւրճեան հիմնական դեր կը խաղայ փաստաթուղթերու

առնչութեամբ: 1895-ին Դաշնակցութիւնը տակաւին կեդրոնականացուած ամբողջատիրութիւն մը չէր:

Նախկին Դաշնակցական մը՝ Վարդօ, 1895-ին Թիֆլիսի մէջ հանդիպելով Արեւելեան Բիւրոյի անդամներուն հետ, յետագային պիտի գրէր.

*Դաշնակցութեան մէջ տիրում է տարօրինակ խառնաշփոթութիւն, որ շունը տիրոջը չէ ճանաչում, որ գործի վրայ գտնվողները մարդկանց հետ վարվում են իբրեւ խաղալիքների հետ, եւ վայ խաղալիք եղողին, իր իրաւունքները պաշտպանել չը գիտցողին:*[44]

**Իրակա՞ն թէ կեղծ**

Վերջապէս, *Դրօշակ*ի հարցաքննութեան բնագիրները իրակա՞ն են թէ կեղծ: *Դրօշակ* չէ կրցած փաստել անոնց վաւերականութիւնը, մինչդեռ ուրիշներ փորձած են կասկածի ենթարկել զանոնք՝ թէ՛ ըստ բովանդակութեան (Վահան Թէքէեան, Ստեփան Շահպազ) եւ թէ՛ պատմականօրէն (Միհրան Տամատեան): Կրնայ ըլլալ նաեւ անոնք իրական են, բայց հրատարութեան համար կատարուած են միջամտութիւններ, ջնջումներ կամ յաւելումներ: Մինչ անկարելի է վերջնական պատասխան մը տալ, դժուար է այս բնագիրները ընդունիլ իբրեւ Արփիարեանի ամբաստանագիրներ:

## բ. Դաւաճանութեան այլ «փաստեր»

*Դրօշակ* իր կողմէ կ'ուզէ աւելցնել դաւաճանութեան «փաստեր», որոնք պէտք է ամրացնեն հարցաքննութեան բնագիրներուն վաւերականութիւնը: Ինչպէս տեսանք, ըստ հրապարակուած նմոյշներուն, Արփիարեան կը մատնէ Վահրամ Տատեանին, բժիշկ Յարութիւն Թիրեաքեանին եւ Խորէն արքեպիսկոպոս Նարպէյին: Եթէ իր կողմէն *Դրօշակ* կարողանայ «փաստել» Արփիարեանի մատնութիւնները, հաստատած կ'ըլլայ հարցաքննութիւններուն վաւերականութիւնը: Արդ, կարեւոր է ուշադրութեամբ քննել ոչ թէ բերուած քաղուածքները՝ որոնք շատ քիչ բան կը բացատրեն, այլ անոնց հեղինակները, որոնք շատ բան կրնան բացայայտել դրդապատճառներուն առումով:

Այսպէս, իբրեւ յաւելեալ փաստ, *Դրօշակ* հինգ անգամ կ'օգտագործէ Մելքոն Կիւրճեանի (Հրանդ) յօդուածը՝ տպագրուած Վառնայի *Շարժում*ին մէջ 1898-ին (թիւ 29):[45] Այդ ժամանակ Արփիարեանի եւ Կիւրճեանի անձնական յարաբերութիւնները կը գտնուէին ամենաթշնամական մակարդակի վրայ:

1897 Նոյեմբերին, Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան պաշտօնաթերթ *Մարտ*ի մէջ Արփիարեան ստորագրած էր երկար յօդուած մը, ուր կը «բացայայտէր» Կիւրճեանի սերտ յարաբերութիւնները Թիւթիւնճիէֆի, Նազըմի

եւ Մամբրէ Պէնլեանի հետ՝ երեքն ալ հայ կուսակցութիւններուն կողմէ դաւաճան ընդունուած անձեր, այլեւ Կիւրճեանը կը ներկայացնէր իբրեւ օսմանեան ազդեցիկ անձնաւորութիւններու հետ համագործակցող անձ մը։ Ան անձամբ Կիւրճեանին կը բարդէր իր դէմ եղած մահափորձին ամբողջ ծանրութիւնը։

Կիւրճեան-Թիւթիւնճիէֆ-Նազըմի յարաբերութեան մասին կը գրէ.

*Մտերիմներ էին Կիւրճեան եւ Թիւթիւնճիէֆ։ Կիւրճեանի ամուսնութեան հանդէսին Նազըմի կողմէն պատուոյ ներկայացուցիչը Թիւթիւնճիէֆն էր։ Թիւթիւնճիէֆը արդարացնելու ուքնող միակ փաստաբանն էր։ Լրտեսին* [իմա՝ Թիւթիւնճիէֆի, Հ.Ա.] *սատակումէն յետոյ, անոր վրայ տածած համակրանքն ու յարգանքը Կիւրճեան կը փոխանցէր անոր կնոջն ու աղջկանը, որոնց ասպնջականը կը հանդիսանար։*[46]

Արփիարեան դարձեալ կ'ուզէ ցոյց տալ Կիւրճեանի յարաբերութիւնները թուրք իշխանութեան հետ, երբ կը շեշտէ՝ թէ ան միակն էր 1890-ի յեղափոխական խմբակէն որ չձերբակալուեցաւ.

*Մելքոն Կիւրճեան 1890-ին ինծի հետ մէկտեղ կ'անդամակցէր հինգ ընկերէ կազմուած յեղափոխական մասնախմբի մը։ Յուլիս 15-ի դէպքերէն* [իմա՝ Գում Գաբուի ցոյցէն, Հ.Ա.] *ետքը հետզհետէ փախան կամ բռնուեցան մօտէն կամ հեռուէն յեղափոխական կազմակերպութեան բոլոր մասնակցողները. «առաջնակարգ» երկու յեղափոխական միայն ո՛չ բռնուեցան, ո՛չ ալ նեղուեցան։ Ասոնցմէ մէկուն անունը հանրածանօթ է՝ Մամբրէ, միւսը՝ Մելքոն Կիւրճեան։ Այս երկու ձերբազատները չարունակեցին մնալ ամենամտերիմ բարեկամներ։*[47]

Արփիարեան նոյնիսկ կը գնահատէ Կիւրճեանի մտաւոր կացութիւնը.

*Բնականէն արդէն կէս-ապուշ մըն է այդ Կիւրճեանը – այս էր իր գլխաւոր արժանիքը Մամբրէի եւ Թիւթիւնճիէֆի մտերմութիւնը վայելելու. միտքն ալ արդէն մթագնած էր այն ամէն «ազգասէր»-ներուն պէս որոնց հոգիին աչքը պիշ պիշ յառած կը մնայ շահու խաւարեցուցիչ փայլին վրայ։*[48]

Մէջբերումներուս նպատակը Կիւրճեանը «սեւցնել» չէ բնաւ, այլ պարզապէս մտածել տալ՝ թէ ի՛նչ բովանդակութիւն կրնայ ունենալ Կիւրճեանի կողմէ քանի մը ամիս ետք հրապարակուած յօդուած մը Արփիարեանի մասին Վառնայի Դաշնակցական լրագիրին մէջ։ Եւ ինչպէս Կիւրճեանի մասին Արփիարեանի արտայայտած կարծիքները Հնչակեան պաշտօնաթերթին մէջ արդիւնքն էին նախապէս տեղի ունեցած անհամաձայնութիւններու եւ կարելի չէ ընդունիլ իբրեւ բառացի ճշմարտութիւններ, այնպէս ալ Կիւրճեանի կարծիքները Դաշնակցական լրագիրի մէջ կարելի չէ օգտագործել իբրեւ անվիճելի ճշմարտութիւններ։

Արփիարեանը մեղադրող աչքի զարնող միւս աղբիւրն է Յարութիւն Ճանկիւլեանի *Դիմակաւորներ* գրքոյկը (Եգիպտոս, 1898), զոր *Դրօշակ* կ'օգտագործէ վեց անգամ:[49]

Վերակազմեալ Հնչակեաններու Լոնտոնի Կոմիտէին կողմէ Ճանկիւլեան 1897-ին ընտրուած էր բանակցութիւններ վարելու Դաշնակցականներու հետ միութեան այնքան ծեծուած խնդիրին առնչութեամբ: Երկու կուսակցութիւններուն միջեւ անհամաձայնութիւններու պատճառով պաշտօնական բանակցութիւններ տեղի չեն ունենար, եւ Վերակազմեալները Արփիարեանի գլխաւորութեամբ կ'որոշեն Ճանկիւլեանը ոչ-պաշտօնական հանգամանքով Ժընեւ ղրկել հանդիպելու *Դրօշակ*ի ներկայացուցիչներուն հետ: 1897 Յունիսին Ճանկիւլեան կ'երթայ Ժընեւ, կը հանդիպի Արմէն Գարոյի, Ռուստոյի, Վահանի եւ Դաշնակցական այլ ընկերներու հետ եւ քանի մը օրէն կը վերադառնայ Լոնտոն: Հնչակեան Կոմիտէին կը ներկայացնէ տեղեկագիր մը, ուր կը նշէ՝ թէ Դաշնակցականներուն համար բանակցութիւնները խանգարող միակ հանգամանքը Արփիարեանի անձն է եւ կ'առաջարկէ անոր հրաժարականը կուսակցութեան վարչութենէն: Արփիարեան կը ներկայացնէ հրաժարականը, որ կը մերժուի վարչութեան կողմէ:[50] Մինչեւ այստեղ ամէն բան կը թուի ըլլալ հասկնալի: Բայց ահաւասիկ Ճանկիւլեան կը մեկնի Եգիպտոս եւ այնտեղ կը պարզէ՝ որ Ժընեւի մէջ *Դրօշակ*ի հանդիպումին ընթացքին Դաշնակցականները իրեն ցոյց տուած են հարցաքննութեան փաստաթուղթերը: Արփիարեանի *Մարտ*ը կը տեղեկացնէ.

*Այս միջոցին Պ. Ճանկիւլեան կը մեկնի Լոնտոնէն ու Եգիպտոս կ'երթայ այն տեղ գտնուող Հնչակեան ընկերներու եւ պաշտօնական անձերու տեղեկութիւններ տալ իր «առաքելութեան» մասին: Գումարուած ընդհանուր ժողովի մը մէջ չորս ժամ կը խօսի. բայց յայտնի կ'ըլլայ թէ Լոնտոն պարզապէս խաբեբայութիւն մը ըրած է յայտարարելով Պ. Արփիարեանի թէ իր ԱՆՁՆ է ՄԻԱՅՆ միութեան արգելքը: Պ. Ճանկիւլեան ստորագրած է եղեր խել մը պայմաններ որոնցմէ ամէն մէկը իրարմէ աւելի յիմարական եւ ստորնացուցիչ յեղափոխական կուսակցութեան մը համար: Սակայն դաւին յաջողութեանը համար կարեւոր սեպած է զանոնք ծածուկ պահել Պ. Արփիարեանէն:*

*Եգիպտոսի ընկերները կը պահանջեն Պ. Ճանկիւլէն որ Դրօշակի խմբագրութեան քով տեսած թուղթերը, - դօքումէնտները, իրենք ալ տեսնեն, մասնաւորապէս ինչ որ կը վերաբերի Պ. Արփիարեանի թուղթերուն: Ժողովը կը յայտարարէ որ Դրօշակի խմբագրութիւնը պէտք է Եգիպտոս խրկէ իր ներկայացուցիչներուն այն թուղթերը որոնցմով իբր թէ Պ. Արփիարեանի մեղսապարտութիւնը կը հաստատուի: Դաշնակցական եւ Հնչակեան ներկայացուցիչներէ կազմուած ժողովի մը մէջ թող քննուին այդ թուղթերը, եւ անոնց ստուգութիւնը երբ հաստատուի, ան ատեն Պ. Արփիարեանի ո՛չ թէ հրաժարականը կ'ընդունին այլ զինքը մահուան կը դատապարտեն: Սպաննիչը պատրաստ ունին, կը խրկեն Լոնտոն, իր գործը կը վերջացնեն:*

*Նմանապէս կը պահանջեն որ պատճէններն ուրիշ թուղթերու ալ որոնց մասին Պ.*

*Ճանկիւլեան կը խօսէր իրենց, խրկուին Եգիպտոս:*

*Իսկ ասոնցմէ դուրս՝ քանի որ Դրօշակի խմբագրութիւնը յայտարարած է Պ. Ճանկիւլեանի թէ Հնչակեան կեդրոնական վարչութեան մեծամասնութեան վրայ կատարեալ վստահութիւն ունին, ուրեմն պէտք է որ պաշտօնական յարաբերութեան մտնեն, պաշտօնական նամակ մը գրելով: Իսկ Պ. Արփիարեանի հրաժարականը կեդրոնական վարչութեան գրասեղանին վրայ ըլլալով, ան կը մնայ հրաժարեալ մինչեւ խնդրին վերջանալը: Այս պահանջումներուն պատասխանը ստանալու համար ամիս մը պայմանաժամ կը տրուի:*

*Պ. Ճանկիւլեան այս իմաստով երկու նամակ կը գրէ Դրօշակի խմբագրութեան. բայց թէ ի՞նչ պատասխան ընդունած է, այդ մեզի յայտնի եղաւ հինգ ամսուան մէջ: Միայն թէ Պ. Ճանկիւլեան շատ ձախորդ վիճակի մէջ գտնուելով, եւ կուսակցութեանս դէմ Դրօշակի կողմէն լարուած դաւին գիտակցաբար կամ թէ անգիտակցաբար դաւակից գտնուելով, պարտաւորուեցաւ հրաժարական տալ կուսակցութեանս անդամակցութենէն:*[51]

Իրադարձութիւնը խիստ ուշագրաւ է։ Անկախ ներկայացուած ոճէն ու մանրամասնութիւններէն, յստակ է, որ Ճանկիւլեան հանդիպելով Դաշնակցականներուն հետ, եւ իբր տեսնելով «դօքումէնտները», փոխած է իր դիրքը Հնչակեաններուն նկատմամբ։ Կարդացա՞ծ է, հեռուէ՞ն տեսած է, թէ՞ պարզապէս իրեն համոզած են որ նման «դօքումէնտներ» կը գտնուին, դժուար է հաստատել։ Բայց դիրքի փոփոխութիւն՝ անկասկած տեղի ունեցած է։

Քանի մը օրուայ ընթացքին կատարուած այս փոփոխութիւնը կը հաստատէ նաեւ *Դրօշակ*՝ խնդիրը ամբողջութեամբ շեղելով ի նպաստ իրեն.

*Ճիշդ է, պ. Ճանկիւլեանը կաշառւեց. «ազգային մեծամեծ շահերի պաշտպան» վերակազմեալները այս անգամ չեն սխալւում... Բայց նա կաշառւեց մի այնպիսի բանով, որով, պէտք է խոստովանած, Արփիարեան եւ ընկ. երբեք չեն կաշառւել. – Ճանկիւլեանը կաշառւեց ճշմարտութեամբ:*

*Ճանկիւլեանը երկարատեւ բանտարկութիւնից եւ աքսորից յետոյ նոր Եւրոպա եկած, երեւի, դեռ լաւ չէր իմացել, որ Հնչակեան նոր կուսակցութիւնը իր երեւան գալու առաջին օրից ամէն բան տակն ու վրայ է արել, որ «կեղծելը ազգային գերագոյն պարտականութիւն է» հռչակել (Մարտ, թիւ 1) եւ որ առհասարակ Վերակազմեալ կեդրոնը հետեւում է նորագոյն «պարտականութիւնների, որոնց ենթարկւած չեն ուրիշ ո՛չ մէկ հայ անհատ, ուրիշ ո՛չ մէկ յեղափոխական կուսակցութիւն»: Զիմանալով այդ բոլորը, Ճանկիւլեանը գնաց հինաւուրց «պարտականութիւնների» ճանապարհով. – երկու երեք օրւայ ընթացքում* [խօսքը 1897 Յունիսին Ժընեւի *Դրօշակ*ի խմբագրատանը մէջ տեղի ունեցած հանդիպումին մասին է, Հ.Ա.] *խնդրին ծանօթանալուց յետոյ, նա անւանեց իրերը իրենց յատուկ անուններով եւ, իհարկէ, պատժւեց... Պօլսի տաճկական խպառ անբարոյականացած, փտած, այլասեռւած, սատկող կուլտուրայի հարազատ ծնունդ Արփիարեանները, որոնք յեղափոխութիւնից դէպի մեղայագրեր ու մեղայագրերից դէպի յեղափոխութիւն վազելու համար իրենց սրտում եւ ջղերում ոչ մի արգելք չեն թողած, - իհարկէ, անզգայ պիտի մնային այնպիսի մի*

*պարզ ձայնի առաջ, ինչպիսին էր ժողովրդի զաւակ Ճանկիւլեանի ձայնը, եւ զարմանալու ոչինչ չկայ, որ նրա բոլոր բողոքները տեղնուտեղը խեղդւեցին...*:[52]

«Սատկող կուլտուրայի հարազատ ծնունդ Արփիարեաններ»՝ ընդդէմ «ժողովրդի զաւակ Ճանկիւլեանի»:

1898-ին Եգիպտոսի մէջ Ճանկիւլեանի հրատարակած *Դիմակաւորներ*ուն դիմակաւորները Հնչակեաններն են: Նման աժռելիօրէն անմակարդակ եւ վտանգաւոր գիրք մը դիմագրաւելու լաւագոյն միջոցը կ'ըլլայ Երուանդ Օտեանի թափանցող երգիծանքը: Օտեան չի մոռնար առաջ բերել փաստաթուղթերուն հարցը, զոր Ճանկիւլեան կը յաւակնի տեսած ըլլալ Ժընեւի մէջ: Ան պատկերաւոր կերպով խօսեցնել կու տայ Ճանկիւլեանը.

*- Երբ Ժընէվ կը գտնուէի՝ Պ. Ռոստոմ, Վահապ եւ Արմէն Կարօ ինծ ցոյց տուեցին Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասի եւ Յովհաննէսի վաւերական գրութիւնները, որոնք ձեռք անցուցած էին: Այն ատեն կարծես մի մեծ տակառ սառ ջուր լեցուցին գլխուս: Ես ո՛չ աչքերուս եւ ո՛չ ականջներուս չէի հաւատար. ժամերով արտասուք թափեցի երբ լսեցի այդ ամէնքը: Ի՞նչ, աս այն Յիսո՞ւսն էր որ այժմ իբրեւ Աստուած կը պաշտուի*:[53]

Յարութիւն Ճանկիւլեանը 1899-ին կը գտնենք Վառնա, ուր բացած է ծխավաճառանոց մը, վաճառելով «ծխախոտ, բօւթայի եւ աղերսագրի ամէն տեսակ բուլեր նաեւ զանազան տեսակ սիկարներ:» Շահած ըլլալով Դաշնակցութեան համակրութիւնը, իր ծխավաճառանոցը կը դառնայ Դաշնակցական ուղղութիւն ունեցող *Շարժում* լրագիրին Վառնայի երկու վաճառատեղիներէն մէկը:[54]

Այս բոլորէն ետք, որքա՞ն կարելի հաւատալ *Դիմակաւորներ*ուն:

*Դրօշակ*ի երրորդ աղբիւր մըն է *Ապտակ*ի 1897 թուականի թիւ 10-ը՝ զոր կը գործածուի չորս անգամ,[55] մէկ անգամ ալ *Ապտակ*ի 1896 Նոյեմբեր թիւ 7-ը:[56] *Ապտակ* Նազարբէկեանի միամսեայ երգիծաթերթն էր, որ կը հրատարակուէր *Հնչակ*ի զուագիեռութեամբ: Թիւ 10-ի պարագային, *Դրօշակ* ամէն անգամ նշած է 1896 թուականը: Տպագրական կրկնուող սխալ մը պէտք է սեպել, քանի որ բոլոր քաղուածքները կատարուած են 1897-ի թիւ 10-էն: 1896-ի թիւ 10-ը լոյս տեսած է Փետրուարին, երբ Արփիարեան-Նազարբէկեան յարաբերութիւնները մտերիմ էին տակաւին: Մինչդեռ 1897-ի թիւ 10-ը՝ որմէ կատարուած են *Դրօշակ*ի քաղուածքները, լոյս տեսած է Փետրուարին, երբ երկուքին յարաբերութիւնները կը գտնուէին թշնամական մակարդակի վրայ իսկ փոխամբաստանութիւնները հասած էին իրենց գագաթնակէտին: Այս թշնամանքը սկսած էր 1896 Օգոստոսի պատզամաւորական ժողովէն, երբ Արփիարեան եւ իր համախոհները հիմք կը դնէին «նոր» Հնչակեաններուն: Ուրեմն, 1896 թիւ 7 եւ 1897 թիւ 10 *Ապտակ*ները հզօր դրդապատճառներ ունէին գրելու ու գործելու Արփիարեանի դէմ:

«Խմբագրութեանս ձեռքը գտնուող թուղթեր»՝ բոլորը չբացայայտուած, նոյնիսկ Արփիարեանի մասին գրուած կատաղի ու ծայր աստիճան անորակ երկու թատրերգութիւններ՝ տպագրուած *Ապտակ*ի եւ *Միութիւն*ի մէջ, «Բ. տեղեկագիր» մը՝ անյայտ ու անորոշ հասցէով, ինչպէս նաեւ սակաւաթիւ քանի մը գրութիւններ եւս կու գան լրացնելու *Դրօշակ*ի երրորդ Յաւելուածի ամբաստանութիւններու շարքը, բոլորն ալ հրատարակուած մասնաւոր դրդապատճառներով եւ նպատակներով:

## գ. Մեղայագիր

Հայկական Ծնունդի օրը՝ 1891 Յունուար 6/18-ին, Արփիարեան ազատ կ'արձակուի: *Արեւելք* օրաթերթի Յունուար 12/24 թուակիր համարին (թիւ 2098) մէջ Արփիարեան կը ստորագրէ գրութիւն մը՝ «Երախտագիտական արտայայտութիւն առ Վեհ. Սուլթանն», ուր կը փառաբանէ Սուլթան Համիտ եւ շնորհակալութիւն կը յայտնէ իր ազատ արձակուելու հրամանը տուած ըլլալուն համար: Կը ստորագրէ՝ «Ն. Կ. Վեհափառութեան ամենախոնարհ եւ երախտագէտ ծառայ Արփիար Արփիարեան»:

Արփիարեան ամբողջ կեանքը չկրցաւ ձերբազատուիլ անոր շուքէն: Առիթ չտուին որ ձերբազատուի: Բացառիկ փաստաթուղթ մըն էր իր դէմ: Օտեան յետագային պիտի գրէր.

*5-6 ամսուան բանտարկութենէ մը ետքը Արփիարեան ազատ կ'արձակուէր, գրելով այն համբաւաւոր մեղայագիրը որուն համար տարիներով այնքա՛ն դատափետուեցաւ խեղճը:*[57]

*Դրօշակ* իբրեւ ամբաստանագիր կը վերատպէ «Մեղայագիր»-ը ամբողջութեամբ,[58] անոր կցելով ծանօթագրութիւններ:

Ոչ ոք գիտէ այս «Մեղայագիր»-ին հանգամանքները. պարտադրա՞նք մըն էր՝ փոխան ազատութեան, թէ՞ ինքնակամ յղացում մը: Եթէ պարտադրանք մըն էր՝ ի՞նչ պայմաններու տակ կատարուած է ան:

«Մեղայագիր»-ին մէջ կը գտնուի տեղեկութիւն մը, որ յետագային դիւրին թիրախ մը հանդիսացաւ ամբաստանութիւններու.

*Այդ ՄԵՐ ՀԱՅՐՆ էր* [իմա՝ Սուլթան Համիտ, Հ.Ա.] *որ Իւր գորովալիր սրտովն Յունուար 5-ի իրիկունն յիշեց Իւր հայ զաւակներն ալ:*

*- Ներեցի, մի՛ լաք, եւ խնդացէ՛ք, ըսաւ:*

*Այդ հայրագորով «Ներեցի» բառին բոլոր քաղցրութիւնը, բոլոր հրապոյրը բանտարկեալի մը չափ ոչ ոք կրնայ զգալ. ապաքէն կայսերական այդ վեհանձն ներողամտութեամբ եթէ*

*ընդհանուր Հայ ազգը Յունուար 5-ի օրը խորին երախտագիտութեան նոր պարտականութիւն մը եւս ունեցաւ առ Վեհափառ Սուլթան Համիտ Կայսրն առատագութ, Հայ ազգին մէջ անոնք որք Խթումի գիչերը արձակուելով բանտէն, վերադարձան իրենց սիրելիներու մօտ, բնականաբար անոնց երախտապարտութիւնն առ Վեհափառ Կայսրն կրկնակի է եւ անսահման։*

*Եւ ես, որ այդ գիչերը միայնակ բանտին մէջ անցուցի ալ բոլորովին յուսահատուած ապագայէն, ի՞նչ բացատրութիւն կարենամ գտնել հրապարակաւ թարգմանելու համար յուզեալ սրտիս երախտագիտութիւնն առ գթալիր Կայսրն մեր որ յաջորդ գիչերը կը հաճէր շնորհել ինձ կեանքս ու ազատութիւնս։*

Այն կէտը՝ որ 1891 Յունուար 5/17-ի ազատագրեալներուն մէջ Արփիարեան չկար, եւ թէ ան ազատ արձակուեցաւ յաջորդ գիշերը, հակառակորդներուն առիթ տուաւ Յունուար 6/18-ի պարապութիւնը լեցնել շահաւէտ ենթադրութիւններով։

Անմիջապէս նշեմ, որ 1891 Յունուար 5/17-ի ազատագրեալներուն մէջ կը գտնուէին Վահրամ պէյ Տատեան եւ Տոքթ. Յարութիւն Թիրեաքեան,[59] որոնց իբր Արփիարեան մատնած էր 1890 Նոյեմբեր 22/Դեկտեմբեր 4-ի երկրորդ ոստիկանական հարցաքննութեան ընթացքին։

Դաշնակցականներէն երկու ու կէս տարի առաջ, «հին» Հնչակեանները Արփիարեանը պախարակելու համար լաւագոյն կերպով արդէն օգտագործած էին «Մեղայագիր»-ը։ Արփիարեանի գլխաւորութեամբ արդէն կազմուած էին «նոր» (շուտով՝ Վերակազմեալ) Հնչակեանները եւ երկու Հնչակեաններուն միջեւ կը տիրէին գրեթէ թշնամական տրամադրութիւններ։

Նազարբէկեան իր խմբագրած *Ապտակ* երգիծական լրագիրի 1897 Փետրուարի թիւին մէջ կը վերահրատարակէ «Մեղայագիր»-ն ամբողջութեամբ,[60] անոր կցելով անստորագիր երկար նախաբան մը, ուր չհիմնաւորուած մեղադրանքներու տարափ մը կը հեղեղէ Արփիարեանի հասցէին։ Ահաւասիկ անկէ հատուած մը.

*Երբ նա ձերբակալվում է [...], երկու-երեք ամիս բանտում մնալով, նրա ամենամեծ քաջութիւնը նրանում է կայանում, որ անամօթ կերպով չարունակ լալիս է եւ Նազըմից փրկութիւն աղերսում: Նազըմն իսկ զզուանք զգալով Արփիարեանի լալկանութիւնից, իր ոստիկանական ճարպիկ հոտառութեամբ անմիջապէս գուշակում է, որ յանձին Արփիարեանի «օգտակար» որս էր կտցահարել, եւ յայտնում է Արփիարեանին նրա արձակման պայմանները... այն է մատնիչի ու դաւաճանի դեր ստանձնել եւ «ի վերայ այսր ամենայնի» Արփիարեանի ամենամօտ ազգական... կանանցից մէկին զոհաբերել Նազըմի անկողնուն... Սակարկութիւնը դժուարութեան չէ հանդիպում. մի շարք յայտնութիւնների հետ Արփիարեանն այդ ժամանակ ամբաստանում է, իբրեւ յեղափոխականներ, Խորէն Նար Բէյին, Վահրամ Բէյ Տատեանին, Դօքտոր Թիրիաքեանին, որոնք էլ ձերբակալվելով՝ առաջինը թունաւորվում է սուլթանի կառավարութեան կողմից, իսկ երկու վերջինները բանտերում ամեն*

տանջանք կրելուց յետ՝ Հազիւ կարողանում են իրանց ազատել մահից: Արփիարեանն արժանանում է դրամական վարձատրութեան եւ բանտից արձակվելուն, բայց դա՛ այնպիսի պարագաներում, որ հայ հասարակութիւնը կասկած չը տանէ նրա վատութեան մասին, եւ ապա գաղտնի խոստում է տալիս իր սկսած «հաւատարիմ ծառայի» դերը շարունակելու: Բանտից դուրս գալուն պէս նա իր «հրապարակագրական գրչով» ստեղծագործում է այդ գրական կտորը, «Մեղայագիրը», բարոյական անկման այդ ամենաստոր ու ամենափայլուն արտայայտութիւնը, այդ ամենաաղտոտ հայելին, որ միակ ինքն ըստ ինքեան Արփիարեանի բարոյական մահի ղողանջն է: Բայց այդ «Մեղայագիրն» էլ ունի իր պարագաները: Արփիարեանն այդ ժամանակ անդամ էր *Արեւելքի* խմբագրութեան, որից ծածուկ հրատարակել նախ փորձեց իր Մեղայագիրը նոյն *Արեւելքում*, սակայն չյաջողեցաւ: *Արեւելքի* խմբագրութիւնն ընդդիմացաւ Մեղայագիրն իր թերթում զետեղելուն: Այդտեղ Վատը [իմա՝ Արփիարեան, Հ.Ա.] հասկնալի կերպով ազդարարում է, թէ եթէ իր պահանջը չը կատարվէ՝ *Արեւելքի* խմբագրութիւնը «ծանրապէս կը տուժէ»... Եւ Մեղայագիրը լոյս է տեսնում *Արեւելքում*: Բայց այդ թերթի խմբագրութիւնն այդպիսի ամօթից յետոյ հարկ է տեսնում Արփիարեանին արտաքսել իր, այսինքն խմբագրութեան անդամակցութիւնից: Սակայն Արփիարեանն այդտեղ մխիթարւում է նրանով, որ իր Մեղայագիրը տպագրված՝ *Արեւելքի* համարն անմիջապէս տանում է այլ եւս իր պետն ու հրամայողը դարձած Նազըմին, որից էլ անմիջապէս ստանում է հարիւր մէճիտ վարձատրութիւն եւ բացարձակ իրաւունք՝ իր ամեն ցանկացած ժամանակը ճաշի կամ ընթրիքի յաճախելու Նազըմի տունը եւ նրա հետ «խօսակցելու»: Ինչպէս հաւատացեալը մզկիթ է յաճախում, նոյնպէս եւ Արփիարեանը Նազըմի մօտ էր գնում շարունակ:[61]

Ածականներ՝ «ամենաստոր», «ամենաաղտոտ», բնութագրութիւն՝ «Արփիարեանի բարոյական մահի ղողանջ»-ը, եւ հոյակապ թատրերգական շարադրութիւն մը, որ միայն ատելութիւն կը սերմանէ: Եւ ոչ թէ մէկ, այլ երկու անգամ Նազըմ վարձատրած է Արփիարեանին: Ոչ միայն վարձատրած է, այլ Արփիարեան ազատ ելումուտ ունեցած է Նազըմի տանը՝ ճաշելու եւ ընթրելու համար: Փա՞ստ, ականատե՞ս, վկա՞յ: Չկան:

*Ապտակ*էն ընդամէնը մէկ ու կէս տարի ետք, Դաշնակցական ուղղութեամբ Վառնայի *Շարժում* լրագիրը կը տպագրէ Վարդ Պատրիկովի յօդուածը, զոր *Դրօշակ* կ'օգտագործէ իր երրորդ Յաւելուածին մէջ: Այնտեղ, ի միջի այլոց, կը կարդանք.

Արփիարը ներվածների մէջ չէր. ոստիկանները ինձ պատմում էին թէ վերջը ինչպէս նա ընկել էր Նազըմի ոտքերը, աղաչել, պաղատել այս խօսքերով.

- էֆէնտիմ, ղուրթարընըզ, բէն հէփսի եաբարըմ դէօվլէթ իչիւն, նէ իստէյօրսընըզ:

«Նազիմը զգած հայ հանճարեղ ստրուկի քծնումից, եւ զգալով թէ Արփիարի պէս մարդը ինչքան օգտակար կը լինէր իրա համար, վազում է պալատ գիշերով եւ կէս գիշերին Արփիարի ազատման թուղթը բերում: Արփիարը գիշերը կառքով դառնում է իր տունը եւ չուտով

*Արեւելքի մէջ իր Հուչակաւոր մեղայագիրը գրում*:[62]

Թէ՛ *Ապտակ* եւ թէ՛ Պատրիկով գրական-թատերգական միանման նկարագրութիւններ կը կատարեն:

Երկուքն ալ միանման տիպար մը կ'ուզեն ստեղծել՝ Արփիարեանը ներկայացնելով իբրեւ վախկոտ լալկան մը: *Ապտակ* կը գրէ՝ թէ Արփիարեան «շարունակ լալիս է եւ Նազըմից փրկութիւն աղերսում:» Պատրիկով՝ թէ Արփիարեան «ընկել էր Նազըմի ոտքերը, աղաչել, պաղատել:»

Երկուքն ալ քաջ գիտեն՝ որ Նազըմ զզուած էր Ափիարեանէն: *Ապտակ*՝ «Նազըմն իսկ զզուանք զգալով Արփիարեանի լալկանութիւնից:» Պատրիկով՝ «Նազիմը զզւած հայ հանճարեղ ստրուկի քծնումից:»

Երկուքն ալ կը շեշտեն Արփիարեանի *օգտակարութիւն*ը Նազըմին համար: Ապտակ՝ «[Նազըմ] իր ոստիկանական ճարպիկ հոտառութեամբ անմիջապէս գուշակում է, որ յանձին Արփիարեանի «օգտակար» որս էր կտցահարել:» Պատրիկով՝ «[Նազըմ] զգալով թէ Արփիարի պէս մարդը ինչքան օգտակար կը լինէր իրա համար:»

Կարելի չէ հաւատալ՝ որ Պատրիկով իր նկարագրութիւնը վերցուցած չըլլայ *Ապտակ*էն, մինչդեռ վերջինս ամբողջութեամբ պատրանքներու վրայ հիմնուած գրութիւն մըն է:

Մնացածը Պատրիկովի համար դժուար չէր երեւակայութեամբ յօրինել: Քանի որ Յունուար 5-ին հայ բանտարկեալներ ազատ կ'արձակուին՝ որոնց մաս չէր կազմեր Արփիարեան, եւ քանի որ ան ազատ կ'արձակուի յաջորդ գիշեր, ուրեմն դժուար չէ գեղարուեստականօրէն աւելցնել՝ թէ Նազըմ «վազում է պալատ գիշերով եւ կէս գիշերին Արփիարի ազատման թուղթը բերում:» Բայց կրնար Նազըմ մէկ օր մը եւս հանդուրժել Արփիարեանի լալկանութիւնը եւ *առանց* վազելու յաջորդ առաւօտեան «ազատման թուղթը» բերել: Մէկ գիշեր մը շատ վնաս չէր կրնար հասցնել Օսմանեան Կայսրութեան:

Յետոյ կու գայ Պետրոս Տօնապետեանի 1899 Յունուար 20-ի նամակը ուղղուած *Դրօշակ*ին.

*Կ. Պօլսոյ բանտին մէջ մի անգամ պաՀապաններէս մէկը ըսաւ ինձ Պետրոս Փարեանի (Բաբկէն) ձերբակալման առԹիւ որ այն միջոցին* 18-19 *տարեկան էր. անկէց տոմս մը բերած էր ինձ. – Այս մի տարւան մէջ* 5-600 *բանտարկեալներ տեսայ Հայոց խնդրի վերաբերող, տեսայ նաեւ* 16-17 *տարեկան տղաք, ոմանք միայն բռնուելու առաջին օրերը տխուր էին, յետոյ ամէնքը, մեծ մասամբ, կը զուարճանային, կերգէին ու Հոգերնին չէր, սակայն չտեսայ Արփիար էֆէնտիի պէս ալչաք Հէրիֆ մը. Պէյի պէս կապրէր, ունէր անկողին փառաւոր, ամէն օր իր տունէն մի քանի տեսակ կերակուր կը բերէին, օտային մէջ ինձ Հետ կապրէր ու քնանար. Թուղթ ու մելան ունէր, բայց ամէն օր տխուր էր ու կուլար եւ օրը* 4-5 *նամակ կը գրէր*

*Նազըմին (նախարարին)*:[63]

Կ'երեւի թէ թուրք ոստիկանները սովորութիւն ունին բաւական երկար խօսիլ բանտարկեալներուն հետ: Վերը տեսանք թէ ինչպէս ոստիկան մը Պատրիկովին կը պատմէր ճիշդ այն ինչ ինք կ'ուզէր լսած ըլլալ: Այստեղ ուրիշ ոստիկան մը Տօնապետեանին դարձեալ կը պատմէ այն ինչ կը փափաքէր լսել, ան ալ որքան պատկերաւոր կերպով՝ «ալչաք հէրիֆ մը», որ «ամէն օր տխուր էր ու կուլար»: Կը մնայ հաւատալ՝ որ Արփիարեան օրական 4-5 նամակ կը գրէր Նազըմին:

Փորձեմ համառօտագրել բանտի շրջանի դէպքերը՝ ըստ Արփիարեանի հակառակորդներու վերոյիշեալ նկարագրութիւններուն:

Արփիարեան, շնորհիւ անողոք ու հայատեաց Նազըմին, յատուկ շնորհեալ կեանք մը կ'ապրէր բանտին մէջ՝ մասնաւոր անկողինով: Իրեն արտօնուած էր տունէն առատ ուտելիք ստանալ: Ինչո՞ւ առանձնաշնորհեալ էր: Որովհետեւ, ըստ *Դրօշակ*ի «փաստաթուղթեր»-ուն, 1890 Նոյեմբեր 22 / Դեկտեմբեր 4-ի հարցաքննութեան ժամանակ Արփիարեան կատարած էր կարեւոր ամբաստանութիւններ հայերու դէմ, որոնց շնորհիւ Նազըմի համար դարձած էր խիստ շահաւէտ անձնաւորութիւն մը: Միաժամանակ, ան իր ազատութիւնը աղաչելու համար շարունակ կու լար եւ օրական 4-5 նամակ կը գրէր Նազըմին: Այս առանձնաշնորհեալ բանտարկեալը, արդարեւ, 1891 Յունուար 5/17-ի ազատագրեալներուն մէջ չէր գտնուեր: Այդ ազատագրեալներուն մէջ կը գտնուէին Վահրամ պէյ Տատեան եւ Տոքթ. Յարութիւն Թիրեաքեան, որոնց Արփիարեան ամբաստանած էր երկրորդ ոստիկանական հարցաքննութեան ընթացքին: 1891 Յունուար 5/17-ի գիշերը կամ 6/18-ի առաւօտեան, Արփիարեան լալկան պաղատանքներով Նազըմին ոտքը կ'իյնայ իրեն ազատ արձակելու համար: Նազըմ այդ օրը թէ՛ կը զզուի իրմէ եւ թէ՛ կ'ըմբռնէ որ ան իր յետագայ ամբաստանութիւններով կրնայ կարեւոր ծառայութիւններ մատուցել օսմանեան իշխանութեան: Նազըմ այս բոլորը կը հասկնայ *միայն* Յունուար 6/18-ին, թէեւ անոր արտօնութեամբ էր որ մինչ այդ Արփիարեան առանձնաշնորհեալ վիճակ մը կը վայելէր բանտին մէջ իբրեւ հայերը մատնող օգտակար տարր: Օգոստոս 6/18-ի լացերուն պատճառով Նազըմ, զզուելով Արփիարեանէն, կը բերէ ազատութեան արտօնագիրը: Այդ Յունուար 6/18-ի չարաբաստիկ օրը Արփիարեան Նազըմին կը խոստանայ տպագրել «Մեղայագիր»-ը եւ ազգականուհիներէն մէկը կը զոհէ իբրեւ պոռնիկական արարք: Կը հասկնանք՝ որ Նազըմին համար «Մեղայագիր»-ը եւ սեռական պահանջքը աւելի կարեւոր էին քան Նոյեմբեր 22 / Դեկտեմբեր 4-ի ենթադրեալ ամբաստանութիւնները՝ եթէ կ'ուզենք անպայման հաւատալ վերոյիշեալ տեղեկութիւններուն:

Այստեղ կարեւոր կողմնորոշիչ նշանակութիւն ունի 1890 Յունուար 5/17-ին կատարուած բանտարկեալներուն ազատագրումը, որոնց մէջ կը գտնուէին

Արփիարեանի կողմէ ենթադրաբար ամբաստանուած Տատեանը եւ Թիրեաքեանը, մինչ իր ամբաստանութեամբ Նազըմին սիրելի դարձած եւ այս պատճառով բանտին մէջ հանգստաւէտ կեանք ապրող Արփիարեան ազատ կ'արձակուի յաջորդ օրը:

Արդեօ՞ք Տատեանները Սուլթան Համիտին շատ մօտ կանգնած մարդիկ չէին: Կ'արժէ ամբողջութեամբ մէջբերել Հ. Եփրեմ Պօղոսեանի տեղեկութիւնները Վահրամ պէյ Տատեանի այս բանտարկութեան մասին.

1890-1891 *Թուականներին, երբ սկսուեցին Հայկական շարժումները Կ. Պոլսում, Սուլթան Աբդիւլ-Համիտը ասում է Արթին-Փաշա Դադեանին, որին Հետ նա յաճախ Նարդի է խաղալիս եղել երեկոները, թէ՝ իր ականջը շատ «վատ բաներ» են Հասել նրա ազգական Վահրամ-Բէյի մասին եւ այդ «վատ բաները» այն է եղել որ Վահրամ-Բէյի մօտ ժողովւում են երիտասարդ Թիւրքերը եւ Հայերը եւ քաղաքական խնդիրների մասին են խօսում: «Քո Տոհմը, ասում է Սուլթանը Արթին Փաշային, այնպիսի նշանաւոր ծառայութիւններ է մատուցել իմ նախնիքներին եւ պետութեանը որ ես չէի ուզել որեւէ մէկը քո ազգականներից ֆէսաղ-դաւաճան դուրս գայ, բանտում փտի կամ կախաղան Հանուի... Ասում եմ թէ ինձ յայտնի է քո ազգական Վահրամ-Բէյը ֆէսադների Հետ սերտ յարաբերութիւններ է պաՀպանում, ժողովներ է կազմում իւր բնակարանումը եւ քաղաքական խնդիրների մասին խորՀրդակցում եւ իմ դէմ դաւեր սարքում: Պարտաւորութիւն եմ դնում քեզ վրայ՝ խրատել եւ յորդորել նրան որ յետ կանգնի վտանգաւոր ճանապարՀից եւ յարաբերութիւնը իսպառ կտրէ այնպիսիների Հետ, որոնցից ոչ մէկը ողջ չի մնալ եւ շուտով կը գտնի իր արժանաւոր պատիժը... Քո ազգականը երիտասարդ մի անձն է, Փարիզում ուսումը աւարտած՝ քաջ իրաւագէտ է. Արդարութեան Նախարարը շատ գովեց նրան իբրեւ օրէնսգէտ եւ ընդունակ պաշտօնեայի. ես նրան առաջ կը քաշեմ եւ շուտով բարձր պաշտօնի կը Հասցնեմ, եթէ միայն ձեռք քաշի չար արարածներից եւ Հեռու պաՀի իրան վնասակար ու վտանգաւոր գործերից»:*

*Նոյն յանձնարարութիւնը Վահրամ-Բէյի վերաբերմամբ Աբդիւլ-Համիդը տալիս է եւս իր ջեներալ-ադիւտանտ Հունգարացի Կոմս Սեչինի-Փաշային, որի գեղանի դուստր ԿոմսուՀի Վանդայի Հետ նոր է ամուսնացած եղել Վահրամ-Բէյը...*

*Մի կողմից Արթին Փաշան, միւս կողմից Կոմս Սեչինին ամէն ջանք գործ են դնում Վահրամ-Բէյին Համոզելու եւ զգաստացնելու Համար որ կտրէ յարաբերութիւնը ոստիկանութեան Նախարարի Հսկողութեան տակ գտնուող խմբակի Հետ եւ բոլորովին յետ կանգնի քաղաքական եւ պետական խնդիրների մէջ խառնուելուց: Վահրամ-Բէյը եւ նրա կրակոտ ամուսինը կտրուկ կերպով յայտնում են թէ Հայրենասիրական զգացումը խեղդել եւ պարտականութիւնից յետ կանգնեցնել չեն կարող ո՛չ մի սպառնալիք եւ ոչ մի զարՀուրելիք... Այս պատճառով Վահրամ-Բէյը մի քանի ժամանակից յետոյ ձերբակալւում է եւ նետւում բանտ: Քաջարի Տիկինի Վանտան սակայն չի քնում, այլ բոլոր ջանք գործ է դնում իր ամուսնուն բանտից ազատելու Համար: Մեծ կաշառքով է լինում թէ դրամական երաշխաւորութիւն տալով – չգիտեմ – բայց իրողութիւնը այն է լինում որ Վահրամ-Բէյը շուտով ազատւում է բանտից եւ իր ամուսնու Հետ անյայտանում է Կ. Պոլսից:*[64]

Այս տեղեկութիւնները եւ պատմողականութիւնը տրամագծօրէն տարբեր է *Դրօշակ*ի արփիարեանական զրպարտութիւններէն։ Խնդիրը շատ աւելի մեծ է Արփիարեանի մը մատնութիւնը ըլլալէ։

Մէկ կողմէն՝ Վահրամ պէյ Տատեանի ազգականը՝ Արթին փաշա Տատեան, երեկոները նարտի կը խաղայ Սուլթան Համիտի հետ։ Այլ խօսքով, Արթին փաշա լրտես մըն է։

Միւս կողմէն՝ կը պարզուի, որ թէ՛ ոստիկանութիւնը եւ թէ՛ անձամբ Սուլթան Համիտ տեղեակ են ամէն բանէ, իսկ յեղափոխականները կը գտնուին ոստիկանական հսկողութեան տակ։ Թուրք ոստիկանները կը հետապնդեն հայ յեղափոխականները, մինչեւ որ յարմար պահու կը ձերբակալեն զանոնք։ Կազմակերպուած աշխատանք։ Ի՞նչ իմաստ ունի Տատեանի բանտարկութենէն ետք, հարցաքննութեան մը ընթացքին Արփիարեանի քանի մը խօսքը։ Սուլթան Համիտ եւ ոստիկանութիւնը այնքան վստահ են իրենց տեղեկութիւններուն վրայ, որ նոյնիսկ կը յորդորեն Վահրամի ազգականին եւ աներոջ խրատել զայն եւ ետ քաշել յեղափոխական գործունէութենէ։ Արփիարեանի հաստղութենէն շատ աւելի բարձր գործողութիւն մըն էր։

Վերջապէս, Վահրամ պէյ հաւանաբար կաշառքով կ՚ազատի բանտէն։ Արփիարեան ո՛չ Սուլթանին հետ նարտի խաղացող ազգական ունէր, եւ ո՛չ ալ հարուստ էր կաշառքով դուրս գալու համար բանտէն։ Ան ունէր գրիչ՝ ամենավարպետ ու ամենավառ գրիչներէն մէկը։ Բանտէն դուրս ելլելու իր կաշառքը եղաւ իր գրիչը՝ «Մեղայագիր»-ը։

Նազըմին պաղատելու եղելութիւնը Թէքէեան եւս կը պատմէ, ըստ Լեւոն Բաշալեանէն ստացած տեղեկութեան, պատասխանելով *Հայրենիք*ի մէջ Սիմոն Վրացեանի գրած (Սեպտեմբեր 1931) հակա-արփիարեանական յօդուածին.

> [Արփիարեան] *կ՚արձակուի իր ընտանիքի անդամներուն կողմէ Նազըմի մօտ անձամբ կատարուած դիմումի մը եւ ծնրադիր, արտասուալից Թախանձանքներու հետեւանօք...*։[65]

Անշուշտ, Թէքէեանի նման մտածողի մը համար չկայ Արփիարեանը նսեմացնելու եւ աննկարագիր լալկանի մը վերածելու միտումը, ինչպէս հաճոյքով շեշտադրած էին վերոյիշեալ հակառակորդները։ Դարձեալ, ի տարբերութիւն հակառակորդներէն՝ որոնց միակ նպատակն էր Արփիարեանի արժանապատուութեան ծայր աստիճան ոտնակոխումը, Թէքէեան Նազըմի հետ հանդիպումի կէտը կը շեշտէ՝ տրամաբանօրէն փաստելու համար, թէ չէր կրնար Նազըմին լրտեսական ծառայութիւններ մատուցած գործակատար մը միւս բանտարկեալներուն հետ ազատ չարձակուիլ (խօսքը 1891 Յունուար 5/17-ի ազատ արձակուողներուն մասին է) եւ մանաւանդ յայտնուիլ աղաչանքի եւ պաղատանքի ստիպողականութեան առջեւ։

Թէքէեան կ՚աւելցնէ.

*Պ. Լեւոն Բաշալեան, որմէ լսեցի այս մանրամասնութիւնը, ինծի յայտնեց նաեւ՝ թէ այդ արձակումէն քանի մը օր վերջ Արեւելքի մէջ հրատարակուած մեղայագիրը պարտադրուած է Արփիարին՝ Նազըմի կողմէ, իբրեւ պայման իր արձակման:*

*Եւ ուրիշ կերպ չէր կրնար ըլլալ, արդարեւ: Արփիար յիմար չէր՝ առանց ստիպման այդպիսի գրութիւն մը հրատարակելու համար եւ չէր հրատարակեր՝ եթէ իր ազատ արձա-կումն ալ տեղի ունեցած ըլլար միւս բանտարկեալներուն արձակման նման, առանց պայ-մանի:*

*Բայց այդ մեղադրանքը, ինքնին, կը կազմէ գերագոյն փաստը Արփիարի անմեղութեան:*

*Որովհետեւ, եթէ Արփիար մատնած ըլլար իրապէս, եթէ, Վրացեանի հաւաստացածին եւ հաւատացնել ուզածին պէս, ան 25 ոսկի թոշակ ստանար՝ յառաջիկային եւս մատնելու եւ հայ յեղափոխութիւնը ներսէն քայքայելու եւ վիժեցնելու համար, եթէ այդ նպատակաւ ան պիտի գործէր տակաւին իբրեւ Հնչակեան, - անտարակոյս ոչ ինք եւ ոչ Նազըմ պիտի ուզէին որ այդպիսի գրութիւն մը ստորագրելով եւ հրատարակելով կասկածելի դառնայ կամ վարկաբեկուի անոր հեղինակը:*

*Ասոր հակառակ, Նազըմի համար օգտակար էր մեղայագրին հրատարակումը՝ եթէ կրցած չէր խոստովանցնել Արփիարը, ո՞ւր մնաց մատնել տալ. ասով՝ ան գոնէ կը յուսար իր ազգին առջեւ վարկաբեկ ընել յեղափոխական-հրապարակագիրը:*

*Եւ Արփիար յանձն առաւ գրել այդ գիրը՝ վստահ ըլլալով որ հայ ժողովուրդը բաւական կը ճանչնայ զինք եւ պիտի չխաբուի անկէ:*

*Եւ իրապէս, չխաբուեցաւ հայ ժողովուրդը, որ պահեց եւ աւելի քան երբեք ցոյց տուաւ իր հաւատքն ու համակցութիւնը Արփիարին: Ապացո՛յց, ատկէ քանի մը ամիս վերջը հրատարակուիլ սկսած Հայրենիքի վայելած աննախընթաց ժողովրդականութիւնը, այն Հայրենիքին որ իր ճակատը կը կրէր «խմբագրապետ՝ Արփիար Արփիարեան» արձանագրութիւնը:*[66]

Կը մնայ կարդալ «Մեղայագիր»-ը։ Արդե՞օք անիկա ներբող մըն է, թէ ներբողի հեգնանք մը։ Երգիծանքի յատկանիշներէն է սրումը եւ անհաւանական պատկե-րաւորութիւնը, որոնց ետեւ պէտք է գտնել իրական իմաստները եւ երգիծանքի բուն խօսքը։ Յատկանիշներէն է նաեւ ծայրայեղականութիւնը, ուր իրերը պէտք է հասկնալ ճիշդ հակառակ իմաստով։ Անհաւատալի մակարդակով ծայրայեղ փառաբանութիւնը, օրինակ, կարելի է մեկնաբանել իբրեւ հեգնանք։ Այս բոլորը առկայ է «Մեղայագիր»-ին մէջ։ Ահաւասիկ անկէ քաղուածք մը.

*Եթէ տիեզերք համօրէն կը սքանչանայ Նորին Վեհափառութեան իմաստութեանը վրայ, կը յուզուի կը խանդաղատի նաեւ Նորա անսահման գթասրտութեանը համար: Այնպէս որ կրնանք ըսել թէ՝ երբ Նախախնամութիւնը պարգեւեց օսմանեան երկրին զՍուլթան Համիտ, Նորա ծնած օրն եթէ Աստուած մատը Նորա ճակտին դնելով իմաստութիւն պարգեւեց, խրկեց*

*նաեւ երկու Հրեշտակներ՝ Գթութեան ու Բարութեան Հրեշտակներն, Հսկել Նորա օրօրոցին:*

Տիեզերք՝ գոյութեան ամենալայն տարածքը, որմէ անդին ոչ մէկ բան գոյութիւն ունի, Նախախնամութիւն՝ մարդկութիւնը հոգացող գերագոյն ուժը, եւ Աստուած՝ կեանքի ամենաբարձր գոյութիւնը, մէկ պարբերութեան մէջ կու գան միանալու Սուլթան Համիտի անունին։ Առաջին երեքը ստեղծած են չորրորդը՝ իբրեւ պարգեւ Օսմանեան պետութեան։ Առաջին երեքը կը ծառայեն կերտելու Սուլթանին պատկերը։ Ո՞վ կրնար ասոր հաւատալ՝ նոյնիսկ այդ ժամանակ։

Այս պատկերաւորութիւնը ունի վերջակէտ մը՝ Սուլթանի օրօրոցը։ Տիեզերքէն (առաջին բառը) մինչեւ օրօրոցը (վերջին բառը) երկարող թատրոն մը տեղի կ՚ունենայ, գոյութեան ամենէն ընդարձակ տարածութենէն (տիեզերք) դէպի գոյութիւնը ընդունող ամենափոքր տարածութիւնը (օրօրոց)։ Տիեզե՞րքն է Սուլթանին տեղը թէ օրօրոցը։ Զուտ լեզուակառուցողապաշտական շարադրութիւն մը՝ որուն Արփիարեան կը թուի լաւ տիրապետել։

Յաջորդ պարբերութիւնը.

*Օսմանեան կայսրութեան Համար երջանկութեան օր մը եղաւ այն օրն ուր այդ իմաստութեամբ սնած գլուխն, Բարութեան ու Գթութեան Հրեշտակներու Հովանոյն ներքեւ ուռճացած այդ սիրտն, Օսմանեան կայսրութեան տէրն եղաւ:*

«[Հ]րեշտակներու հովանոյն ներքեւ ուռճացած այդ սիրտն» արտայայտութիւնը բնաւ դրական իմաստ մը չ՚արտացոլեր։ «Ուռճանալ» բայը ունի իմաստային քանի մը շերտեր։ Իր ուղղակի իմաստը դրական է՝ ծաղկիլ, բարգաւաճիլ, բայց միշտ փարթամութեան իմաստի մը ներքոյ։ Այս փարթամութեան իմաստը բայը կը տանի դէպի իր կարեւոր ու յաճախ գործածուող փոխաբերական բացասական իմաստներէն մէկուն՝ փքուիլ, գոռոզանալ, հպարտանալ։ Գրական պատկերաւորութեան պայմաններուն, Սուլթանի ուռճացած սիրտը իր առեւտրային իմաստով պիտի նշանակէր մեծահոգի սիրտ մը։ Բայց չէ՞ որ յիշեալ փոխաբերական իմաստը նոյնքան տարածուած է եւ գործածական։ Իսկ ինչո՞ւ Արփիարեան անպայմանօրէն պիտի գործածէր երկիմաստ բառ մը։ Կրնար շատ աւելի յստակ ու պարզորոշ բառով մը ներբողել Սուլթանին սիրտը։ Կարելի է ենթադրել, որ Արփիարեան դիտաւորեալ մտցուցած է երկիմաստութիւնը՝ ուղղակի եւ փոխաբերական։ Բայց կարելի է նաեւ «ուռճացած սիրտ»-ը գրական պատկերաւորութենէ փոխել ֆիզիքական-մարմնական ախտանիշի եւ կ՚ունենանք հիւանդ, ուռ(ճաց)ած սիրտ մը։

Ամէն պարագայի, այս «ուռճացած սիրտ»-ը Արփիարեան կը հասցնէ գրեթէ ծաղրանքի աստիճանի, զայն տեղաւորելով «Բարութեան ու Գթութեան հրեշտակներու հովանոյն ներքեւ»։ Հրեշտակները՝ այդ քնարական ու ցնորական

արարածները, կը հսկեն «ուռճացած սիրտ»-ը, հետեւաբար, մէկ կողմէն՝ անոնք մեղսակից են սիրտի ուռճացումին, միւս կողմէն՝ պատասխանատու են ուռճացած սիրտի ստեղծումին, երրորդ կողմէն՝ ուռճացած սիրտը անկարող է բաբախել առանց հրեշտակային հովանաւորութեան։

Միաժամանակ, բնագիրին մէջ երկրորդ անգամն է որ Արփիարեան կը յիշատակէ «Բարութեան ու Գթութեան հրեշտակներ»-ը, որոնք երկու պարագաներուն ալ կը հսկեն ու կը հովանաւորեն Սուլթանը։ Սուլթանը՝ հրեշտակներու կրկնակի հսկողութեան ու հովանիին տակ։ Երկիցս կրկնելով, Արփիարեան վստահաբար ուզած է բան մը շեշտել։ Բոլորը այդ ժամանակ գիտէին՝ որ Սուլթան Համիտ ո՛չ բարի է եւ ո՛չ ալ գթասիրտ։ Կարճ բնագիրի մը մէջ երկիցս կրկնելով *հրեշտակներուն* բարութիւնն ու գթութիւնը՝ որոնց հսկողութեան ու հովանիին տակ կը գտնուի *Սուլթան*, ուզած է հակադիր իմաստներ առաջարկել հրեշտակներու եւ Սուլթանի տիպարներու շեշտադրութեամբ։ Հրեշտակները բարի են ու գթասիրտ, իսկ Սուլթանը պէտք ունի անոնց վերահսկողութիւնը։ Սուլթանը այնքան ալ բարի ու գթասիրտ չէ ինչպէս հրեշտակները։ Սուլթանը հրեշտակ *չէ*։

Տիգրան Գէորգեանի հրապարակած Միհրան Տամատեանի անտիպ յուշերը ճիշդ այս գաղափարը կ'ուզեն արտայայտել։ Տամատեան, անդրադառնալով «Մեղսայագիր»-ին մասին, կը գրէ.

*Արփիարի դէմ իբրեւ զէնք գործածուող երկրորդ տօքիւմանը իր համբաւաւոր Մեղայագիրն է: Այս մեղայագիրը ի հարկէ չի կրնար պաշտպանուիլ, բայց երկու մեղմացուցիչ պարագաներ կան. առաջինը այն է որ, մինչ բոլոր միւս բանտարկեալները իրմէ առաջ ազատ արձակուեցան, իրեն՝ բանտէն արձակուելուն իբր պայման պարտադրուած էր այդպիսի գրութիւն մը որ, սակայն ուրիշին վնաս մը չէր տար, այլ ինքզինք միայն կը ստորացնէր: Երկրորդ մեղմացուցիչ պարագան կը հասկընան անո՛նք միայն որոնք Արփիարի հոգեբանութիւնը մօտէն ճանչցած են: Արփիար երբ ինքզինք պարտաւորուած զգար իր համոզումին հակառակ բան մը գրելու, այդ գրութեան մէջ կը դնէր այնպիսի ծայրայեղ չափազանցութիւններ եւ այնպիսի բացառիկ շեշտ մը՝ որոնք անոր կու տային գրեթէ զաւեշտական կամ երգիծաբանական բնոյթ: Արփիար կը կարծէր այդ կերպով զինք բռնադատողին քթին խնդալ: Արփիար այնքան վստահ էր ազգին մէջ իր կատարած դերին վրայ, որ կարեւորութիւն չէր տար գրածներուն եւ կը հաւատար որ ուրիշներն ալ կարեւորութիւն պիտի չընծայէին անոնց:*

*Օրինակով մը բացատրեմ:*

*Ամէն տարի գահակալութեան տարեդարձին, մայրաքաղաքի ամէն ազգի թերթերը ստիպուած էին գովասանքներ հիւսել Սուլթանին: Արփիարի գովասանքները իրենց չափազանցութեամբը ամէնքը կը գերազանցէին եւ ամէնուն խնդուք կը պատճառէին, եւ ինք էր առաջին խնդացողը: Օրինակ, «Շնորհիւ վեհ. Սուլթանին, շոգեկառքերը երկրին մէկ ծայրէն միւսը կը սուրան, երկրին մէջ ճարտարարուեստը, արուեստները, վաճառականութիւնը աննախընթաց կերպով կը ծաղկին, հանրային կրթութիւնը այն աստիճան զարգացած է որ*

*անգրագէտ մարդ չէ մնացած լայնածաւալ կայսրութեան մէջ, բոլոր ժողովուրդները՝ անսահմանօրէն երջանիկ՝ միաբերան կ՚աղօթեն վեհ. Սուլթանին արեւշատութեանը համար եւ կը մաղթեն որ ան յաւիտեանս «անսասան մնայ իր կայսերական գահուն վրայ»:*[67]

## 4. ՄԱՀԱՓՈՐՁԻՆ ՊԱՇՏՕՆԱԿԱՆԱՑՈՒՄԸ

Առաջին մահափորձը Դաշնակցականները կը կատարեն 1895-ին։ Ի տարբերութիւն ուրիշ սպանութիւններէ, դէպքէն անմիջապէս ետք *Դրօշակ* վաւերացուած պաշտօնական տեղեկագիր չի հրատարակեր։ Երեք տարիէն աւելի պէտք է անցնէր, որ *Դրօշակ* պաշտօնապէս յայտարարէր՝ «Պօլսում տեղի ունեցաւ Դաշնակցականների փորձը նրա դէմ։»[68]

Ընդունելով մահափորձին գործադրութիւնը, *Դրօշակ* պէտք պիտի ունենար պաշտօնականացնել դէպքը, այսինքն՝ զայն վերագրել Դաշնակցութեան Կոմիտէի պաշտօնական որոշումին։ Այս նպատակով, *Դրօշակ*ի 1899 Նոյեմբեր-Դեկտեմբեր 15-ի հռչակաւոր Յաւելուածը կը տպագրէ Դաշնակցութեան Կեդրոնական Կոմիտէի վճիռը՝ արձակուած 1895 Նոյեմբրին։ Ահաւասիկ անոր ամբողջական բնագիրը.

*Կ. ՊՕԼՍԻ ԴԱՇՆԱԿ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻ ՎՃԻՌԸ*

*Կ. Պօլսի Կեդրոնական Կոմիտէն* [1895] *նոյեմբեր* 13-*ին* [հ. տ.] *հետեւեալ պաշտօնագիրն ուղղած էր տեղական երեք խմբագրութիւններուն – Արեւելքի, Հայրենիքի եւ Ճէրիտէի չարգիէի*:

*«Կեդրոնական Կոմիտէն իր երէկի նստին մէջ զբաղելով ազգի սոյն տագնապալի վայրկեանին մայրաքաղաքիս հայ լրագրութեան ազգակործան ընթացքին քննութեամբ եւ*

*«Նկատելով որ ... լրագիրը մամուլի բարձր կոչումին չծառայելէ զատ, կառավարութեան ձեռքը անարգ գործիք դարձած իր գոյութեամբ վնասակար կ՚ըլլայ հայկական դատին,*

*«Նկատելով որ ... լրագիրը, առանց իր կարծիքը յայտնելու, սուլթանական բոլորովին ստայօդ պաշտօնական զեկուցումներն ու թելադրուած յօդուածները հրատարակելով կը մոլորեցնէ ու կը խաբէ արիւնոտ հայ ժողովուրդը ու կը նպաստէ հայկական դատի խեղդուելուն,*

*«Նկատելով որ ... լրագրին գոյութիւնը արատ մըն է հայութեան ու իր ընթացքը դաւաճանութիւն է՝*

*Որոշեց.*

*ա. Վաղուընէ սկսեալ անպայման դադարման դատապարտել ... լրագիրը:*

*բ. Մահով պատժել այն տնօրէններն ու խմբագիրներն, որոնք համարձակին մեր որոշումին հակառակիլ կամ կառավարութեան յանձնելով սոյն պաշտօնագիրը՝ անոր օգնութեան դիմել:*

N. B. *Պաշտօնագիրը կարդալէ վերջ՝ ղրկել հետեւեալ հասցէին՝*
L. Roole 15, Augustus Rd. Hammersmith, W. London։

*Հայրենիքի խմբագրապետ Ա. Արփիարեան սոյն որոշումին չհամակերպելէ զատ – մինչդեռ միւս երկուքին խմբագիրներն հետեւեալ օրն իսկ դադարեցուցած էին թերթերուն հրատարակումը – նախ՝ ծաղրեց ու թշնամանեց այդ պաշտօնագիրը յղող յեղափոխական մարմինը. երկրորդ՝ չորդորեց միւս երկու խմբագրութիւնները հետեւիլ իր ընթացքին. երրորդ՝ վերոյիշեալ պաշտօնագիրը չխրկեց ցոյց տրուած հասցէին, այլ հաղորդեց իսկոյն ոստիկանութեան։*

*Ուստի Կ. Պօլսի կեդրոնական կոմիտէն 23 նոյեմբերի 115-րդ նստին մէջ,*

*Նկատելով որ Ա. Արփիարեան ջանադիր է արգելք ըլլալ Դաշնակցութեան կոմիտէի մը որոշումներուն.*

*Նկատելով որ Ա. Արփիարեան խօսքով ու գործով թշնամացած է յեղափոխութիւնը յանձին Դաշնակցութեան Կ. Պօլսի կեդրոնական կոմիտէին.*

*Նկատելով որ Ա. Արփիարեան եւ ոչ մէկ մեղմացուցիչ պարագայ մը ունենալէ զատ, մէկէ աւելի ծանր յեղափոխական յանցանքներու մէջ ամբաստանուած է արդէն (Ա. Մատնիչի դեր կատարած է 1890-ի յեղափոխական գործիչներուն նկատմամբ։ Բ. Սեպտեմբերի ծանօթ դէպքերու ատեն Նազըմի դրդմամբ փորձած է եկեղեցիներն ապաստանող հայերը դուրս չելնելու յորդորել՝ ապստամբներ ցոյց տալու համար անոնք Եւրոպայի առջեւ. այդ մեղադրութիւնը կը ծանրանայ այն յարակից պարագաներով, որ նոյնիմաստ հայերէն յայտարարութիւններ ձգուած են Բերայի եկեղեցիին բակը լրտեսներու յատուկ մերձաւոր սենեակէ մը։ Գ. Պարագլուխ է եղած դաւադիրներու խմբակի մը որ ոստիկանութեան խորհրդով եւ աջակցութեամբ ծանօթ յեղափոխական գործիչներ աքսորելով կամ Եւրոպա խրկելով՝ կը ջանայ ջլատել Պօլսի յեղափոխական ուժերը).*

*Որոշեց անյապաղ իգործ դնել 13 նոյեմբերի պաշտօնագրին սպառնալիքը, մահուան պատժի ենթարկելով Ա. Արփիարեանի, եւ վճռին գործադրութիւնը յանձնեց ՍԵԽ-ՍԱՐ ենթակոմիտէի ահաբեկիչներուն։*[69]

Ասիկա լիովին համոզիչ կրնար ըլլալ եթէ *Դրօշակ* այս վճիռին տակ աւելցուցած չըլլար հետեւեալը.

*Այս ՎՃԻՌԸ վերցուած է ԲԱԲԿԷՆ ՍԻՒՆԻԻ մի Տեղեկագրից, որ ժամանակին խմբագրութեան է ուղարկուած։ Այդ Տեղեկագիրը չունի պաշտօնական վաւերացում, այսինքն վճռի տակը չկայ կոմիտէի բոլոր անդամների ստորագրութիւնը կամ կոմիտէի կնիքը։ Սակայն՝ քանի որ վճիռը արուած է կոմիտէի բոլոր անդամների միաձայն հաւանութեամբ, ուստի, ներկայ Յաւելւածի առթիւ, Պօլսոյ նախկին կեդրոնական կոմիտէի ԵՐԿՈՒ, միակ կենդանի մնացած, ԱՆԴԱՄՆԵՐԸ, հաստատելով միանգամայն ԲԱԲԿԷՆԻ մեզ հաղորդած վճռի վաւերականութիւնը, հարկաւոր համարեցին կցել այդ վճռին եւ հետեւեալ ԼՐԱՑՈՒՑԻՉ ՏԵՂԵԿԱԳԻՐԸ, աւելի լուսաբանելու համար այն կէտերը, որոնցով կոմիտէն ղեկավարուել է Արփիարի սպանման վճիռը տալու ժամանակ։*[70]

Տուեալ յաւելագրութիւնը հարցումներու ամբողջ դուռ մը կը բանայ։ Գործ ունինք ոչ-պաշտօնական տեղեկագիրի մը հետ։ Ինչպէ՞ս կրնայ «վճիռ»-ը արձակւած քլլալ բոլորի համաձայնութեամբ, բայց առանց բոլորի ստորագրութեան։ Ինչո՞ւ բոլորը չեն ստորագրած եւ չէ կնքուած։ Բաւարար չէ կօմիտէի կենդանի մնացած երկու անդամներու *բանաւոր* հաստատումներուն վրայ անոր պաշտօնական տարազում տալ։ Դաշնակցութեան սովորութիւնը չէր չստորագրուած տեղեկագիրներու հիման վրայ սպանութիւններ կատարել։ Արփիարեանէն առաջ եւ վերջ Դաշնակցութեան կատարած բոլոր սպանութիւնները *Դրօշակ* անմիջապէս կը տեղեկացնէր հանրութեան՝ հրապարակ բերելով պաշտօնական վճիռներն ու գործադրութեան մանրամասնութիւնները։ Արփիարեանի մահափորձի ժամանակ (1895) *Դրօշակ* ոչ մէկ վճիռ հրատարակած է։ Միայն անկէ շուրջ չորս տարի ետք (1899) հրապարակած է տուեալ ոչ-պաշտօնական տեղեկագիրը։ Միայն 1899-ին է որ Դաշնակցութիւնը իբրեւ օրինական Կօմիտէ ուզած է պաշտօնապէս արդարացնել մահափորձը եւ զայն դարձնել Դաշնակցութեան պաշտօնական գործողութիւնը։ Միայն 1899-ին է որ Կօմիտէն, գոնէ առերեւոյթ միաձայնութեամբ, համաձայն եղած է 1895-ի մահափորձին։

Ասկէ կարելի է երկու եզրակացութիւն ընել։ Եղած է գրութիւն մը, տեղեկագիր մը՝ որուն վրայ ոչ բոլորը ուզած են ստորագրել, հետեւաբար, Կօմիտէն չէ կրցած զայն կնիքով վաւերացնել ու ներկայացնել իբրեւ Դաշնակցութեան վերջնական խօսքը։ Եւ կամ մահափորձը կատարուած է Դաշնակցական խումբի մը անհատական նախաձեռնութեամբ՝ առանց Կօմիտէի բոլոր անդամներու գիտութեան, իսկ տեղեկագիրը *Դրօշակ*ի Յաւելուածին համար հնարուած կեղծարարութիւն մըն է։ Երկու պարագաներն ալ կրնան ցոյց տալ՝ որ մահափորձը կատարուած է Դաշնակցութեան ոչ միաձայն հաւանութեամբ։ Հաւանաբար, այս պարագային գոյութիւն ունեցած է երկու թեւ՝ խստաբարոյ-վրիժառու եւ դիւանագէտ-զգուշաւոր (բաւական նման 1908-ի սպանութեան, որ կատարուած է Վերակազմեալ Հնչակեաններու բռնապետական թեւի՝ Վահէ Արզուեանի հրամանով, մինչ նոյն կուսակցութեան դիւանագէտ թեւը՝ Ապահ, Միհրան Տամատեան, Լեւոն Մկրտիչեան, ոչ միայն յետագային դատապարտեցին սպանութիւնը, այլ ընդհանրապէս տեղեակ չէին վճիռին մասին)։

Կը գտնուի այս կարծիքը հաստատող քանի մը վկայութիւններ՝ արտայայտուած Դաշնակցական մամուլին մէջ։

Վերակազմեալ Հնչակեաններու եւ Դաշնակցութեան միջեւ միութիւն գոյացնելու համար 1900-ին իբրեւ միջնորդ հանդէս կու գայ Մխիթար։ 1901-ին Դաշնակցական ուղղութեամբ *Հայրենիք*ի մէջ Մխիթար կը հրատարակէ երկար գրութիւն մը (որուն մասին ակնարկուեցաւ վերը), ուր կը տեղեկացնէ՝ թէ միութեան գործընթացքին համար Դաշնակցականներուն առաջարկած է կազմել Վերակազմեալներէն եւ Դաշնակցութենէն բաղկացած միացեալ դատարան մը,

որպէսզի քննուի *Դրօշակ*ի Յաւելուածի մէջ Արփիարեանին հասցէագրուած ամբաստանութիւններուն հարցը։ Կը ստանայ Արեւմտեան Բիւրոյէն 1900 Ապրիլ 3 թուակիր պատասխան մը.

*Քաջ տեղեակ լինելով մեր տրամադրութեան, դուք չպէտք է այժմեանից բարձրացնէք դատին հարցը... Մենք անկարող ենք մեր ընկերների առաջ պաշտպանել մի բան, որին հակառակ էինք ինքներս։*[71]

Հակառակ էին Յաւելուածին եւ այնտեղ պարփակուած ամբաստանութիւններուն, որոնք, իրենց կարգին, ուղղակիօրէն կապուած էին մահափորձին հետ։

1924-ին, Պոսթոնի *Հայրենիք*ին մէջ Միքայէլ Վարանդեան կը ստորագրէ յօդուածաշար մը Քրիստափոր Միքայէլեանի մասին, ուր կը կատարէ կարեւոր բացայայտումներ։ Կը վերյիշէ այն տարիները՝ երբ Արփիարեանի մասնակցութեամբ բանակցութիւններ տեղի կ'ունենային Վերակազմեալ Հնչակեաններու եւ Դաշնակցութեան միջեւ։ Ան 1895-ի Դաշնակցականները կը բաժնէ երկու խումբի, անզիջող՝ Քրիստափոր Միքայէլեան, Յովհաննէս Իւսուֆեան, Արշակ Վռամեան, եւ զիջող՝ ինք (Միքայէլ Վարանդեան) եւ ընկերներ, որոնց անունը չի նշեր։[72]

Նախ կը նկարագրէ Քրիստափոր Միքայէլեանի՝ անզիջող թեւի, կարծիքը Արփիարեանի մասին 1890-ականներու երկրորդ կէսին.

*Արփիարի նկատմամբ – ոչ մի կոմպրոմիս, ոչ մի իրաւախոհութիւն։ Դաշնակցութեան առաջնորդը* [իմա՝ Քրիստափոր Միքայէլեան, Հ.Ա.] *որքան որ լայնմիտ եւ ներողամիտ էր ընկերներու, մասնաւորապէս երիտասարդ ընկերներու առօրեայ սխալների եւ սայթաքումների հանդէպ, նոյնքան անհաշտ ու աններող էր, երբ խնդիրը կը վերաբերէր յեղափոխական վարիչներին։ Այդտեղ նա կը պահանջէր յեղափոխական էթիքայի ամբողջական, ամենախիստ կիրառումը. այդտեղ նա անողոք էր եւ անդրդուելի։ Արփիարը նրա աչքում վերջնական դատապարտեալ էր։ Արփիարի մասին նա իր կարծիքը կազմել էր արդէն վերը յիշած մեղայականէն յետոյ, որ Հայրենիքի* (նախկին, պոլսական) *խմբագիրը ուղղել էր Թիւրք կառավարութեանը իր բանտէն արձակուելու առթիւ։ Եւ այդ կարծիքը վերջնականապէս հաստատուեց նրա մէջ, երբ Դրօշակում հանգուցեալ Վռամեանի ձեռքով հրատարակուեց ընդարձակ ամբաստանագիրը Արփիարեանի մասին։*[73]

Վարանդեան չի հաստատեր իր անձնական հաւանութիւնը Միքայէլեանի կարծիքին նկատմամբ։ Ան կ'աւելցնէ.

*Այսպէս թէ այնպէս, կասկածի ու ծանր գաղտասունքների մի մթնոլորտ էր ստեղծուած այդ մարդու շուրջը... Արփիարը մեծագոյն խոչընդոտներէն մինն էր համերաշխութեան ճամբու վրայ եւ նա պէտք է իսպառ հեռացուէր յեղափոխական շրջաններէն։*

*Այդ պահանջը միանգամայն արդար էր եւ բանաւոր։ Այդտեղ՝ ոչ մի տարակուսանք եւ*

*ոչ մի տարաձայնութիւն մեր ընկերների մէջ:*[74]

Վարանդեան ըսել կ'ուզէ՝ թէ կարելի չէ բանակցիլ մարդու մը հետ, որուն շուրջ ստեղծուած է կասկածի եւ անվստահութեան մթնոլորտ։ Բայց, նոյնպէս կարելի չէ զայն դաւաճան հռչակել, եւ մանաւանդ՝ սպաննել, առանց յստակ փաստերու.

*Սակայն, նոյնքան արդար ու բանաւոր չէր երեւար միւս ձեւակերպութիւնը՝ «Արփիար դաւաճան է, մահուան պատժի արժանի եւ ոչ պատւոյ ատեանի...»*

*Այդտեղ է, որ ես ցաւ ունեցայ, իբրեւ կրտսեր ու խոնարհ ընկեր, իբրեւ սիրող աշակերտ, ընդհարուելու Քրիստափորի հետ, ինչպէս նաեւ Իսուփեանի ու Վռամեանի հետ:*[75]

Վարանդեան աւելի եւս կը յստակեցնէ իր մօտեցումը Արփիարեանի դաւաճանումի խնդիրին կապակցութեամբ.

*Հնարաւոր է, որ չէր սխալւում Քրիստափորը, որ չէին սխալւում Իսուփեանը, Վռամեանը եւ Պոլսոյ մեր Կ. Կ.ի միւս անդամները, հնարաւոր է, որ Արփիարը իրօք դաւաճան էր, լրտես էր, մատնիչ էր, արժանի միայն յեղափոխական վրիժառու գնդակի եւ անարժան պատւոյ ատեանի... Հնարաւորութենէն մինչեւ իրականութիւնը – տարածութիւն կայ: Արփիար կարող էր իր բնածին թուլամորթութեամբ, իր անսկզբունք նկարագրի եւ իր անսահման, հայկական կրքի զօրութեամբ, այս կամ այն յանցաւոր վրիպումը գործել... սակայն Իսուփեանի, Վռամեանի բազմաթիւ վկայութիւններն ու բացատրութիւնները բաւականաչափ համոզիչ չէին եւ դժուար էր միմիայն նրանց վրայ յենուելով՝ հայ սերունդներու առջեւ յաւիտենական անարգանքի ենթարկել մի անուանի գրողի ու հասարակական գործիչի, առանց գէթ նրա ինքնարդարացման խօսքը լսելու. դժուար էր հայրենավաճառ եւ հայրենադաւ լրտեսի ու մատնիչի անունը դրոշմել մի մարդու ճակտին, որ ամբողջ կեանքը սպասաւորել էր հայրենիքին, արտակարգ եռանդով ու տաղանդով, իբրեւ գրող ու հրապարակագիր, իբրեւ աշխատակից Մշակի ու այլ թերթերի, իբրեւ կազմակերպիչ հայրենանուէր ընկերութեանց, դեռ 70-ական թուականներէն, հանդիսանալով թիւրքահայ վերածնութեան ու հայկական դատի ամենախանդավառ ռահվիրաներէն մին:*[76]

Վարանդեան կը ներկայանայ զիջողական համոզումներով, որ կը ներկայացնէ Դաշնակցութեան ներքին կարեւոր շերտաւորում մը։

Վահան Թէքէեան 1931-ին կը վերյիշէ 1908-ի ատենները ունեցած կարճ հանդիպում մը Մելքոն Կիւրճեանի հետ Պոլսոյ մէջ։ Կիւրճեան անզիջող մըն էր Արփիարեանի դաւաճանութիւնը «փաստելու» եւ հարցաքննութեան «փաստաթուղթեր»-ը հայթայթելու առնչութեամբ։ Սակայն, կը թուի, գոնէ սպանութեան առումով համաձայն չէր Դաշնակցութեան հետ.

*Երբ Օսմ. Սահմանադրութենէն ետք Պոլսոյ մէջ առաջին անգամ հանդիպեցայ Մելքոն Կիւրճեանին (որ ուսուցիչս եղած էր Կեդրոնականի մէջ), բնականաբար պաղութեամբ ընդունեցայ իր սրտագեղումը: Ասոր վրայ, կ'երեւի սառոյցը կոտրելու համար, անիկա անխոհեմութիւնը ունեցաւ ըսելու՝ կիչելով Եգիպտոսէն դառնալս եւ վեց ամիս առաջ* [1908 Փետրուարին, Հ.Ա.] *Արփիարի հոն սպաննուիլը.*

*- Տօ՛, Վահա՛ն, ի՞նչպէս սպաննեցիք Արփիարի պէս մարդը...*

*Որուն պատասխանեցի.*

*- Չէ՞ որ Պոլսոյ մահափորձէն ետք՝ արդէն տասներկու տարի ձրի ապրեցաւ ան...:*

*Եւ Կիւրճեան, շփոթելով ու տժգունելով, հազիւ կրցաւ կակազել.*

*- Ճիշդ է... Ես այն ատեն ալ հակառակ էի... Սխալ մըն էր որ կատարուեցաւ:*[77]

1901-ին կուսակցական գործունէութենէ հեռանալէ ետք, Արփիարեանի հանդէպ Դաշնակցութեան «վրիժառական» վերաբերմունքը աստիճանաբար կը մարի, ինչպէս կ'ըսէ Վարանդեան.

*Կարծէք, կետագայում, Դաշնակցութեան վարիչ շրջաններու մէջ հետզհետէ թուլացաւ նախկին համոզումը Արփիարի դաւաճանութեան մասին... Մեր շարքերը հանգիստ ձգեցին այդ մարդուն, մինչ յայտնի է որ Դաշնակցութիւնը սովորութիւն ունէր հետապնդելու դաւաճաններին անողոք վրէժխնդրութեամբ մինչեւ գերեզման...:*[78]

Թէքէեան եւս 1931-ին նոյն կարծիքը պիտի արձանագրէր.

*Արփիար Արփիարեան մատնի՞չ...: Այս տխմար ու զզուելի զրպարտութիւնը դաշնակցականներ, դաշնակցական Բիւրօ մը բրած էին երեսուն եւ հինգ տարի առաջ ու զղջալով լքած էին: Այո՛, զղջալով լքած: Մոռցնել ջանացած: Պատասխանատու դաշնակցականներ իրեն բարեկամ եղած Եգիպտոսի մէջ, իր դագաղը* [1908-ին] *ուսերնուն վրայ կրած էին:*[79]

Դաշնակցականները կը փորձեն մոռցնել արփիարեանական դաւաճանութեան տարիները, գոնէ մինչեւ 1931, երբ անսպասելիօրէն Սիմոն Վրացեան *Հայրենիք*ի մէջ յօդուած մը կը ստորագրէ ճիշդ *Դրօշակ*ի 1899 Նոյեմբեր-Դեկտեմբեր 15-ի Ցաւելուածի ոճով:[80] Յօդուածը, կը թուի ըլլալ անզիջող թեւի նոր, բայց խիստ ժամանակաւոր, փորձ մը:

## 5. ՄԱՀԱՓՈՐՁԻՆ ԴՐԴԱՊԱՏՃԱՌՆԵՐԸ

Ինչպէս վերը տեսանք, 1895 Նոյեմբեր 13/25-ին, Պոլսոյ Դաշնակցութեան Կեդրոնական Կօմիտէն նամակ մը կ'ուղարկէ *Արեւելք*, *Հայրենիք* եւ *Ճէրիտէի*

*շարգիէ* լրագիրներուն, ուր անոնց կ'ուղղէ ահռելի մեղադրանքներ իբրեւ ազգակործան գոյութիւններ՝ որոնք չեն ծառայեր մամուլի բարձր կոչումին, դարձած են կառավարութեան անարգ գործիք, կը վնասեն հայկական դատին ու կը խեղդեն զայն, սուլթանական ստայօդ պաշտօնական զեկուցումներն ու թելադրուած յօդուածները հրատարակելով կը մոլորեցնեն ու կը խաբեն հայ ժողովուրդը եւ բռնած են հայութեան համար արատաւոր ու դաւաճան ընթացք:

Հիմնուելով այս մեղադրանքներուն վրայ, նամակը կը հրամայէ (կ'որոշէ) Նոյեմբեր 14/26-էն սկսեալ դադրեցնել երեք լրագիրներուն լոյս ընծայումը եւ սպաննել (մահով պատժել) այն տնօրէններն ու խմբագիրները, որոնք կը համարձակին հակառակիլ այս հրամանին (որոշումին) կամ կառավարութեան յանձնելով նամակը՝ կը դիմեն անոր օգնութեան:[81]

Այս սպառնալիքները կը հաստատէ *Հայրենիք*ի տնօրէն ու արտօնատէր Յովհաննէս Շահնազար՝ Արփիարեանի մահափորձին յաջորդող յօդուածին մէջ.

*Իրաւ է թէ վերջերս, ստացանք նամակներ, որոնցմով հրաւիրուած էինք, մահուան սպառնալիքի ներքեւ, ա՛լ եւս չհրատարակել Պաշտօնական Զեկուցումները:*[82]

*Արեւելք* եւ *Ճէրիտէի շարգիէ* կ'ենթարկուին Դաշնակցութեան հրամանին ու ժամանակաւորապէս կը փակեն լրագիրները, մինչ *Հայրենիք* կը մերժէ: Դաշնակցութիւնը այս մերժումին գլխաւոր աղբիւրը կը նկատէ Արփիարեան՝ որ իբր ծաղրեց ու «թշնամանեց» Դաշնակցութիւնը եւ միւս երկու լրագիրներու խմբագրութիւններուն յորդորեց հետեւիլ իր ընթացքին:[83] Ըստ Դաշնակցութեան պաշտօնական վճիռին, իր այս քայլով Արփիարեան կը ջանադրէր Դաշնակցութեան կօմիտէի որոշումները: Բայց վճիռին տեղեկագիրը այստեղ կանգ չ'առներ: Ան կ'աւելցնէ՝ որ Արփիարեան ամբաստանուած է նաեւ մէկէ աւելի ծանր յեղափոխական յանցանքներու մէջ եւ բազմաթիւ հայեր մատնած է Նազըմին, ամբաստանութիւններ՝ որոնք ոչ մէկ կապ ունին լրագիրներուն ուղարկուած նամակներուն հետ, բայց շատ կարեւոր են արդարացնելու համար 1895 Նոյեմբեր 23 / Դեկտեմբեր 5-ին արձակուած «պաշտօնական» վճիռը Արփիարեանի սպանութեան վերաբերեալ:[84]

Միհրան Տամատեան իր յուշագրութեան մէջ կը բացատրէ.

*[Ե]րբ օր մը դաշնակցականները սպառնագրով պահանջեցին Պոլսոյ հայ թերթերէն չհրատարակել թուրք կառավարութեան պաշտօնական յայտարարութիւնները («չնորհիւ վեհ. Սուլթանին՝ Կարնոյ, Վանայ... եւն., վիլայէթներուն մէջ անդորրութիւնը կատարեալ է – ապայիչ պէրքէմալ տըր»), - պահանջ մը որուն համակերպութիւնը պիտի յանգէր բոլոր հայ թերթերուն դադարումին, - Արփիար առաջինը եղաւ այդ անգործադրելի պահանջին դէմ ծառացող եւ անվրդով հրատարակեց պետական պաշտօնական յայտարարութիւնը, մինչ ուրիշ հայ թերթեր՝ սպառնալիքին սարսափէն շուարած՝ ոմանք մեքենայի խանգարում,*

*ումանք տօն պատրուակելով օր մը չհրատարակեցին իրենց թերթերը, եւ յաջորդ օրը քաջալերուած Արփիարի բռնած դիրքէն՝ հետեւեցան անոր օրինակին: Դաշնակցութեան պատգամը արհամարհուած էր. այն օրէն վճռուած էր Արփիարի դէմ տեռորը:*[85]

Տամատեան կը շեշտէ էական կէտ մը, որ կարեւոր սկիզբ մըն է կատարուած դէպքերուն ենթախորքը հասկնալու համար: Ան յստակօրէն կը նշէ՝ թէ կառավարութեան պաշտօնական յայտարարութիւնները չհրատարակելու պարագային, գրաքննչութիւնը պիտի դադրեցնէր թերթերուն հրատարակութիւնը: Այս յայտարարութիւնները այն գլխաւոր յենակներն էին, որոնց կը կառչէին հայ խմբագիրները թերթերու հրատարակութիւնը ապահովելու համար: Սպառնացողները չէին կրնար չգիտնալ այս կէտը: Անոնք շատ լաւ գիտէին այս կէտը: Չյայտարարուած պատճառներ կային սպառնալիքներուն համար:

Վահան Թէքէեան Քրիստափոր Միքայէլեանի կողմէ անհատական շահագրգռուածութիւն մը կը տեսնէ մահափորձին մէջ: Իր կարծիքը կը հիմնէ Վարանդեանի, Վրացեանի եւ Միքայէլեանի գրութիւններու բնագրային ընթերցումներու վրայ:

Նսեմացուցած չըլլալու համար Թէքէեանի մտածողութեան մանրամասնութիւնները, կը քաղեմ յօդուածի այդ հատուածը ամբողջութեամբ: Բայց մինչ այդ, Թէքէեանի յօդուածին մէջ ակնարկուող անձերուն մասին որոշ յստակեցում մը մտցնելու համար, կրկնելով շեշտեմ՝ որ Դաշնակցութեան զիջող թեւի ներկայացուցիչ Միքայէլ Վարանդեան, 1924-ին *Հայրենիք*ի մէջ յօդուածաշար մը կը գրէ Քրիստափոր Միքայէլեանին մասին, ուր չ'ուզեր ընդունիլ Արփիարեանի մատնիչ ըլլալու ամբաստանութիւնը եւ այս առումով կը յայտնէ իր տարաձայնութիւնը Միքայէլեանի հետ:[86] Եօթը տարի ետք՝ 1931-ին, Դաշնակցութեան անզիջող թեւի ներկայացուցիչ Սիմոն Վրացեան, նոյն *Հայրենիք*ի մէջ խստաբարոյ յօդուած մը կը գրէ Արփիարեանի դէմ, վերականգնելով 1899-ի *Դրօշակ*ի Յաւելուածի ամբաստանութիւններուն չհիմնաւորուած տարափը:[87] Թէքէեանի յօդուածը պատասխան մըն է Վրացեանին եւ իր ամբողջ քաղուածքներն ու ընթերցումները հիմնուած են Վրացեանի տեղեկութիւններուն վրայ (Թէքէեան չէ տեսած Վարանդեանի յօդուածը, այլ անոր խօսքերը կարդացած է Վրացեանի մէջբերումներուն ընդմէջէն): Այսպէս, Թէքէեան կը մեկնաբանէ.

*Վարանդեան գրեր է Հայրենիքի մէջ*, 1924-*ին. «... Իսուֆեանի, Վռամեանի բազմաթիւ վկայութիւնները բաւականաչափ համոզիչ չէին եւ դժուար էր միմիայն նրանց վրայ յենուելով՝ հայ սերունդներու առջեւ յաւիտենական անարգանքի ենթարկել մի անուանի գրողի ու հասարակական գործիչի, առանց գէթ նրա ինքնարդարացման խօսքը լսելու. դժուար էր հայրենավաճառ ու հայրենադաւ լրտեսի ու մատնիչի անունը դրոշմել մի մարդու ճակտին, որ ամբողջ կեանքը սպասաւորել էր հայրենիքին, արտակարգ եռանդով ու տաղանդով...»: Իսկ Վրացեան կ'ըսէ. «Ինքնարդարացման խօսքի հնարաւորութիւնը Արփիարեանը*

*ունեցաւ լայնօրէն, բայց, ինչպէս ասացինք, նա այդ հնարաւորութիւնը այնպէս չօգտագործեց, որ իր դատի շուրջ եղած կասկածները փարատէին»: Ու ապաստանելով հանգուցեալ Քրիստափոր Միքայէլեանի ետին, Վրացեան կ'աւելցնէ. «Այդ պատճառով, այնպիսի մի խորաթափանց եւ անաչառ միտք, որպիսին էր Քրիստափոր Միքայէլեանը, չկարողացաւ համոզուել, որ Արփիարեանը մաքուր է, ու չըմբռնեց ներողամտութեան մտայնութիւնը հանդէպ Արփիարեանի»:*

*Իսկ այս խնդրոյն մէջ Քրիստափորի ի յայտ բերած «խորաթափանց եւ անաչառ» մտքին որպէս ապացոյց է անշուշտ, որ Վրացեան կ'արտատպէ անոր Վարանդեանի դրած նամակիս սա՛ հատուածը.*

*«Դու պատրաստ ես այսօր մեղադրել Բաբգէնին, Գնունուն, Սուրէնին, Իւսուֆեանին եւ Վահապին (Վռամեան) եւ արդարացնել մի Շահնազար, մի Հայրենիք, որը ամենայն օր, երբ Հայաստանում արիւն էր թափւում, երբ տասնեակ հազարներով հայեր էին կոտորւում, կառավարութեան պահանջման ենթարկուելով, սիստեմատիքաբար հրատարակում էր, որ հէնց կոտորածների տեղերում ամէն բան հանգիստ է եւ կայսերական կառավարութեան շնորհիւ ամէն բան ցանկալի վիճակն ունի»:*

*Թէ ի՛նչ կապ կայ այդ կառավարական զեկոյցներու բռնադատեալ հրատարակութեան եւ Արփիարը «մատնիչ»-ի ամբաստանութեան դէմ պաշտպանելուն միջեւ, թո՛ղ ըսեն անոնք որ կը հասկնան...: Բայց ասով միայն չի գոհանար Վրացեան եւ մէջ կը բերէ ուրիշ հատուած մը Քրիստափորի նոյն կամ ուրիշ նամակէն.- Արփիարը պաշտպանողները կ'առարկեն եղեր թէ Թիւթիւնճիէֆն է Դաշնակցութեան տուած Արփիարի հարցաքննութիւնը. ասոր է որ կը պատասխանէ Քրիստափոր. «Որքան ինձ գոնէ յայտնի է, մերոնք այդ թուղթը ստացել են Գիւրջեանէն (Մելքոն Կիւրճեան) եւ ոչ ոք իրենցից որեւէ յարաբերութիւնների մէջ չէ եղել Թիւթիւնջիեւի հետ, իսկ թէ ինչքան մօտ է եղել գործին Գիւրջեանը, այդ էլ Յաւելուածի մի կէտում պարզուած է:»*

*Ահա՛ պատասխան եւ ահա՛ փաստ, զոր կը գործածէ Վրացեան՝ լաւագոյնը չունենալուն համար հարկաւ, եւ միմիայն այն պատճառաւ՝ որ Քրիստափորն է անոր հեղինակը: Իսկ անո՛նք որ դաշնակցական չըլլալով պարտաւոր չեն Քրիստափոր Միքայէլեանի ամէն մէկ գիրն ու գործը սրբութիւն համարելու, պիտի խորհին թէ տկար է Բիւրօյի ամենազօր անդամին տրամաբանութիւնը այստեղ եւ նոյն իսկ պիտի ըսեն, քիչ մը աւելի խորացնելով խնդիրը, թէ հնչակեան պարագլուխ Արփիարեանի վարկաբեկումին մէջ շահագրգռուած է, դաշնակցական պարագլուխ Միքայէլեանը...:*[88]

Ասիկա դարձեալ կը մօտենայ վերը արտայայտած գաղափարիս՝ թէ արփիարեանական գործարքը կատարուած է Դաշնակցութեան անզիջող թեւի գործադրութեամբ, մինդեռ զիջող թեւը մնացած է խիստ վերապահ կամ պարզապէս անտեղեակ:

Առերեւոյթ դէպքերէն անդին հասնող հրաշալի ընթերցուածք մը ունի Երուանդ Օտեան, որ կ'ուզէ հասնիլ թերթերուն ուղղուած ապառնալիքներուն եւ ապա մահափորձին խորքային դրդապատճառներուն.

*Ի՞նչ էր Արփիարեանի դէմ այս կատաղի հալածանքին պատճառը: Կարելի է ըսել որ մէկէ աւելի պատճառներ կային: Նախ՝ Արփիարեան այդ թուականին* [իմա՝ 1895-ին, Հ.Ա.] *բացառիկ դիրք մը կը վայելէր յեղափոխական շարժումին գլուխը: Նմանը չտեսնուած ժողովրդական թերթի մը՝ Հայրենիքի՝ խմբագրապետն էր, Հնչակեան Պոլսոյ կեդրոնին անդամ էր, Մշակի եւ Հնչակի թղթակիցն էր, երկու թերթեր որոնք մեծ ազդեցութիւն ունէին յեղափոխական շրջանակներու մէջ:*

*Արփիարեանի այս առաւելակշռութիւնն ու հեղինակութիւնը բնականաբար արգելք մըն էր Դաշնակցութեան համար, որ չէր կրնար իր դիրքը զօրացնել այսպիսի հակառակորդի մը հանդէպ: Նոյն թուականին Պոլսոյ Դաշնակցական ներկայացուցիչը կամ պետն էր Իսիւֆեան, եւ ինքն էր որ սկսաւ Հայրենիքի ու Արփիարեանի դէմ պայքարը: Եւ սակայն Իսիւֆեան մտերիմ բարեկամն ու խորհրդակիցն էր Արփիարեանի՝ մինչեւ որոշ թուական մը, կամ՝ աւելի ճիշդը՝ մինչեւ այն օրն ուր զգաց թէ Արփիարեան զինքն ու իր ընկերները կը խաբէր:*

*Ուղղամտութիւնը կը պակսէր Արփիարեանի քով, եւ այս եղած էր իր դէմ ցցուած հակառակութիւններուն գլխաւոր պատճառը: Կատարեալ էնթրիկան մը եղած է ամբողջ կեանքին մէջ. Ու ասիկա ինքն ալ կը խոստովանէր: Եւ իր նկարագրին այդ խաթարումը գրեթէ բնազդական էր իր մէջը: Էնթրիկ կ'ընէր միմիայն էնթրիկի սիրոյն համար, առանց կարեւոր հարկի, առանց շահու կամ յաջողութեան ակնկալութեան: Դիմացինը խաղի բերել՝ իր գերագոյն հաճոյքն էր, հոգեկան մէկ պէտքը:*

*Այսպէս՝ երկար ատեն՝ Իսիւֆեանէն ծածկած էր իր Հնչակեան ըլլալ, Դաշնակցութեան համակիր ձեւացած էր ու անոնց ծրագիրներուն հաղորդակից եղած էր՝ զանոնք Հնչակեան շահերուն գործածելու համար: Իր այս ընթացքը, երբոր ի վերջոյ երեւան ելաւ, բնականաբար բուռն զայրոյթ յառաջ բերաւ Դաշնակցականներուն մէջ իրեն՝ եւ միեւնոյն ժամանակ Հայրենիքի հանդէպ:*

*Առաջ, ընդհակառակը, Հայրենիք Դաշնակցութեան համակրանքը կը վայելէր եւ իր մշտակայ աշխատակիցներէն մին էր Օննիկ Դերձակեան (այժմ Ա. Վռամեան), որ* Օ. Գ. Դ. *ստորագրութեամբ այնքա՜ն գեղեցիկ գրութիւններ ունի առաջին տարիներու Հայրենիք-ներուն մէջ:*

*Դերձակեան՝ բացի իր այս գրական աշխատակցութենէն՝ մտերիմ բարեկամն էր Ար-փիարեանի եւ յաճախ կուգար խմբագրատուն, ուր իրեն հետ գլուխ գլխի կը խորհրդակցէր: Սիրուն, խանդավառ պատանի մըն էր այն ատեն, անպեխ ու անմօրուս, միշտ ծայրայե-ղութիւններու կողմնակից: Ղալաթիոյ Ռուսական թղթատան մէջ պաշտօնեայ էր եւ իր այս հանգամանքէն շատ կ'օգտուէին թէ Դաշնակցական եւ թէ Հնչակեան կուսակցութիւնները իրենց թղթակցութեանց համար:*

95 *Յունիսի Պապը Ալիի ցոյցէն ետքն էր որ Դաշնակցութեան հակառակութիւնը սկսաւ Արփիարեանի դէմ: Այդ ցոյցը, ինչպէս յայտնի է, միմիայն Հնչակեան կուսակցութիւնը կազմակերպած էր, իբր թէ կառավարութեան վրայ ճնշելու եւ Հայաստանի բարենորոգմանց ծրագրին գործադրութիւնը փութացնելու համար եւ որ ուրիշ արդիւնք չունեցաւ այլ եթէ ընդհանուր ջարդերը յառաջ բերել: Այդ ցոյցին յաջորդեց ժողովրդին եկեղեցիներու մէջ հաւաքուիլը, խանութներու փակումը եւն., որոնց ամէնքն ալ Հնչակեան վարիչներու*

խորհրդովը եղաւ:

Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցին, ուր հազարէ աւելի անձ ժողվուած էր, գլխաւոր կեդրոնն էր Հնչակեան գործունէութեան, Ալիքսան Արզուեան (Վահէ), Սարգիս Սիւնկիւճեան (այժմ Սարգիս Սուին), Գեղամ Պարսամեան, եւն. վերջապէս Հնչակեան գործադիր ժողովի անդամները հոն էին:

Կային նաեւ Դաշնակցականներ, որոնք անհատապէս եկած միացած էին Հնչակեան-ներուն:

Տօքթ. Ն. Տաղաւարեան, որ այդ թուականին թունդ Դաշնակցական էր, յաճախ կը մտնէր կ'ելլէր եկեղեցին՝ խրախուսելով հոն գտնուողները, որոնք վայրկեանէ վայրկեան անգղիա-կան նաւատորմին Տարտանելէն ներս մտնելուն կը սպասէին եւ իրենց ջղագրգռութիւնը այն աստիճանի հասած էր որ շատեր թնդանօթի ձայն կը լսէին ատեն ատեն:

Երբ դեսպանական միջամտութեամբ ժողովուրդը թողուց եկեղեցիները, երբ խանութները վերաբացուեցան եւ երբ առերեւոյթ հանդարտութիւն մը տիրեց, այն ատեն Դաշնակցական քոմիթէն սպառնագրերով պահանջեց որ Հայերէն թերթերը ինքնաբերաբար դադրին կառա-վարութեան դէմ ցոյց մը ըրած ըլլալու համար:

Այդպիսի ցոյց մը թէ՛ անիմաստ ու ապարդիւն պիտի ըլլար եւ թէ միանգամայն այդպիսի տագնապալից ժամանակ մը պիտի վտանգէր թերթերու արտօնատէրներն ու խմբագիրները, որոնք կառավարութեան կողմէ իբրեւ յայտնի յեղափոխականներ պիտի նկատուէին:

*Հայրենիք*, *Արեւելք* եւ *Ճէրիտէի շարքիէ* հաւասարապէս ստացան այդ կարմիր կնիքով նամակները: *Արեւելք* եւ *Ճէրիտէ* իրար անցան եւ Զարեհ Եուսուֆեան, Բիւզանդ Քէչեան ու Տիգրան Ճիվէլէկեան փութացին մեզի մօտ հասկնալու համար թէ մենք ի՛նչ պիտի ընէինք, որպէս զի իրենք ալ մեր օրինակին հետեւէին: Բնականաբար ամէնքն ալ այդպիսի անխոր-հուրդ ցոյցի մը հակառակ էին եւ կը զգային թէ ի՞նչ փորձանքներ կրնար ստեղծել իրենց գլխին, բայց միւս կողմէ կարմիր կնիքը կար որ այդ թուականներուն մոգական ազդեցութիւն մը կ'ընէր ամենուն վրայ:

Յովհաննէս Շահնազար եւ Արփիար Արփիարեան բացարձակ կերպով յայտարարեցին թէ այս սպառնալիքին առջեւ տեղի չպիտի տային եւ *Հայրենիքի* հրատարակութիւնը պիտի շարունակէին եւ խորհուրդ տուին միւսներուն իրենց օրինակին հետեւելու:

Արփիար արդէն հասկցած էր թէ Դաշնակցական ծրագիրը հայ թերթերը դադրեցնելու մասին, պարզապէս իրեն դէմ ուղղուած միջոց մըն էր եւ եթէ երբեք Դաշնակցութիւնը իր սպառնալիքը ի գործ դնէր՝ մահափորձը միմիայն իր դէմ պիտի կատարուէր: Այս կէտն ալ բացատրեց երկու թերթերու արտօնատէրներուն՝ զանոնք ապահովցնելու համար, որով-հետեւ պէտք է ըսել, մանաւանդ Զարեհ Եուսուֆեան չափազանց խռոված էր կարմիր կնիքով նամակէն:

Դաշնակցութիւնը տեսնելով որ իր սպառնալիքը ապարդիւն մնաց եւ իրաւամբ որ գլխաւոր պատճառը *Հայրենիքն* էր, երկրորդ անգամ սպառնագրեր ուղղեց ո՛չ թէ *Հայրենիքի* տնօրէնութեան՝ այլ անհատապէս Շահնազարին, Արփիարին, Լեւոն Բաշալեանին եւ ինծի:

Ասոր վրայ Շահնազար որոշեց Եուսուֆեանը տեսնել եւ հետը անձամբ բացատրութիւն մը ունենալ եւ ինծի առաջարկեց որ իրեն ընկերանամ:

*Միասին գացինք Թէփէ Պաշի, Թօմայի կաթնավաճառատան դէմ գտնուած յոյնի մը տունը, ուր Եուսուֆեան սենեակ մը վարձած էր։*

*Խօսակցութիւնը բաւական բուռն եղաւ։ Իւսուֆեան կը պնդէր թէ թերթերը հարկ էր դադրեցնել, եթէ ատոր համար նոյն իսկ արտօնատէր ու խմբագիր բանտի ու աքսորի դատապարտուէին։ Շահնազար կ՚առարկէր թէ Հայրենիք իր հրատարակումով աւելի օգտակար կ՚ըլլար յեղափոխութեան՝ քան իր դադարումովը ո եւ է կերպով չէր կրնար ազդել կառավարութեան վրայ։ Խօսակցութիւնը, ինչպէս ըսի, բաւական բուռն էր եւ յաճախ կռիւի ձեւ կ՚առնէր ու ես կը ջանայի երկու դիւրագրգիռ խօսակիցները հանդարտութեան հրաւիրելու։*

*Ի վերջոյ անկարելի եղաւ իրարու խօսք հասկնալ եւ Շահնազար՝ բարկացած՝ ոտքի ելաւ ու մեկնեցանք։*

*Փոխանակուած խօսքերը բառ առ բառ չեմ յիշեր, բայց կրնամ հաստատել թէ երբեք Շահնազար չսպառնաց Իւսուֆեանի զինքը մատնել, ինչպէս կը պատմէր, տարիներ ետքը, Ամերիկեան հայ թերթ մը Շահնազարը մրոտելու դիտաւորութեամբ։*

*- Քեզ Պոլսէն հեռացնել կուտամ, ըսաւ Շահնազար միջոց մը։*

*Բայց այս սպառնալիքը որ պատասխան մըն էր Իւսուֆեանի «ձեզ կը զարնենք»-ին, չէր նշանակեր թէ Շահնազար մտքէն անցուցած էր Իւսուֆեանը մատնելու։ Շահնազար պարզապէս սպառնալիքի դէմ սպառնալիք մը կ՚ընէր, հասկցնելով որ եթէ Դաշնակցութիւնը ծայրայեղութիւններու դիմէ՝ Հնչակեանները կրնան նոյն կերպով պատասխանել, մանաւանդ որ այդ միջոցին այս վերջին կուսակցութիւնը շատ աւելի զօրաւոր կազմակերպութիւն մը ունէր Պոլսոյ մէջ։*

*Եւ Շահնազարի խօսքը այդ կերպով ըմբռնեց արդէն Իւսուֆեան։*

*Այդ տեսակցութենէն ի վեր առաջին անգամ ըլլալով Իւսուֆեանը տեսայ վերջին պատրիարքական ընտրութեան օրը, Գումգաբուի Մայր եկեղեցին։ Կովկասէն կուգար Եւրոպա երթալու համար, ուր ականջի վիրաբուժական գործողութիւն մը պիտի կրէր։ Բարեկամաբար տեսնուեցանք իրարու հետ, բայց միջոց չեղաւ իրեն հարցնելու թէ արդեօք ամերիկեան հայ թերթին պատմութիւնը իր գիտակցութեա՞մբը գրուած է։*

*Իրողութիւնը խեղաթիւրել մարդ մը ազատելու համար՝ կարծեմ շատ ստորին միջոց մըն է, որ ափսո՜ս, անխղճահարութեամբ ի գործ կը դրուի յաճախ մեր յեղափոխական մամուլին մէջ։*

*Այդ տեսակցութենէն ետքն էր որ Արփիար դաշունահար եղաւ Թագսիմի ճամբուն վրայ։*[89]

Օտեան այստեղ կը բացայայտէ անհատական (Եուսուֆեան) եւ կուսակցական (Դաշնակցութիւն) նախաձեռնութեան խառնուրդ մը։ Շնորհիւ իր վայելած ժողովրդականութեան եւ ունեցած ուժին, Արփիարեան կը հանդիսանար ամբողջ սպառնալիքներուն կեդրոնը։

Սպառնալիքները կը պահանջէին երեք թերթերուն փակումը։ Ճիշդ այդ էր որ բաղձային Օսմանեան իշխանութիւնները։ Իրենց փափաքն էր տեսնել յառաջադէմ հայկական թերթերուն փակումը։ Այդպէս ալ եղաւ *Հայրենիք*ի պարագային։ Մահափորձէն երկու օր ետք, Շահնազար յօդուած մը կը գրէ *Հայրենիք*ին մէջ, ուր

կը նկարագրէ Արփիարեանին դէմ եղած մահափորձը, քիչ մը մանրամասն կը ներկայացնէ թերթին ուղարկուած սպառնալիքները՝ առանց անուններ կամ ակնարկումներ նշելու, եւ բնականաբար, կը դատապարտէ ամբողջ գործողութիւնը։[90] *Հայրենիք* կը հրատարակէ թիւ մը եւս՝ 1895 Դեկտեմբեր 28 / 1896 Յունուար 9։ Նոյն օրը, Տպագրական Տեսչութիւնը կը հրամայէ դադրեցնել անոր հրատարակութիւնը, հետեւեալ հրամանագիրով.

*Հայրենիք ղազէթասը թէնպիաթը միւքէրրէրէ խիլաֆընտա օլարագ մուղայիրի ուսուլ վէ նիզամ հարաքէթէ ճիւրաթ էյլէտիկինտէն պու կիւնտէն իթիպարէն թաթիլ գըլընմըշ տըր։*
8/28 *Քեանունի էվվէլ* 1311[91]

Օտեան վստահ է՝ որ դադարումին պատճառը Արփիարեանի մահափորձին նուիրուած Շահնազարի յօդուածն էր, քանի որ նման հրապարակումներ անընդունելի էին այդ ժամանակ.

*Հայրենիք մահափորձը ծանուց Շահնազարի գրչէն ելած հատուածով մը, որ պատճառ եղաւ թերթին անպայման խափանման։ Այդ փոքրիկ հատուածին մէջ, որ թերթին առաջին երեսը երեւցաւ, Շահնազար արդարացնելով հանդերձ յանուն գաղափարի ու յեղափոխութեան կատարուած սպանութիւնները, կը դատապարտէր Արփիարի վրայ կատարուած մահափորձը իբրեւ անհամապատասխան յեղափոխութեան եւ լոկ անձնական հակասութեան արդիւնք։*
*Այդ շրջանին մէջ այսպիսի բան մը գրելու համար Շահնազար մը պէտք է ըլլար։*[92]

Փակուեցաւ թերթ մը՝ ուր համախմբուած էին այդ ժամանակուայ արեւմտահայ միտքի ամենէն յառաջապահ գրիչները։ Սպառնացողները ոչ մէկ ցաւ զգացին *մտաւոր* կորուստին համար։

Շնորհիւ Շահնազարի անձնական ջանքերուն, *Հայրենիք* կը վերաբացուի 1896 Յունիս 10/22-ին, այլեւս կորսնցուցած իր կարեւոր գրողներէն ոմանք (ինչպէս՝ Արփիարեան) եւ մանաւանդ՝ նախկին եռանդը։ Լոյս կը տեսնէ ընդամէնը մէկ ամիս՝ մինչեւ 1896 Յուլիս 11/23։ Ցերեկ մը ոստիկանութենէն կու գան խմբագրատուն եւ Շահնազարը իրենց հետ տանելով կը բանտարկեն։ Կ՚իրականանայ Եուսուֆեանի երկրորդ փափաքը՝ ինչպէս կը պատմէր Օտեան.

*Իւսուֆեան կը պնդէր թէ թերթերը հարկ էր դադրեցնել, եթէ ատոր համար նոյն իսկ արտօնատէր ու խմբագիր բանտի ու աքսորի դատապարտուէին։*

«*Հայրենիք* միշտ կը մնար ամենէն աւելի տարածուած ժողովրդական օրաթերթը», գրած է Օտեան։[93] Քանի մը օրուան ընթացքին այս «ամենէն աւելի»-ն կը հաւասարի զէռոյի։

## 6. ԴԱՒԱՃԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՈՒՄԸ՝ ԻԲՐԵՒ ՄԱՀԱՓՈՐՁԸ ԿԱՐԵԼԻ ԴԱՐՁՆՈՂ ԳՈՐԾՕՆ

Զանգուածային ոչնչացումներ կամ յաջորդական անհատական սպանութիւններ կատարելու համար անհրաժեշտ են պատումներ ու նշանաբաններ:

Արփիարեանի մահափորձը անկարելի պիտի ըլլար առանց դաւաճանութեան պատում-նշանաբանին, որ տարածուած է հայոց պատմութեան մէջ եւ յատուկ նշանակութիւն ստացած 1890-ականներէն սկսեալ:

Դաւաճանութիւնը դիւրութեամբ կը վերածուի գաղափարախօսութեան քանի որ մեծագոյն չարիք մըն է ան, եւ քանի որ կրնայ ծառայել ընտրելախաւի շահերուն, ինչպէս կը բացատրէ մշակութաբան Վարդան Ջալոյեան.

*Դաւաճանութիւնը համարւում է չարիքներից մեծագոյնը: Դաւաճանում են ընդհանուր գործին, համերաշխութեանը, կրօնական, բարոյական, ազգային կամ դասակարգային շահերին: Դաւաճանում են վախկոտութիւնից, շահամոլութիւնից, եսամոլութիւնից դրդուած, լաւագոյն դէպքում՝ մոլորուած են լինում: Բայց ո՞վ է որոշում՝ ի՞նչն է դաւաճանութիւն. այս հարցը պատասխան չունի, ամէն ինչ որոշում է կոնտեքստը: Որոշիչը հասարակական կամ պետական շահն է. իսկ այն, ինչը վնասում է այդ շահին՝ դաւաճանութիւն է:*[94]

Մինչեւ 1895-ի վերջ, իբրեւ դաւաճան կամ մատնիչ հայկական երկու յեղափոխական կուսակցութիւնները մահափորձի ենթարկած կամ սպաննած են հետեւեալ անձերը՝ Տաճատ վարդապետ, Անաստաս, Սուքիաս քահանայ, Խաչիկ Պետրոսեան, Եագուպ Պալապանեան, Տիգրան Ամիրճանեան, Արսէն Թոխմախեան, Խաչատուր Կերեկցեան, Սարկաւագ, Հաճի Կարապետ, Աշըգեան Պատրիարք, Մաքսուտ Սիմօն պէյ, Խաչիկ Բախալեան, Արտաշէս, Հաճի Տիգրան, Մկրտիչ Թիւթիւնճիէֆ, Կարապետ Ոսկերիչեան, Մամբրէ Պէնլեան, Համբարձում Ուղուրլեան, Յակոբ Արապեան, Սենեքերիմ Ուղուրլեան, Յովհաննէս աղա Տէր Պօղոսեան, Սօսունի, Յարութիւն Տէր-Սարգսեան եւ Արփիար Արփիարեան:[95]

Ոչ մէկ առիթով խնդիր բարձրացած է: Դաւաճանութեան գաղափարախօսութիւնը բաւական յաջող գործած է, մանաւանդ որ անձերը չունէին մամուլի պաշտպանութիւնը: Բացառութիւն մը եղաւ Արփիարեանը: Դաւաճանութեան գաղափարը գործեց մասնակիօրէն, քանի որ ենթական հասարակական դէմք մըն էր եւ իր շուրջ ունէր մտաւորական կարեւոր շերտ մը: Բայց, միեւնոյնն է, առանց դաւաճանութեան շուրջ ստեղծուած պատումին, անոր մահափորձը գրեթէ անկարելիութիւն մը պիտի ըլլար:

Ջալոյեան նշած է գաղտնիքի իմաստը դաւաճանութեան մէջ.

*Դաւաճանութիւնը անբացատրելի է, որովհետեւ անսպասելի է: Դաւաճանութիւնը սկսում է դաւաղրութիւնից, հետեւաբար, այն նաեւ գաղտնիք է: Հնարաւոր է, որ եթէ մենք կարողանանք բացայայտել այդ անբացատրելի գաղտնիքը, դաւաճանութիւնը կը դադարի դաւաճանութիւն լինել, իսկ դաւաղրութիւնը ուրուականի նման կը տարրալուծուի եթերի մէջ:*[96]

Արփիարեան մտաւորականներուն եւ հասարակութեան շատ մօտիկ անձնաւորութիւն մըն էր «գաղտնիք» մը ըլլալու համար: Գաղտնիքի համար հեռաւորութիւն մը ու խորհրդաւորութիւն մը պէտք է գոյութիւն ունենայ ենթակային հանդէպ, բան մը՝ որ չկար Արփիարեանի պարագային: Ան ամէն տեղ էր, կանոնաւոր կերպով կ'երեւէր պոլսահայ եւ թիֆլիսահայ ամենատարածուած լրագիրներու էջերուն մէջ՝ *Հայրենիք* եւ *Մշակ*: Հնչակեան Կուսակցութեան համար շատ ծանօթ դէմք մըն էր ան: Եւ ասիկա անկարելի դարձուց դաւաճանական պատկերի ստեղծումը:

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. «Սպանութեան փորձ մը», *Հայրենիք*, օրագիր, Կ. Պոլիս, 27 Դեկտեմբեր 1895 (հ. տ.), 26-րդ տարի, թիւ 1383, էջ 1։

2. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 23 Օգոստոս / 5 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1198, էջ 1-2։ 24 Օգոստոս / 6 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1199, էջ 1-2։

3. «Սպանութեան փորձ մը», *Հայրենիք*, 27 Դեկտեմբեր 1895 (հ. տ.), 26-րդ տարի, թիւ 1383, էջ 1։

4. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 24 Օգոստոս / 6 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1199, էջ 1։

5. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 23 Օգոստոս / 5 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1198, էջ 1։

6. «Սպանութեան փորձ Ա. Արփիարեանի վրայ», *Հնչակ*, Կենտրոնական օրգան Հնչակեան Կուսակցութեան, Լոտոնո, 31 Յունուար 1896, իններորդ տարի, թիւ 2, էջ 16։

7. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Ապրիլ 1899, էջ 3։

8. Անդ, էջ 3։

9. Անդ, էջ 4։

10. Անդ, էջ 4։

11. Անդ, էջ 5։

12. Անդ, էջ 5։

13. Արփիար Արփիարեան, «Կեղծարարները», *Մարտ*, Լոնտոն, 20 Նոյեմբեր 1897, Ա. տարի, թիւ 6, էջ 24։

14. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 29։

15. Անդ, էջ 26։

16. Անդ, էջ 27։

17. Անդ, էջ 26։

18. Անդ, էջ 26։

19. Անդ, էջ 27։

20. Անդ, էջ 27։

21. Անդ, էջ 27-28։

22. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 27 Նոյեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3906, էջ 2։

23. Վահան Թէքէեան, «Մատնութիւն եւ Արփիարեանի «մատնութիւնները»», *Լուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 9 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 506, էջ 1։

24. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 28։

25. Արփիար Արփիարեան, «Կեղծարարութեան գործը», *Մարտ*, Մայիս 1900, Դ. տարի, թիւ 24, էջ 94։

26. Անդ, էջ 94։

27. Ստեփան Շահպազ, *Արփիար Արփիարեան*, Պէյրութ, տպարան Ալթափրէս, 1987, էջ 266։ Քաղուածքը ընդօրինակած եմ Տիգրան Գէորգեանի յօդուածէն՝ «Գաղափարի զոհը՝ Արփիար Արփիարեան», *Հայկազեան հայագիտական հանդէս*, Պէյրութ, ԻԳ.

հատոր, 2003, էջ 38:

28. «Խոստովանութիւն եւ դաւաղրութիւն Մամբրէ վարդապետ Պէնլեանի», *Դրօշակ*, 15 Սեպտեմբեր 1895, թիւ 13, էջ 5:

29. «Հանրածանօթ մատնիչ Մամբրէի զարկումը», *Դրօշակ*, Օգոստոս 1895, թիւ 11, էջ 8: «Դաւաճան Մամբրէ կարգալոյծ վարդապետի դատապարտութեան տեղեկագիրը», *Դրօշակ*, Սեպտեմբեր 1895, թիւ 12, էջ 6-7:

30. «Խոստովանութիւն եւ դաւաղրութիւն Մամբրէ վարդապետ Պէնլեանի», *Դրօշակ*, 15 Սեպտեմբեր 1895, թիւ 13, էջ 5:

31. Անդ, էջ 5-7: *Դրօշակ*, 1 Հոկտեմբեր 1895, թիւ 14, էջ 5-7:

32. Արփիար Արփիարեան, «Կեղծարարները», *Մարտ*, 20 Նոյեմբեր 1897, Ա. տարի, թիւ 6, էջ 24:

33. *Մարտ*, 10 Ապրիլ 1898, Ա. տարի, թիւ 10, էջ 39:

34. Տիգրան Գէորգեան, «Գաղափարի զոհը՝ Արփիար Արփիարեան», *Հայկազեան հայագիտական հանդէս*, Պէյրութ, 2003, ԻԳ. հատոր, էջ 19-20:

35. Մխիթար, «Միութեան խնդիրը», *Հայրենիք*, շաբաթաթերթ, Պոսթոն, 2 Նոյեմբեր 1901, Գ. տարի, թիւ 121, էջ 3:

36. «Մատնիչ վիրաբոյժ Թիւթիւնջեվի զարկումն», *Դրօշակ*, Յուլիս 1895, թիւ 8, էջ 1: «Դաւաճան Մ. Թիւթիւնճիէվի դատապարտութեան տեղեկագիրը», *Դրօշակ*, Յուլիս 1895, թիւ 9, էջ 3: «Բաց նամակ *Հնչակ*ի խմբագրութեան», *Դրօշակ*, Օգոստոս 1895, թիւ 10, էջ 8:

37. «Մահուան պատիժ», *Հնչակ*, Լոնտոն, 30 Յունիս 1895, ութերորդ տարի, թիւ 9, էջ 74: Կացին, «Հանրածանօթ մատնիչ Մկրտիչ Թիւթիւնճիէֆ ծանրապէս վիրաւորուած», *Հնչակ*, 15 Յուլիս 1895, ութերորդ տարի, թիւ 10, էջ 82:

38. Մ. Վարանդեան, «Քրիստափոր Մաքայէլեան», *Հայրենիք*, ամսագիր, Պոսթոն, Յունիս 1924, Բ. տարի, թիւ 8, էջ 135:

39. «Խոստովանութիւն եւ դաւաղրութիւն Մամբրէ վարդապետ Պէնլեանի», *Դրօշակ*, 15 Սեպտեմբեր 1895, թիւ 13, էջ 5:

40. Արփիար Արփիարեան, ««Կոմպրոմիզ»», *Մարտ*, Յունիս 1900, Դ. տարի, թիւ 25, էջ 98:

41. Անդ, էջ 99:

42. Արփիար Արփիարեան, «Կեղծարարութեան գործը», *Մարտ*, Մայիս 1900, Դ. տարի, թիւ 24, էջ 95:

43. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 37:

44. Վարդօ, *Տասը տարի Հայ Յեղ. Դաշնակցութեան մէջ*, Վառնա, Տպարան Արեւելեան, 1906, էջ 9:

45. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 33, 34, 37:

46. Արփիար Արփիարեան, «Կեղծարարները», *Մարտ*, 20 Նոյեմբեր 1897, Ա. տարի, թիւ 6, էջ 23:

47. Անդ, էջ 23:

48. Անդ, էջ 24:

49. Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 33, 34, 35, 36, 37:

50. «Միութեան խնդիրը», *Մարտ*, 20 Յունուար 1898, Ա. տարի, թիւ 8, էջ 31-32:

51. Անդ, էջ 32:

52. Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 25:
53. Երօտ [Երուանդ Օտեան], «Ժամանց. տեսակցութիւն մը Պ. Ճանկիւլեանի հետ», *Նոր կեանք*, Լոնտոն, 1 Սեպտեմբեր 1898, Ա. տարի, թիւ 17, էջ 270:
54. «Յ. Ճանկիւլեան նոր բացուած ծխավաճառանոց», *Շարժում*, լրագիր ազգային, քաղաքական եւ գրական, Վառնա, 27 Նոյեմբեր 1899, Բ. տարի, թիւ 184, էջ 4:
55. Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 33, 34, 37:
56. Անդ, էջ 34:
57. Երուանդ Օտեան, «Գրական յիշատակներ 1894-1914», *Ոստան*, կիսամսեայ պարբերագիր, Պոլիս, 16 Մայիս 1920, Գ. տարի, թիւ 14 (20), էջ 573:
58. Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 25-26:
59. Անդ, էջ 29:
60. *Ապտակ*, երգիծական-քաղաքական հանդէս, Լոնտոն, Փետրուար 1897, երրորդ տարի, թիւ 10, էջ 4:
61. «Վատեր», *Ապտակ*, Փետրուար 1897, երրորդ տարի, թիւ 10, էջ 1:
62. Վարդ-Պատրիկով, *Շարժում*, 1898, թիւ 73: Լրագիրը չկարողանալով ձեռք բերել, քաղուածքը կը կատարեմ *Դրօշակի* Յաւելուածէն, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 34:
63. Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 34:
64. Հ. Եփրեմ Վ. Պօղոսեան, *Տատեան գերդաստանը*, Վիեննա, Մխիթարեան Տպարան, 1968, էջ 190-192:
65. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, 27 Նոյեմբեր 1931, ԺԵ. տարի, թիւ 3906, էջ 2:
66. Անդ, էջ 2:
67. Տիգրան Գէորգեան, նշ. յօդ.ը, էջ 20-21:
68. Յաւելուած *Դրօշակի*, 15 Ապրիլ 1899, էջ 3:
69. Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 28-29:
70. Անդ, էջ 29:
71. Մխիթար, «Միութեան խնդիրը», *Հայրենիք*, շաբաթաթերթ, Պոստոն, 2 Նոյեմբեր 1901, Գ. տարի, թիւ 121, էջ 3:
72. Մ. Վարանդեան, նշ. յօդ.ը, էջ 134:
73. Անդ, էջ 133-134:
74. Անդ, էջ 134:
75. Անդ, էջ 134:
76. Անդ, էջ 135-136:
77. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1931, ԺԵ. տարի, թիւ 3903, էջ 2:
78. Մ. Վարանդեան, նշ. յօդ.ը, էջ 136:
79. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 21 Նոյեմբեր 1931, ԺԵ. տարի, թիւ 3901, էջ 2:
80. Ս. Վրացեան, «Արփիար Արփիարեան (նիւթեր կենսագրութեան համար)», *Հայրենիք*, ամսագիր, Պոստոն, Սեպտեմբեր 1931, Թ. տարի, թիւ 11 (107), էջ 79-95:
81. «Կ. Պոլսի Դաշնակ. Կեդր. Կոմիտէի վճիռը», Յաւելուած *Դրօշակի*, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 28:

82. «Սպանութեան փորձ մը», *Հայրենիք*, օրագիր, Կ. Պոլիս, 27 Դեկտեմբեր 1895 (հ. տ.), 26-րդ տարի, թիւ 1383, էջ 1։

83. «Կ. Պոլսի Դաշնակ. Կեդր. Կոմիտէի վճիռը», Յաւելուած *Դրօշակ*ի, 15 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, էջ 28։

84. Անդ, էջ 28-29։

85. Տիգրան Գէորգեան, նշ. յօդ.ը, էջ 20։

86. Մ. Վարանդեան, նշ. յօդ.ը, էջ 133-136։

87. Սիմոն Վրացեան, նշ-յօդ.ը։

88. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3903, էջ 2։

89. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 23 Օգոստոս / 5 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1198, էջ 1-2։

90. «Սպանութեան փորձ մը», *Հայրենիք*, օրագիր, Կ. Պոլիս, 27 Դեկտեմբեր 1895 (հ. տ.), 26-րդ տարի, թիւ 1383, էջ 1։

91. Յ. Շահնազար, «Կը վերսկսինք», *Հայրենիք*, 10 Յունիս 1896 (հ. տ.), 27-րդ տարի, թիւ 1385, էջ 1։

92. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 24 Օգոստոս / 6 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1199, էջ 1։

93. Երուանդ Օտեան, «Գրական յիշատակներ 1894-1914», *Ոստան*, 16 Յուլիս 1920, Գ. տարի, թիւ 17-18 (23-24), էջ 737։

94. Վարդան Ջալոյեան «Ալմաստի դաւաճանութեան երեք վարկածները կամ դաւաճանութեան յայտնագործութիւնը», *Գրողուցաւ*, 16 Յուլիս 2012, http://groghucav.am/2012/07/16։

95. «Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով 1890-1908», *Ջահակիր*, Յաւելուած ԺԴ., 2018։

96. Վարդան Ջալոյեան, նշ. յօդ.ը։

## Բ.
## ՄԻՋԱՆԿԵԱԼ ՅԱՐՁԱԿՈՒՄ

1897 Մայիսին, Փարիզի մէջ տեղի կ'ունենայ յարձակում մը Արփիարեանի վրայ, զոր բանասէր Տիգրան Գէորգեան կ'անուանէ «միջանկեալ յարձակում», զայն տարբերելու համար յայտնի երեք մահափորձերէն։ Այս տեղեկութեան աղբիւրը 1897 Մայիս 16 թուակիր նամակ մըն է, զոր Արփիարեան Փարիզէն յղած է Լոնտոնի Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան.

*Գիշերը Հայոց վրայ* conférence *մը կար։ Գացի։ Երբ լմնցաւ դուրս ելանք, բակը երկու բարեկամի հետ կը խօսէի, յանկարծ կռնակէս բռունցքի հարուած մը գանկիս իջաւ. կը փախչէր, վազեցի ետեւէն ու գաւազանիս միջոցաւը դաս մը տուի, այնքան ուժգին զարկի գլխուն որ հաստկեկ գաւազանս կոտրեցաւ։ Ուրիշներ ալ վրայ հասան...։ Խնայող չկար։ Ոստիկանութիւնը վրայ հասաւ եւ ստոյգ մահէ փրկեց այդ ողորմելին։*

*Այստեղ գտնուող դաշնակցականները կը պահեն զինքը. զգեստ չիներ են, ու ամէն տեսակ պէտքերը կը հոգան։*[1]

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Նամակը հրատարակած է Ստեփան Շահպազ իր հեղինակած հատորին մէջ՝ *Արփիար Արփիարեան*, Պէյրութ, Տպարան Ալթափրէս, 1987, էջ 78։ Զայն արտատպած է Տիգրան Գէորգեան իր յօդուածին մէջ՝ «Գաղափարի զոհը՝ Արփիար Արփիարեան», *Հայկազեան հայագիտական հանդէս*, Պէյրութ, ԻԳ. հատոր, 2003, էջ 10։ Նամակին քաղուածքը կատարած եմ Գէորգեանի յօդուածէն։

# Գ.
# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՀԱՓՈՐՁ

## 1. ԴԷՊՔԸ

1903 Փետրուար 22-ին (Վարդանանց տօնին), Վենետիկի մէջ հրացանի երկու-երեք հարուածով տեղի կ'ունենայ Արփիարեանի դէմ երկրորդ մահափորձը: Աւաբեկող ձեռքն էր՝ Մարտիրոս Հացագործեան (Էքսէրճեան): Նախաձեռնողը՝ Վահէ Արզուեան:

## 2. ԲՆԱԿՈՒԹԻՒՆ ՎԵՆԵՏԻԿԻ ՄԷՋ

1901-ին, Լոնտոնէն ետք բնակութեան համար Արփիարեան կ'ընտրէ Վենետիկ: Պատանի Արփիարեան շրջանաւարտ էր Մուրատ Ռափայէլեան վարժարանէն եւ արժանացած Ղեւոնդ Ալիշանի համակրութեան ու օրհնութեան: Ան յոյս ունէր իր վերադարձին վերականգնել նախկին յարաբերութիւնները եւ ապահովել գրական գործունէութիւն մը: Բայց այդպէս չեղաւ, «հոն ալ կեանքը փոխուած է», դիտել կու տայ Արփիարեանի անստորագիր կենսագիրը (հաւանաբար՝ Վահան Թէքէեան) եւ կը շարունակէ.

*[Յ]ետին ծայր աղքատութեան հասած Արփիար գուցէ ամենէն շատ տառապած ըլլայ Վենետիկ: Իր եղբօրորդին Պ. Փ[իլիկ] Արփիարեան որ այդ ատեն ուսանող մըն էր դեռ Վենետիկի իտալական վարժարանի մը մէջ եւ որ յաճախ իրեն հետ կ'ապրէր, տխրութեամբ համակուած դեռ կը յուշաբերէ թէ ինչպէս անցուցած է Արփիար նոյն իսկ* 1901 *կաղանդի գիշերը. մէջ բերենք իր խօսքերը.*

*«Կաղանդի գիշերն էր, տուն եկաւ Արփիար. Փիլիկ ըսաւ նա իր սովորական զուարթաբանութեամբ, ամենուն համար կաղանդ է, բայց ինծի ու քեզի համար կաղանդը դեռ եկած չէ, օր մը հարկաւ կուգայ, մի յուսահատիր: Դրամ չունէր, ոչ ինքը, ոչ ես. հաց ալ չունէինք դժբաղդաբար այդ իրիկուն. նախորդ օրերէն մնացած չոր հացի կտորներ գտայ անկիւնէ մը, ջուրը թաթխեցինք եւ երբ կ'ուտէինք, Արփիար յանկարծ պատուհանը բացաւ եւ գիս կանչելով ցոյց տուաւ Վանքը լոյսերու մէջ թաթաղուն եւ ուրախութեան ձայներով արձագանքող: Փիլիկ, տե՛ս, ըսաւ, անոնք ալ կաղանդ կ'ընեն, մենք ալ. ու լուիկ եւ արտասուածոր հացը՝ թաթխուած ջրին մէջ կերանք ու քնացանք:»*

*Աւելի ուշ Արփիար Վենետիկի մէջ Հազիւ արժանացաւ փոքրիկ շնորհքի մը, երբ կարգադրուեցաւ որ իրեն կերակուր տրուի. նա ամէն օր երկու թաս կերակուրի Համար, Ալի Քաումինիէն, որ Վենետիկի մէկ Հեռաւոր ծայրն է, մինչեւ Ռիվա Տէկլի Զիավոնի կ'երթար, յաճախ բռնուելով անձրեւէն եւ ձիւնէն:*[1]

Այս պայմաններուն մէջ է որ 1902 Օգոստոսին կը յաջողի Վենետիկի մէջ լոյս աշխարհ բերել *Հայ հանդէս* կիսամսեակի առաջին թիւը։

## 3. ԱՐՓԻԱՐԵԱՆ-ԱՐԶՈՒԵԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Երբ 1896-ի վերջերը Երուանդ Օտեան մէկ շաբաթով կ'այցելէ Եգիպտոս, Աղեքսանդրիոյ մէջ կը հանդիպի այնտեղ հաստատուած Արզուեանին, որ դժգոհութիւն կը յայտնէ իր կեցութեան պայմաններէն։ Մէկ շաբաթ ետք Օտեանի հետ Արզուեան կը մեկնի եւ բնակութիւն կը հաստատէ Աթէնք։[2]

Օտեան կարեւոր դիտողութիւն մը կ'ընէ, երբ կը գրէ.

*ՎաՀէ Արզուեան այդ թուականին* [իմա՝ 1896-ի վերջերը, Հ.Ա.] *ինքն ալ սկսած էր իր մասնաւոր փոքրիկ խումբը ունենալ, ինչպէս նաեւ կատաղի Հակառակորդներ ու Համակիրներ ալ, այս վերջիններէն էր Արփիար Արփիարեան որ ՎաՀէն կը պաշտպանէր ոգւի ի բուռն:*

*Այդ պաշտպանութիւնը տակաւին տարիներ պիտի տեւէր մինչեւ որ կատաղի Հակառակութեան մը փոխուէր:*[3]

Ուրեմն, 1896-ի վերջերը, երբ կազմուեցաւ հականազարբէկեան «նոր» Հնչակեանութիւնը, Վահէ Արզուեան արդէն այս «նոր»-երուն մէջ կը փորձէր կազմել անձնական խումբ մը։

Արփիարեանի եւ Արզուեանի յարաբերութիւնները եղած էին հրաշալի։ Օտեանի համաձայն, «Վահէ Արզուեան որ կուսակցութենէն հեռացուցուած էր՝ Արփիարի ջանքերուն շնորհիւ մտած էր կրկին գործօն շարքերուն մէջ։»[4]

Կուսակցութեան վերանդամագրուելէ ետք, 1900-ին Արզուեան կը մեկնի Պոլիս։ Արսէն Կիտուր կը կարծէ՝ որ Արզուեան Պոլիս մեկնած է զօրացնելու համար Վերակազմեալներուն դիրքերը այնտեղ։ Կը գրէ՝ թէ 1898-ին Աղեքսանդրիոյ մէջ գումարուած Վերակազմեալներու Բ. Պատգամաւորական Ժողովին հետեւանքով,

*Ամերիկայի Շրջանէն մաս մը կ'որդեգրէ Վերակազմեալներուն ծրագիրը եւ կը զատուի կուսակցութեան Հին կեդրոնէն: Իսկ Պոլսոյ շրջանը կը գործէ բոլորովին անջատաբար՝ մինչեւ մթնոլորտին պարզումը: Կ. Պոլսոյ վարիչ ընկերն էր ՎաՀէ Արզուեան: Եգիպտոսի Վերա-*

*կազմեալ Պատգամաւորական ժողովի* [Աղեքսանդրիա, Յունուար 1898, Հ. Ա.] *գլխաւոր դերակատարներէն Կ. Փափազեան, Ամերիկա վերադարձի ճամբուն, կը տեսակցի Արզուեանի հետ եւ կը խոստանայ Ամերիկայէն դրամական լայն օժանդակութիւն, եթէ ան կարողանայ Պոլսոյ շրջանը ենթարկել Վերակազմեալ կեդրոնին: Կ. Փափազեան կը կատարէ իր խոստումը. Արզուեան որ Պոլսէն դուրս կը գտնուէր, կ'անցնի Պոլիս եւ կը սկսի գործել Վերակազմեալ պիտակին տակ:*[5]

1900-ին Արզուեան կ'երթայ Պոլիս եւ Օգոստոս 6-ին[6] կամ Սեպտեմբեր 6-ին[7] կը ձերբակալուի Վոսփորի Ենի-Մահալլէ թաղին մէջ: Արփիարեանի խմբագրած *Նոր կեանք*ը անստորագիր երկու գրութիւններով Արզուեանի նկատմամբ խիստ համակրական վերաբերմունք կը ցուցաբերէ.

*Արզուեանի ձերբակալումը քաղաքական կարեւոր դէպքի մը համեմատութիւնները առած է: Այդ երիտասարդը թէեւ մեծահռչակ համբաւի չէ տիրացած, բայց յարգուած ու սիրուած է թէ՛ Հայ եւ թէ՛ Հայասէր եւրոպացիներու մասնաւոր շրջանակներու մէջ: Նոյն ինքն օսմանեան իշխանութիւնը երկար ատենէ ի վեր ըմբռնած էր Արզուեանի կարեւորութիւնը:*[8]

*Նոր կեանք* իր ընթերցողներուն կը հասկցնէ՝ որ ինք տեղեակ է Արզուեանի Պոլիս մեկնելու շարժառիթներուն մասին, բայց իրեն վնաս չհասցնելու նպատակով պիտի չբացայայտէ զանոնք.

*Արզուեանի ծրագիրներուն վերաբերութեամբ գիտակցօրէն խօսելու ձեռնհասութիւնը ունենալ թէեւ կը կարծենք, բայց առ այժմ պիտի բաւականանք ըսելով թէ այդ երիտասարդը ո՛չ իբր «տերրոր» մը, ո՛չ ալ իբր, ըստ Պոլսոյ պաշտօնական բացատրութեան, «խռովարար» մը եղած է Կ. Պոլիս: Արզուեան որքան կորովալիր եւ յանդուգն ճանչցուած է, այնքան ալ լրջախոհ եւ քաղաքագէտ մտքի մը համբաւը կը վայելէ իր ծանօթներուն մէջ. ուստի իր ներկայութիւնը Կ. Պոլիս ո՛ եւ է անդէպ ձեռնարկներու նախազեկոյց յայտարարութիւն մը պէտք չէ նկատել, մանաւանդ որ իր քաղաքական բարեկամներն ալ իրեն պէս շրջահայեաց եւ հեռատես ուղղութեան հետեւող են:*[9]

Վերջապէս, *Նոր կեանք* կ'ենթադրէ՝ որ ձերբակալութիւնը կատարուած է հայ մատնիչի մը կողմէ.

*Կը թուի թէ մատնիչը Հայ մըն է, որ երբեմն օսմանեան թղթատարութեան մէջ կարեւոր պաշտօն մը ունէր երկու հազար ոսկիի գողութեան մը ամբաստանութեամբ դատապարտուած ըլլալով, անցած էր Բարիզ ուր զանազան Հայոց հետ տեսակցելէ յետոյ Պուլկարիա եւ Յունաստան եւս կայցելէ, եւ տեղեկութիւններ կը հաւաքէ մասնաւորապէս Պ. Արզուեանի մասին: Հասնելով Պոլիս կը տեղեկագրէ թէ իր համոզմամբ այդ երիտասարդը Պոլիս ըլլալու է: Դիպուածին բերմամբ այդ անձն ալ Ենի-Մահալլէ բնակելով, կերեւի թէ*

*Արզումեանը նշմարած ըլլալու առիթը ունեցած է, եւ անմիջապէս հաղորդած է ոստիկանութեան, նախկին պաշտօնէին դատապարտութիւնը ներուած։*[10]

Արփիարեանի *Նոր կեանք*ը կը շարունակէ տեղեկութիւններ հաղորդել Արզումեանի մասին՝ միշտ դրական մօտեցումով.

[1900] *Նոյեմբեր* 19 *թուականով Կ. Պոլսէն անգլիական թերթերուն զարնուած հեռագիր մը կը ծանուցանէ թէ Պ. Ալիքսան Արզումեան որ սեպտեմբեր* 6-*ին Կ. Պոլիս Սարըեար ձերբակալուած էր, նոյեմբեր* 18 *կիրակի օր ազատուեր է։*

*Ֆրանսայի արտաքին գործոց նախարար Պ. Տէլքասէ մեծ հոգածութիւն ցոյց տուած է ժողովրդական հայ երիտասարդին համար, որ Ֆրանսայի գրական եւ քաղաքական շրջանակներու մէջ զինքը մեծապէս սիրող եւ յարգող բարեկամներ ստացած է։ Պ. Տէլքասէ Կ. Պոլսոյ ֆրանսական դեսպանատան շատ որոշ հրահանգներ ղրկած է ի նպաստ Պ. Արզումեանի։*

*Նմանապէս Լոնտոնէն քաղաքական անձնաւորութիւններ, որոնց շատ ծանօթ են Պ. Արզումեան եւ իր քաղաքական բարեկամները, ջերմագին յանձնարարականներ ղրկեցին Կ. Պոլսոյ անգլիական դեսպանատան։*

*Օսմանեան իշխանութիւնը նկատողութեան առնելով դեսպանատուններու կողմէն Պ. Արզումեանի յայտնուած յարգանքն ու համակրանքն օգտակար համարեց առանց ծանր դժուարութիւններ յարուցանելու, Ամերիկեան դեսպանատան յանձնել բանտարկեալը։*[11]

Բայց ինչո՞ւ Արփիարեան պիտի բացայայտէր իր պաշտպանեալի ձերբակալութիւնը եւ կապը Վերակազմեալներուն հետ։ Վահան Թէքէեան կու տայ վկայատեսի կարեւոր բացատրութիւն մը.

*Հնչակեան կեդր. Վարչութեան իր ընկերներուն ընդդիմութենէն վերջ, Արփիար յաջողեր էր Արզումեանը ներս առնել, հրաժարած պաշտօնակցի մը տեղ անդամ նշանակել տալով զայն։ Այս յաջողութիւնը, ինչպէս գիտենք, իր կեանքին էն մեծ սխալը պիտի ըլլար, զոր սակայն նախ իր աներկիւղ, անվհատ մաքառումովը եւ ի վերջոյ իր կեանքովը քաւեց։*

*Իր անդամակցութենէն քիչ վերջը, կ՚որոշուէր որ Արզումեան Պօլիս պիտի մտնէր, իր պաշտօնակիցներուն բոլորին գիտակցութեամբը անշուշտ եւ անոնցմէ ոմանց նիւթական օժանդակութիւնովը։ Այս վերջնոյն մասին սակարկութիւնը երկար տեւեր էր։*

*Այդ ճամբորդութիւնը երկու նպատակ ունէր.* 1.- *միշտ դրամական, այսինքն Պօլսոյ հարուստներէն նուիրահաւաքութիւն՝ առանց սպառնալիքի.* 2.- *բանակցութիւն Օսմանեան կառավարութեան հետ։*

*Կեդրոնը* [իմա՝ Վերակազմեալներու Լոնտոնի Կեդրոնը, Հ.Ա.] *շաբթէ շաբաթ իրեն ղրկած է նոր վկայագիր մը՝ վարչութեան իր անդամակցութիւնը հաստատող։ Այն օրը ուր ձերբակալուելով ա՛լ պիտի չկրնար դրամ հաւաքել՝ մէջտեղ պիտի հանէր իր թարմ վկայագիրը եւ պիտի ձեռնարկէր պաշտօնին երկրորդ կէտին գործադրութեան։ Ասիկա իր բլանն էր, որուն համոզած էր Արփիարը։ Անոր յաջողութեան հաւանականութիւնը կը քաղէր*

*անշուշտ՝ մէկ-երկու տարի առաջ նոյն մտքով Բարիզ Միւնիր պէյի հետ ունեցած իր բանակցութիւններէն: Կը հաշուէին թէ փոխադարձ զիջողութեանց վրայ յարաբերական անդորրութեան շրջան մը բացուելով՝ Հայութիւնը եւ Յեղափոխութիւնը հաւասարապէս պիտի օգտուէին:*

*Եւ ահա Արզումեան կը գտնուի Պոլիս, ուր սակայն բան մը չէ կրցած ընել մինչեւ ձերբակալումը, որ թերեւս կամաւոր ալ եղած է՝ իր բըէսթիժը վերականգնելու, նիւթական վերահաս նեղութենէն ազատելու եւ միեւնոյն ատեն պաշտօնին երկրորդ մասը կատարել կարենալու համար: Իրեն հետ Պոլիս տարած մարդոց, զորս խեղճութեան մէջ թողած է, «վտանգի պարագային իրենք իրենց գլխուն ճարը նայիլ» յանձնարարած է, աւելցնելով թէ «ինք ինքզինքը կրնայ ազատել»:*

*Անշուշտ ինք միայն գիտէ ձերբակալումէն մինչեւ մեկնումը իր ունեցած գործունէութիւնը: Միայն իրողութիւն մըն է՝ թէ քանի բանտարկեալներ եւ աքսորեալներ – որոնց մին իր եղբայրը – քիչ ետքը արձակուած են:*

*Գալով իր իսկ արձակումին՝ ահաւասիկ պատմութիւնը, ինչպէս զուրցած է Արփիար:*

*Զմեկնած՝ Արփիարին կրկնակի յանձնարարած է, իր ձերբակալման լուրը իմանալուն պէս Նոր կեանքի մէջ զայն հրատարակել: Այսինքն՝ անշուշտ մէկ կողմէն դարձեալ ըէքլամի եւ միւս կողմէն Սուլթանին աչքին իր դիրքը վաւերացնելու համար:*

*Արփիար կ'ընէ ճիշդ ինչպէս համաձայնած էին, բայց պ. Զօպանեան որ, իրաւ կամ սուտ, տեղեկութիւն չունի ատկէ, Արփիարին կը մեղադրէ այդ հրատարակումը զոր տղայ մը իսկ պիտի չընէր եւ Արփիար նուազ քան ուրիշ մը, քանի որ Արզումեան իր պաշտպանութեամբ կուսակցութեան մէջ ընդունուեր էր եւ ինք անկէ կ'սպասէր ո՛չ միայն գործին օգտակարութիւն, այլ եւ, իր ընկերներուն առջեւ իրեն համար արժանապատուութեան խնդիր մըն էր անոր յաջողութիւնը:*

*Եւ, ըլլա՛յ Զօպանեանի յառաջ բերած դիւանագիտական միջամտութեան, ըլլա՛յ իր վկայագրին ազդեցութեամբ, Արզումեան կ'արձակուի: Օսմ. կառավարութիւնը երկաթուղիի երկրորդ կարգի տոմսակը ինք կը գնէ եւ զայն կը դարձնէ Բարիզ:*[12]

Մինչեւ այստեղ, Արփիարեան եւ Արզուեան կը գտնուին ամենասերտ յարաբերութեան մէջ։

Նմանապէս հրաշալի էին կապերը Չօպանեանի հետ, որուն Արփիարեան 1900-ին յատկացուցած էր բացառիկ յօդուած մը.

*Զօպանեան* 1891-*էն* 1895 *լոկ բանաստեղծ մը ճանչցուեցաւ. մեր կեանքին յեղաշրջումը բանաստեղծն ալ քաղաքական անձնաւորութեան յեղափոխեց. ու հիմա ոչ թէ գրագէտը այլ Հայոց վերածնունդին աշխատողն է որ ժամանակակից դէմքերու մէջ առաջնակարգ տեղ մը պէտք է բռնէ:*[13]

Արփիարեան-Չօպանեան այս յարաբերութիւնն ալ կարեւոր է շեշտել, քանի որ Արփիարեանի զոյգ խզումները Չօպանեանի եւ Արզուեանի հետ մեծապէս

շաղկապուած են իրարու։

Բայց Արզուեանի նպատակն էր Արփիարեանը հեռացնել կուսակցութենէն եւ դառնալ Վերակազմեալներուն առաջնորդը, որուն դիւրին միջոցներէն մէկը Արփիարեանը մատնիչ դարձնելն էր, ինչպէս կը մեկնաբանէ Թէքէեան, շարունակելով վերոբերեալ նախորդ միտքը.

*Արզուեանի Պոլիս գտնուած միջոցին, Արփիար Լոնտոնի մէջ յարաբերութիւն կ'ունենայ համբաւաւոր Էտմոնին հետ, - կարծեմ հայ կաթոլիկ երիտասարդ մը զոր, եթէ չեմ սխալիր, Բարիզ Արզուեան ճանչցուցած էր իրեն։ Արփիար գիտէր՝ թէ Էտմոն Լոնտոնի Օսմ. դեսպանատունը կը մտնէր կ'ելլէր եւ թէ կը տեսնուէր Գէորգ Պիւլպիւլեանի հետ որ ճիշդ այդ ատեն Լոնտոն եկած էր։*

*Արզուեանի ձերբակալումէն յետոյ, Էտմոն եկած ըսած է Արփիարին, թէ դեսպանը զինք տեսնել կ'ուզէ։ Արփիար նախ մերժած է, յետոյ հաւանած։ Դեսպանը, քաղաքական եւ յեղափոխական ընդհանուր խօսակցութեան մը միջոցին՝ իբրեւ թէ դիպուածաբար, կը հարցնէ թէ Արզուեանի իրենց քօմիթէէ՞ն է։ Արփիար հաստատական պատասխան կուտայ։ Վերջէն, Արզուեան հաստատած է թէ բանտին մէջ իր վիճակին բարեփոխութիւնը զուգադիպած է ճիշդ այդ տեսակցութեան յաջորդ օրուան։*

*Էտմոնի հետ Արփիարի բոլոր-բովանդակ յարաբերութիւնը ասոր մէջ կը կայանայ։ Արփիար զայն ճշդութեամբ պատմած է Արզուեանին եւ անոր ընկերներուն, չկասկածելով թէ իրեն դէմ գործածուելիք ի՛նչ ահռելի զէնք մը կուտար անոնց ձեռքը։*

*Արփիարը կեդրոնէն հեռացնելու եւ ի փոխարէն ինք Արզուեան եւ իր արբանեակները կուսակցութեան տէր դառնալու դաւը կանուխէն պատրաստուած էր։ Երբ արբանեակներուն գլխաւորը Պոլսէն Եգիպտոս կուգայ, անմիջապէս գրպարտանքի կ'սկսի՝ պատմելով թէ Պոլիս Արզուեանի ուղղած նամակներուն պահարանները Արփիար կամաւ չէր թքոտեր...։ Ետքէն, երբ Էտմոնի հետ իր ունեցած յարաբերութիւնը իրմէն իմացան, «մատնութիւնը» աւելի որոշ տարազով մը կրցան ներկայացնել...։*[14]

## 4. ԱՐՓԻԱՐԵԱՆ ԿԸ ՊԱՀԱՆՋԷ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ ՆԵՐԿԱՅԱՑՆԵԼ ԺՈՂՈՎԻՆ

1901 Յունուարին, Լոնտոնի մէջ Արփիարեան վերջնականապէս կը հրաժարէր կուսակցութենէն։

1901-ի երկրորդ կէսին Արզուեան կը նշանակուի Վերակազմեալներու առաջնորդ, Կարապետ Փափազեանի եւ Ամերիկայի մասնաճիւղերուն վճռականութեամբ։ Արփիարեան յետագային պիտի տեղեկացնէր.

*Ապշած, զարմացած մնացի Բարիզ* 1901*-ին վերջերը, երբ Շահնազար ինծի իմացուց թէ՝*

*Ամերիկայէն Կարապետ Փափազեանը իրեն նամակ մը գրելով Միութեան խնդիրներուն առթիւ, իմացուցած է թէ՝ Ալիքսան Արզուեանը (Վահէն) Կուսակցութեան «դիկտատօր» նշանակուեր է։*[15]

Կուսակցութենէն հեռանալէն ի վեր, Արփիարեան կը պահանջէր պաշտօնական համարատուութիւն յանձնել գալիք Գ. Պատգամաւորական Ժողովին, որ ըստ կանոնագրութեան պէտք է գումարուէր 1902-ին։ Վերակազմեալներու Գ. Պատգամաւորական Ժողով՝ իբրեւ այդպիսին, տեղի չունեցաւ, այլ, ինչպէս պիտի տեսնենք ստորեւ, տեղի ունեցաւ հին եւ նոր Հնչակեաններու միացեալ ժողով՝ որուն օրակարգային միակ հարցը միութիւնն էր։ Արփիարեան երբեք պիտի չյաջողէր ներկայացնել իր համարատուութիւնը։ Ինչո՞ւ։ Որովհետեւ, ըստ Արփիարեանի յետագային տուած բացատրութեան, պիտի բացայայտուէին Արզուեանի 1899-1900-ին կատարած դրամական շողոքորթութիւնները.

*Պատգամաւորական 3-րդ Ժողովն էր որ Կեդրոնական վարչութեան համարատուութիւնը պիտի լսէր, որուն մէջ եւ Արզուեանին ալ տեղեկագրութիւնները։ Արդ, այդ ժողովը չգումարուեցաւ։ Ինչո՛ւ։ Վասնզի ձենէ ոմանք, ձեր պարագլուխները քաջ գիտէին թէ համարատուութիւն մը Արզուեան մը ճերմակ երես պիտի չհանէ։*[16]

Արփիարեան նոյնիսկ աւելի պիտի մանրամասնէր ու շեշտէր համարատուութեան մերժումին գլխաւոր պատճառը.

*Ու Վերակազմեալները իրենք ալ գիտէին թէ ի՛նչեր կրնային երեւան գալ եթէ Կուսակցութեան օրէնքները յարգուելով, Կեդրոնական վարչութիւնը իր համարը եւ հաշիւը Պատգամաւորական Ժողովին ներկայացնէր։*

*Նախորդ տեղեկութիւններով ցոյց տրուեցաւ որ եթէ Արզուեան մը կարող եղաւ դրամաշորթութեամբ պարապիլ առանց արգելքի եւ ազգին գլխուն ամէն փորձանք բերել, բոլոր այդ չարագործութեանց պատասխանատուութիւնը կը ծանրանայ այն Վերակազմեալներուն վրայ որոնք կուսակցութեան օրէնքները ոտնակոխ ընելով, միահեծան դիկտատորութիւն տուին անհատի մը։ Այդ անհատը եթէ ամենամաքուր մարդ մը իսկ եղած ըլլար, այսուհանդերձ իր սխալումները Հայութեան աղիտաբեր կրնային ըլլալ այն ահագին տագնապին ատեն յորում Հայաստան հոգի կը քաշէ։ Բայց երբ այդ մարդը իրենց – Վերակազմեալներուն – համոզմամբ իսկ, չարաշուք հարստահարիչ մըն է, մարդկային ուղեղին մէջ չի կրնար սղմուիլ թէ որպիսի՜ խելացնորութեամբ կ՚ելլեն միապետական անսանձ իշխանութիւն կուտան անոր զոր Մենծ-Տօլանտրճին նկատած էին։*

*Երբ մէկ կողմէն, օրինազանցութեամբ, այդ անձը դիկտատոր կը նշանակէին, միւս կողմէն դարձեալ օրինազանցութեամբ, շուզեցին համար եւ հաշիւ առնել այն կեդրոնէն զոր իրենք ընտրած էին, համարատուութեան պայմանաւ։ Նախորդ տեղեկութիւններէն մէկուն մէջ պատմեցի թէ ինչպէս մեր վարչութեան ատենապետ Կարապետ Փափազեանին գրած*

*նամակներովս, Մասնաճիւղներուն խրկած գրութիւններով շարունակ պահանջած եմ որ օրէնքը յարգուի եւ մեր Համարատուութիւնը առնուի ու օրինազանցութիւնը շարունակեց: Այդ Վերակազմեալները աշխարհը դղրդեցին 1896-ին, թէ՝ Աւետիս Նազարբէկ հաշիւ չիտար կուսակցութեան, ու զինքը արտաքսելու ելան – խօսէ՛, Ռշտունի: Այդ Վերակազմեալները հիմակ ելեր Արզուեանէն համար հաշիւ կը պահանջեն, ու զինքն ալ կ'արտաքսեն. աղէ՛կ, ըսելիք չունիմ, բայց «օլինպազութիւն» չըսե՞նք, երբ այդ խստապահանջները դրականապէս մերժեցին մենէ համար եւ հաշիւ առնել:*

*Համարատուութեան տեղեկագիրը կողմնակալութեան եւ անճշտութեան կասկածանքներու չէր կրնար ենթարկուիլ: Զայն պատրաստողը վարչութեան ատենադպիրը՝ Լեւոն Մկրտիչեանը պիտի ըլլար, ու իր հետ Ատենապետը՝ Կարապետ Փափազեանը, միւս անդամներն ալ պիտի ստորագրէին, որոնցմէ մէկը եթէ դիտողութիւն մը, բողոքարկութիւն մը ունենար անշուշտ կ'արձանագրէր: Այդ համարատուութիւնը պիտի պարունակէր՝ կեդրոնին ստացած դրամներուն հաշիւները, թերթերուն ուղղութիւնը, քաղաքական ծրագիրները, եւ մասնաւորապէս Արզուեանին վերաբերեալ բոլոր խնդիրները, եւ Պոլսոյ երթուդարձը, իր մանրամասնութիւններովը:*

*Պատգամաւորական ժողովի մը առջեւը տրուած տեղեկագիրը Արզուեանը դատապարտելու սահմանուած էր: Յատկապէս գաղտնի պահել կ'ուզէին Պոլիս երթուդարձին պատմութիւնները, որոնք սերտ առնչութիւն ունէին Հնչակեաններուն հետ միացման դաւադրանքին, դաւադրանք որ լռութեան մէջ գործադրուելով ամենամեծ դժբախտութեանց պատճառ եղաւ: Այդ համարատուութեամբ Արզուեան պիտի երեւան գար պարզապէս խաբեբայ անկարող մը:*[17]

Այս տեղեկութիւնները՝ զորս Արփիարեան կը հաղորդէ 1907-ին, ցոյց կու տան համարատուութիւն ներկայացնելու իր վճռականութիւնը, որ կը հանդիպէր նոյնքան վճռական ընդդիմութեան արզուեանականներուն կողմէ:

## 5. ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ ԵՒ ՎԵՐԱԿԱԶՄԵԱԼ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

1901-ին բանակցութիւններ կը սկսին Հնչակեաններու եւ Վերակազմեալ Հնչակեաններու միջեւ՝ միութիւն կազմելու նպատակով: Անոնք տեղի կ'ունենան միացեալ Գ. Պատգամաւորական Ժողովի ծիրէն ներս, որ կը սկսի 1901 Սեպտեմբերին եւ կը վերջանայ 1902 Մարտին:[18]

Այս բանակցութիւններուն ու ժողովներուն, բնականաբար, Արփիարեան չէ մասնակցած, քանի որ հրաժարած էր կուսակցութենէն: Բայց ամբողջ գործընթացքը՝ իր հետեւանքներով հանդերձ, կարեւոր նշանակութիւն ունի դէպի Վենետիկի երկրորդ մահափորձը տանող ուղին բացատրելու համար:

Նախ, միութեան համար տարուած բանակցութիւններու պատրուակով անկարելի էր որ Արզուեան ընդունէր պաշտօնական համարատուութիւն մը, ուր, ամենայն հաւանականութեամբ, պիտի բացայայտուէին անբաղձալի իրողութիւններ։ Մինչդեռ Արզուեան, ինչպէս պիտի տեսնենք, նպատակ ունէր տիրել ամբողջ Հնչակեանութեան՝ հին ու նոր։ Միւս կողմէն, միութեան վերջնական քայքայումը եւ ատելութեան մթնոլորտի յառաջացումը պիտի դիւրացնէր Արզուեանին իրագործել մահափորձը, նպատակ ունենալով վերջնականապէս լուծել համարատուութեան մը վտանգը։

Վերակազմեալներու Ամերիկայի գլուխներէն Կարապետ Յ. Փափազեան մօտէն կը հետեւէր Լոնտոն գումարուող նիստերուն եւ Պոսթոնէն նամակագրութեամբ կու տար իր հրահանգները։ Ձեռք ձգելով այդ նամակները, հին Հնչակեաններէն Սապահ-Գիւլեան անոնցմէ քանի մը հատ 1903-ին կը հրատարակէ *Երիտասարդ Հայաստան*ի մէջ։ Այդ շրջանին արդէն միութիւնը տապալած էր եւ Սապահ-Գիւլեան կ'ուզէր այս նամակներով վարկաբեկել Փափազեանն ու Վերակազմեալները։ Կը յաջողի թէ ոչ՝ ուրիշ հարց, բայց անոնք կը պարունակեն միութեան գործընթացքին հետ կապուած հետաքրքրական նիւթեր։ Բոլորն ալ գրուած են Պոսթոնէն եւ հասցէագրուած Լոնտոնի Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան Դիւանին։

Փափազեանի 1901 Սեպտեմբեր 24 թուակիր նամակին մէջ կը կարդանք.

*Հին Հնչակեաններու հետ ձուլուելու խնդիրը կարեւոր է. մտերմական աղբիւրէ կ'իմանամ որ ատոնց Կովկասի մարդիկը այդ մասին շատ նպաստաւոր կերպով տրամադրուած են, եւ կը կարծեմ թէ դժուարութեան չպիտի բաղխիք եթէ հարկ եղած ճարտարութեամբ վարուիք։ Ատոնց հետ միութեան լուրը սքանչելի տպաւորութիւն պիտի ընէ ամենուրեք։*[19]

1901 Նոյեմբեր 7 թուակիր նամակով Փափազեան կը յայտնէ իր կարծիքները.

*Գալով Հին Հնչակեաններուն հետ ձեր բանակցութեանց արդիւնքին։ Առաջին կէտը որ աչքիս զարկաւ յառաջիկայ ընդհ. Պատգ. Ժողովին իրաւասութեանց եւ գործառնութեանց մասին ցոյց տուած աւելորդ մտահոգութիւնն է։ Չեմ գիտեր թէ ինչո՞ւ հարկ տեսնուեր է միութեան բանակցութիւններուն մէջ Պատգ. Ժողովին ընելիքովը կամ չընելիքովը զբաղիլ. ինչո՞ւ կ'ենթադրուի թէ Պատգ. Ժողովը երկու կեդրոններուն որոշած գործի եղանակներուն պիտի հակակերպի – թէ խմբագրութիւն մը պիտի կազմէ, թէ 7-9 հոգիներէ բաղկացեալ վարչութիւն մը կազմէ անպատճառ, թէ յեղափոխական ֆունտ մը կազմէ, թէ խմբագրութեան ծախքը այդ ֆունտից եւ կամ տարբեր աղբիւրէ հոգայ եւլն։ Ըստ իս ատոնք բոլորը աւելորդ են քանի որ 2-րդ յօդուածով «Ընդհ. Պատգ. Ժողովի մեծամասնութեան բոլոր որոշումները ընդունելի են (եւ պէտք է ըլլան) ինչպէս սովորաբար Պառլամէնթներում տեղի ունենում է։ Այս սկզբունքը, որ ուղիղ է, ընդունելէ ետքը կարգ մը խնդիրներ ինքնին կը լուծուին արդէն...։*

*Որչափ պարզ ըլլան պայմանները այնքան յստակ եւ դիւրին կ՚ըլլայ բանակցութիւնը: Այս ինը յօդուածներէն կարեւորը՝ երկրորդը եւ իններորդն է, նաեւ չորրորդը: Այս երեքը նոյնութեամբ կրնանք ընդունել: (Եթէ Հնչակը ընդունուի իբրեւ Օրկան, կրնանք Նոր կեանքը ջնջել, միայն թէ Հնչակը ճիշտ Նոր կեանքի ձեւով եւ որչափ հնար է, նոյն պարունակութեամբ հրատարակուելու է ամիսը երկու անգամ:)*

*Առաջին յօդուածը ընդունելի չէ, ոչ գործնական է եւ ոչ օգտակար. քաշքշուքներու դուռ կը բանայ: Պէտք է որ առաջիկայ Ընդհ. Ժողովը Միացեալ Հնչակեաններու ժողովը ըլլայ: Այդ պարագային մենք կրնանք ժողովին ժամանակը մօտեցնել, անոնք ալ կրնան քիչ մը հեռացնել, այնպէս որ 6 ամիսէն կրնայ գումարել Ընդհ. Ժողովը... Ըստ իս երկրորդ, չորրորդ, եւ իններորդ յօդուածները Միութեան կարեւոր հիմերը կը ճշտեն: Սոյն կէտերու վրայ համաձայնութեամբ միացած ըլլալնիս ծանուցանող շրջաբերական մը կը գրուի զոր թէ մենք եւ թէ անոնք կը կնքենք եւ կը ստորագրենք, եւ կը ղրկենք բոլոր հին ու նոր մասնաճիւղերուն, հրահանգելով որ երկուստէք բոլոր գոյքերը հասարակաց ստացուածք նկատեն Միացեալ կազմակերպութեան: Իսկ պաշտօնական թերթին մէջ ալ կատարուած իրողութիւնը կը յայտարարուի...:*

*Մոռցայ: Յօդուած մ՚ալ պէտք է ուր յայտարարուի թէ մինչեւ Ընդհ. Պատգ. Ժողովը երկու վարչութիւնները միացած իբրեւ մէկ մարմին կը վարեն միացեալ կուսակցութեան գործերը, բնականաբար Պատգ. Ժողովը նոր ընտրութիւն կը կատարէ: Նազարբէկը պէտք չէ որ միացեալ վարչութեան անդամ ըլլայ – տարբեր խնդիր է եթէ Ընդհ. Ժողովը որոշէ պաշտօն տալ իրեն:*[20]

1901 Դեկտեմբեր 20 թուակիր նամակով Փափազեան կու տայ իր հրահանգները.

*Միութեան խնդրոյն վրայ մէկ երկու թիւ բան մի գրէք Նոր կեանքին մէջ: Քիչ մը սպասենք, եւ նոյն ատեն Նազարպէկեաններու հետ վերջնական համաձայնութիւնը փութացնենք: Ասկից հինգ տղաքներ կուգան իրենց Պատգ. Ժողովին ներկայ ըլլալու: Սուրէնը եւ ես հետերնին տեսնուեցանք շատ լաւ տրամադրուած են դէպի մեզ, ձեզ պիտի գան տեսնելու, ռամկավարական ոգւով զիրենք ընդունեցէք, եղբայրական խօսքերով զիրենք քաջալերեցէք ի նպաստ միութեան գործին: Մեր բոլոր տղաքը հոս Հիներուն հետ իբրեւ ընկերոջ հետ կը վարուին... Անգամ մը որ ատոնց հետ միութիւնը կատարուի՝ Դաշնակցականներուն հետ տարբեր կրնանք վարուիլ...:*[21]

Բայց Փափազեան կը դնէ պայման մը.

*[Կ]ը խնդրեմ Նազարպէկը վարչութեան անդամ չըլլայ, գայթակղութիւնը մեծ կ՚ըլլայ:*[22]

Ըստ Արսէն Կիտուրի, Վերակազմեալները կ՚աշխատէին ոչ միայն հեռացնել Նազարբէկեանը, այլ ամբողջ Նազարբէկեան հատուածը՝ իշխանութիւնը իրենց տնօրինութեան տակ վերցնելու համար.

*Վերակազմեալները ամէն գնով կ՚ուզէին միութիւնը կայացնել իրենց ազդեցութեան տակ՝ ձուլելով Նազարբէկեանի հատուածը եւ կամ զայն ի սպառ հեռացնել ղեկավարութենէն:*[23]

Վերակազմեալները կ՚ուզէին նաեւ Նազարբէկեանը հեռացնել *Հնչակ*էն, ինչպէս կը պատմագրէ Կիտուր.

*Անոնք պայման կը դնէին նոյնպէս, որ Նազարբէկեան հրաժարէր Հնչակի սեփականատէրի իրաւունքէն, զայն փոխանցէր նորընտիր Կեդրոնական Վարչութեան եւ կառավարական օրէնքով զայն յայտարարէր կուսակցութեան անձեռնմխելի սեփականութիւն:*[24]

Վերակազմեալները երկու առումներով կը յաջողին: Յետագային կազմուելիք վարչութեան մաս չի կազմեր Նազարբէկեան: Գալով *Հնչակ*ին, դարձեալ համաձայն Կիտուրի տեղեկութիւններուն, Նազարբէկեան կը հրաժարի լրագիրի արտօնատէրի եւ սեփականատէրի իրաւունքէն, եւ այդ իմաստով կը գրէ հետեւեալ նամակը.

*Ներկայիս պատիւ ունիմ յայտնելու թէ Հնչակեան կուսակցութեան Կեդրոնական օրգան Հնչակ թերթի արձանագրութեան իրաւունքէս կը հրաժարիմ, յօգուտ անուններուն այն անձանց, որոնք ձեզի պիտի յանձնեն ներկայ գրութիւնը:*[25]

1902 Յունուար 28 նամակին մէջ Փափազեան իր մտահոգութիւնը կ՚արտայայտէ Դաշնակցութենէն.

*Միութեան լուրին օրէօր կը սպասեմ: Հոս Դաշնակցականները իմացած են մօտալուտ Միութիւնը եւ կարծես օրհասական ճիգեր կը թափեն դրամ ժողուելու. մեր միացեալ ջանքը, զանոնք այնպէս մը վարկաբեկ պիտի ընէ որ ա՛լ անգամ մ՚ալ չհամարձակին ժողովրդին առջեւ ելլել ու դրամ հանգանակել:*[26]

Վերջապէս, Փափազեանի 1902 Փետրուար 11-ը կը քննարկէ Հնչակեանութեան ընկերվարութեան (socialism) հարցը.

*Ես իմ «ոչ» պատասխանս հեռագրած էի ձեզի արդէն՝ երբ ստացայ Գ. շրջաբերականը, այսօր ալ Դ.ը ստացայ զոր Ձեր սեփհական կարծիքը կը յայտնէք միութեան բանակցութեանց արդիւնքին նկատմամբ: Սուրէնին մասնաճիւղերը այցելելով անոնց կարծիքները հաւաքելու առաջարկը անգործնական էր – չափէն աւելի ժամանակ կ՚առնէր եւ ընթացիկ գործերու կանոնաւորութիւնն ալ կը խանգարէր: Ուստի արտակարգ Պատգ. Ժողով մը փութացուց Նահ. Վարչութիւնը. մինչեւ իսկ ժամանակ չունենալով Սուրէնի ներկայութիւնը ապահովելու, որուն դէմ խիստ բողոք մը գրած է Պր. Ներկայացուցիչը (բայց հիմա ձեւակերպական*

*խնդիրներու պատճառաւ համերաշխութիւնը խանգարելու ատենը չէ)։ Իսկ առեալ Քալիֆորնիոյ եւ Շիքակոյի մասնաճիւղերը՝ բոլոր մասնաճիւղերը ներկայացուած էին մէկ կողմէն՝ ժողովը միութեան ջերմ համակիր ուստի միութիւնը վիժեցնելու երկիւղէն չհամարձակեցաւ «ոչ» հեռագրել, միւս կողմէն՝ սօսիալիզմը պաշտօնապէս եւ վերջնապէս ծրագրին մէջ պահելու սարսափէն «Այո» չկրցաւ հեռագրել. 7-8 ժամ մտածեց եւ վիճաբանեցաւ միջին ճամբայ մը (compromise) գտնել եւ այդ իմաստով ձեզի հեռագրեց որուն Ադամեան ստորագրութիւնը մեր պաշտօնակից Հայկունիին է։ Ահա կատարեալ իմաստը այդ հեռագրին – մինչեւ տարի մը (ընդհ. ժողովին ատենը) հին հնչ. ծրագրով կառավարուինք (պայմանաւ որ Միութեան յայտարարութիւններուն մէջ բառ մ'իսկ չըսուի ծրագրի մասին) եւ պայմանաւ որ «Հնչակ Թերթը միայն յեղափոխական-ապստամբական խնդիրներով պիտի զբաղի» յօդուածը կատարելապէս յարգուի։ Անկէ վերջն ալ ընդհ. ժողովը իրաւունք ունենայ ծրագրի եւ վարչական խնդիրներու մասին վերջնական որոշումներ քուէարկել։ Եթէ այսպէսով միութեան առջեւէն ամեն խոչընդոտ վերցած կ'ըլլայ՝ այդ զոհողութիւնն ալ ընելու տրամադիր եղաւ ժողովը։ Բայց եթէ Միութիւնը հուչակուելէն ետքը սօսիալիզմի Թմբուկներ պիտի զարնուին բացարձակօրէն «ոչ»։ Ասկէ գնացող Նազարպէկեանները կը գրեն թէ ամէն գնով որոշած են միութիւնը իրագործել, եթէ մինչեւ իսկ իրենց մէջ հերձուած ալ տեղի ունենայ. մէկ բանէ միայն կը վախնան, այն է թէ արիւնահեղութիւն կարելի է պատահի – երկու կողմէն զինեալ ժողովի կ'երթան եղեր (ասիկա բացարձակ գաղտնիք պահեցէք կ'աղաչեմ). մէկ կողմը քանի մը ռուսահայ սրիկաներ, միւս կողմէն մեր տղաքը եւ իրենց համակարծիքները...։*

*Ամէն բան ինկատի առնելով ես ալ համամիտ գտնուեցայ հեռագրի ոգւոյն եւ իմաստին, գրեթէ տարակոյս չունիմ որ պիտի կարենանք զտել մեր մէջէն վնասակար տարրը տարուան մը միջոցին – Խուչպուլեանի նման սրիկաները ըսել կ'ուզեմ, նախ մամուլի եւ ապա տիսիփլինի միջոցով պիտի կարենանք ազգ. յեղափոխական ոգին տիրող ազդեցութիւնը ընել ամէն տեղ։ Եւ եթէ հարկ ըլլայ աւելի ազդու միջոցներու ալ կրնանք դիմել...։*[27]

Հնչակեաններու պատմաբան Արսէն Կիտուր կանգ կ'առնէ ընկերվարութեան հարցին վրայ.

*Վերակազմեալները դեռ կը շարունակէին պնդել նաեւ այն մասին, թէ կուսակցութիւնը վերջնականապէս պիտի հրաժարի սոցիալիստական փրոփականտէն եւ գործունէութենէն եւ ամբողջովին պիտի նուիրուի ազգային – յեղափոխական, ապստամբական գործին ու անոր փրոփականտին։*

*Ռուսահայ հնչակեանները սակայն բացարձակապէս կ'ընդդիմանային այս պայմաններուն եւ կը նախընտրէին առանձնանալ եւ սոցիալ դեմոկրատական կուսակցութիւնը շարունակել։*[28]

Բանակցութիւնները երեւութապէս արդիւնքի կը հասնին եւ կ'իրականանայ միութիւնը։ Կը կազմուի Կեդրոնական Վարչութիւն, Սոցիալիստ Հնչակեաններուն կողմէն՝ Համբարձում Արզումանեան, Սագունի եւ Սիմոն Հովեան, իսկ

Վերակազմեալ Հնչակեաններուն կողմէն՝ Վահրամ Գրիգորեան, Վահէ (Ալեք-սան) Արզուեան եւ Վահան Շահրիման։[29]

Պատգամաւորական Ժողովը կը վերջանայ եւ 1902 Մարտ 24-ը կը հռչակուի Հնչակեաններու եւ Վերակազմեալ Հնչակեաններու միութեան օր։

Լոնտոնի Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը 1902 Ապ-րիլ 1 թուակիր պաշտօնական յայտարարութիւն մը կը պատրաստէ, զոր կը հրա-տարակէ թէ՛ Հնչակեաններու *Հնչակ*ը եւ թէ՛ Վերակազմեալներու *Նոր կեանք*ը։ Ան կը սկսի այսպէս.

*Անհուն ուրախութեամբ կը հաղորդենք Հայ հասարակութեան, թէ Հին եւ Վերակազմեալ Հնչակեան երկու հատուածներուն մէջ, Միութեան բոլոր պայմաններուն վրայ վերջնական համաձայնութիւն գոյացած ըլլալով՝ Հնչակեան Միութիւնը կատարուած է։*

*Միացեալ ու միակ Հնչակեան կուսակցութեան կեդրոնական Վարչութիւնը պիտի կազմուի անյապաղ, ամբողջ կուսակցութեան քուէովը։*[30]

Այս ընդհանուր մթնոլորտին մէջ էր որ Արփիարեան կը պահանջէր համա-րատուութիւն։ Վերակազմեալները ամէն կերպ պէտք է հեռացնէին զայն։ Վե-րոյիշեալ նամակներու 1901 Դեկտեմբեր 20 թուակիրին մէջ Կարապետ Յ. Փափազեան խստօրէն կը հրամայէ Լոնտոնի Կեդրոնական Վարչութեան.

*Արփիարին նամակներուն ընաւ պատասխան մի տաք ի բաց առեալ երբ* registed *ընէ անոնց ալ տող մը միայն ըսելով թէ նամակը առինք։ Ես այդ մարդուն ինչպէս եւ Բաչալեանին հոգեբանութեան խորը թափանցած եմ, եւ լաւ գիտեմ թէ ամէն բանի ընդունակ են։ Նախ առաջինը ՄԿՐՏԵԼՈՒ է երկրորդին դաս մը տալու համար։ Բայց ասիկա ընելու համար զինքը կամ Յունաստան եւ կամ Եգիպտոս ղրկելու է նախ՝ մնացածը ես ասկից կը կարգադրեմ, կամ ձեր տրամադրութեան ներքեւ կը դնեմ երկու տեռօր։ Պէտք է անգամ մը վատերու վոհմակը սարսափեցնել արտասահմանի մէջ։*[31]

Այս նամակը երկու կարեւոր կէտեր կը պարունակէ։ Առաջին՝ Փափազեան անհրաժեշտ կը գտնէ չպատասխանել Արփիարեանի նամակներուն, որոնք, հասկնալի է, պիտի պահանջէին համարատուութիւն։ Արփիարեան անձամբ կը հաստատէ՝ որ այս առումով Փափազեանին գրած է բազմաթիւ նամակներ, որոնք մնացած են անպատասխան.

*[Մ]եր վարչութեան ատենապետ Կարապետ Փափազեանին գրած նամակներով, Մասնա-ճիւղերուն խրկած գրութիւններով շարունակ պահանջած եմ որ օրէնքը յարգուի եւ մեր համարատուութիւնը առնուի։*[32]

Երկրորդ՝ նամակը կը բացայայտէ, որ Արփիարեանի «տեռօր»-ի ենթարկելու

մտադրութիւն կար տակաւին 1901-ի վերջերը, հաւանաբար, համարատուութեան պահանջին իբրեւ պատասխան, այլեւ, վերացնելու համար իրենց յետագայ գործունէութեան նկատմամբ վտանգաւոր տարր մը, որ գիտէ բազում մանրամասնութիւններ եւ պատրաստ է ամէն վայրկեան հրապարակել զանոնք։

Հետաքրքրական է, որ 1901-ի մտադրութեան մասին կարեւոր վկայութիւն մը եւս կը յայտնուի 1908-ին։ Արփիարեանի Գահիրէի սպանութեան Եղեռնադատ Ատեանի դատավարութիւնը տեղի կ'ունենայ 1908 Յուլիս 6-ին, որուն ներկայ էր Երուանդ Օտեան։ Վերջինս մանրամասնօրէն կ'արձանագրէ ու կը հրատարակէ ամբողջ դատավարութիւնը։ Վկաներէն մէկը կը խօսի 1901-ի մասին.

*Ետքը կը ներկայանայ ծերուկ Հայ մը, Գարագաշ Զուլագեան, 53 տարեկան, Թուրքիոյ մէջ ծնած։*

*Ծանօթութիւններ կուտայ որոնք մինչեւ 1902 թուականը կ'երկարին։ 1901-ին Զարեհ Գոչեան Գահիրէ եկած էր Լոնտոնէն ուր կը գտնուի հայկական Մաֆիայի կեդրոնը։ Գոչեան այդ թուականին ըսեր է իրեն թէ Մաֆիան որոշած է սպաննել Արփիարեանը որովհետեւ Արփիարեան զիրենք կը մատնէր։*[33]

Նշենք, որ Զարեհ Գոչեան արզուեանական խմբակի անդամներէն մէկն էր եւ կարեւոր ներդրում ունեցած է 1908-ի սպանութեան գործողութիւնը կազմակերպելու առումով։

## 6. ՄԻՈՒԹԵԱՆ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

Միութիւնը շուտով կը քանդուի՝ ողբերգական հետեւանքներով։ Ինչպէս Արսէն Կիտուր դիտել կու տայ, «[ն]որընտիր Կեդրոնական Վարչութիւնը ներքնապէս ամուր կերպով իրարու զօդուած չէր։»[34] Անմիջապէս կը ծագին ընկերվարական եւ ոչ-ընկերվարական հարցեր՝ վարչութեան երկու հատուածներուն միջեւ, եւ մանաւանդ ներքին անհամաձայնութիւններ։[35] 1902 Յունիս 23-ին գումարուած միացեալ Կեդրոնի ժողովին արդէն այս հարցերը դրուած էին սեղանի վրայ։[36]

Օգոստոսին միութիւն չկար եւ Արզուեան ստանձնած էր Վերակազմեալներուն առաջնորդութիւնը։ Արփիարեան պիտի գրէր.

1902-*ի օգոստոսին, երկրորդ բաժանումէն վերջը, Լոնտոն գումարուած ժողովքով մը այդ* [իմա՝ Արզուեանի, Հ.Ա.] *դիկդատորութիւնը վերահաստատուեր է։ Միայն թէ՝ դիմադրանքի մը հետեւանքովը, փոխանակ ձգելու որ Արզուեանը ինքը ընտրէ իր «խորհրդականները», այդ ժողովը ինքը տուեր է Արզուեանին անոր ուզած մարդերը, այսինքն՝*

*ամենավստահելի ստրուկները*:[37]

Արսէն Կիտուր պատասխանատուութիւնը կը դնէ մէկ խումբի մը վրայ՝ որ կը ձգտէր ղեկավարութիւնը կեդրոնացնել իր ձեռքը։ Բնականաբար, այս պարագային ընկերվարականութեան հարցը պարզապէս նախադրեալ մըն էր հակառակութիւնները սրելու։ Կիտուր կը տեղեկացնէ.

*Ամերիկայի Նահանգային Վարչութիւնը՝ Լոնտոնի Հնչակեան կուսակցութեան կեդրոնական Վարչութեան երեք անդամներու (Գ. Ջիթճեան, Արզուեան եւ Շահրիման) միջոցով, ամբողջ 5-6 ամիս կանխամտածուած ծրագիրներով կ'աշխատէր չէզոքացնել ռուսահայ սոցիալիստ երեք անդամները (Ս. Տաշիր, Արզումանեան եւ Սագուն) եւ կուսակցական ղեկը կեդրոնացնել ամերիկեան հատուածին ձեռքը, որոնք Վերակազմեալներու սիւներն էին։* [...]

*Ամերիկայի Նահանգային Վարչութիւնը գաղտնապէս ընտրած էր «կեղծ կեդրոն» մը, բաղկացած Շարհրիմանէ, Արզուեանէ եւ Գրիգորեանէ. ասոնց արբանեակներն էին Զարեհ Քոչունեան եւ Մարդուկէսեան Վարդապետը։ Ասոնք բոլոր մասնաճիւղերը կը գրգռէին «սոցիալիստ-ռուսահայ» կեդրոնին դէմ*:[38]

Հին՝ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեաններու *Հնչակ*ը իր 1903 Յունուար 1-ի թիւն մէջ կը յայտարարէ կատարեալ խզումը.

*Սրանով պաշտօնապէս յայտարարում ենք բոլոր Հնչակեան շրջանակներին եւ հայ հասարակութեան, թէ՝ ամեն կարգի ոճրագործութիւնների եւ հայ յեղափոխական գործի դէմ իրենց լարած սոսկալի դաւադրութեան պատճառով, կուսակցութեանս շարքերից ընդմիշտ արտաքսուած են նախկին Վերակազմ. Հնչ. Հերձուածին պատկանող Ալէքսան Արզուեան (Վահէ), Վահան Շահրիման, Վահրամ Գրիգորեան, Կարապետ Փափազեան, պատ. Գարեգին Ջիթճեան, Ղեւոնդ վարդապետ Մարդուկէսեան, Ղազարոս Կալոզեան (Սուրէն Սուրէնեան), Զարեհ Գոչեան, Մարտիրոս Տ. Յովհաննէսեան ու Բարղամեան եւ իրենց տգիտութեամբ դրանց ձեռքին գործիք դարձած խմբակը*:[39]

Իր կարգին, Վերակազմեալ Հնչակեան Նահանգային Վարչութիւնը պաշտօնապէս կը յայտարարէ.

*Հնչակեան Կուսակցութեան Ամերիկայի Նահանգային Վարչութիւնս ի գիտութիւն Հայ Հասարակութեան կուգայ ծանուցանել թէ՝ երբեմն Հնչ. Գործիչ Պր. Ս. Սապահ-Գիւլեան եւ իրեն հետեւող կարգ մը անձեր, որոնք վերջերս Նազարբէկի մի անգամ ընդ միշտ խարխլած աթոռը վերահաստատելու նպատակաւ ի գործ դրուած ջանքերու մասնակից եղած էին, իբրեւ Միութեան Սկզբունքին դէմ դաւադիրներ չէզոքացուած են կուսակցութենէս եւ այսուհետեւ ոեւէ կապ չունին տեղւոյս Հնչակեան կազմակերպութեան հետ*:[40]

Իրարու դէմ առեւտուրը կը շարունակուի ու կ՚աճի։ Ատելութիւնը կը հասնի անհաւատալի չափերու իսկ մամուլով օգտագործուած բառերն ու արտայայտութիւնները կ՚արտաբերեն համակ յարձակողականութիւն։
Նազարբէկեանի *Հնչակը* գրէ.

*Բայց ո՞վ կարող էր երեւակայել թէ հէնց այն վայրկեանին, երբ այդ անարգ խմբակը իւր մի ձեռքը իբր թէ եղբայրաբար դէպի մեզ էր պարզում, այդ միեւնոյն վայրկեանին, միւս ձեռքով մի սոսկալի դաւ էր պատրաստում, ոչ միայն մեզ, այլեւ ամբողջ Հայ յեղափ. գործի դէմ։*[41]

Վերակազմեալներու *Զայն հայրենեաց*ը կը գրէ.

*Տխուր խմորով մը շաղախուած ու աւելի՛ տխուր դաստիարակութիւն ստացած մարդիկ յեղափոխական Գործիչի գործով երեւան եկան ու իրենց Հրէշային բնազդներուն ազատ ասպարէզ տուին, Յեղափոխութիւնն ու Ազատութեան Գաղափարը սրբապղծելով։*
*Ու ա՛լ բան մը չի մնաց անձեռնմխելի, սուրբ։ Ո՛չ ընտանեկան պատիւը, ո՛չ Հայուհիներու աւանդական պարկեշտութիւնը, ո՛չ գաղափարի եղբայրութեան մը կապը, ոչի՛նչ կրցաւ ազատ մնալ «յեղափոխական» կոչուած յայտնի մամուլի մը դիւային Հպումէն։*[42]

## 7. ԱՐՓԻԱՐԵԱՆ ԸՆԴԴԷՄ ԱՐԶՈՒԵԱՆԻ

1902 Ապրիլին *Դրօշակ* հրապարակ կը հանէ իր յաջորդական Յաւելուածներէն մէկը։ Կը հրատարակէ Մխիթարի 1902 Ապրիլ 20 թուակիր նամակը՝ հասցէագրուած Արեւմտեան Բիւրոյին։ 1900-ին Մխիթար միջնորդի դեր խաղացած էր Վերակազմեալներուն եւ Դաշնակցութեան միջեւ միութեան խնդիրին առնչութեամբ։ Մխիթար կը գրէ.

*Երբ որ, գրած եմ Լօնտօն, 1900-ին իմ միջնորդի դիմումներս սկսայ, Վեր. Հնչ. կուսակցութիւնն իր գլուխն ունէր 1898-ին, Աղեքսանդրիա հաւաքուած Ընդհանուր Ժողովէն ընտրուած կեդրոնական Վարչութիւն մը, եւ որուն հետ պաշտօնական յարաբերութեան մտայ միացման հարցին վրայ։*
*Միջնորդութիւնս՝ ինքնաբերաբար սկսուած՝ այսպէս գործով իսկ փոխուեցաւ տրուած պաշտօնի։*[43]

Ուրեմն, քանի որ պաշտօնական ու ընտրուած մարմին գոյութիւն ունէր, Վերակազմեալ-Դաշնակցութիւն միութեան համար տարուած բանակցութիւնները օրինական էին։ Այսօր՝ 1902-ին, արդէն կարելի չէ նման ձեռնարկի դիմել.

*Եզրակացնելով կ'ըսեմ. չկայ կեդրոնական վարչութիւն, այլ կայ չորս հինգ անձերէ բաղկացեալ (որոնց երեքը՝ Լօնտօն, մին՝ Եգիպտոս, միւսը՝ Ամերիկա) խմբակ մը որ չկրնար համոզել հայ հասարակութիւնը թէ ինքն է որ կը ներկայացնէ Վեր. Հնչ. կուսակցութիւնը, կը վայլէ անոր անդամներուն վստահութիւնը, կը գործադրէ կամքն ու փափագը, քանի որ ասոնց 1898-ի Ընդհ. Ժողովէն այդ խմբակը ընտրուած չէ, ինչպէս, զոր օրինակ ես, վարիչ ընտրուած էի:*[44]

Ապա Մխիթար կը դպչի ամենազգայուն եւ ամենավտանգաւոր կէտին՝ Վահէ Արզուեանին.

*Հրաժարեալ կեդր. Վարչութիւնը Հ. Յ. Դաշնակցութեան հետ միացման հարցը մշակելու եւ ի գլուխ հանելու համար յատկապէս արտօնուած էր Ընդհ. Ժողովէն: Երբոր երկու տարի առաջ* [իմա՝ 1900-ին, Հ.Ա.] *դիմեցի անոր, գիտէի թէ ձեռնհաս եւ արտօնեալ մարմինի մը հետ էր որ գործ պիտի ունենայի: Ամէն կողմէ եւ իրարու ետեւէ ինձ հասած տեղեկութիւնները, զորս ստոյգ կը հաւատամ, ինձ կը բաւեն վճռելու թէ Լօնտօն նստող եւ կեդր. վարչութեան անունով գործող խմբակը եւ նամանաւանդ իր հետը՝ պ. Վահէ բնաւ երբէք ճանչցած չեն եւ հիմա ալ չեն ուզեր ճանչնալ իբրեւ օրինաւոր ոչ 1896-ի եւ ոչ ալ 1898-ի Ընդհ. Ժողովները եւ անոնց որոշումները:*

*Ուրիշ նոյնպէս ծանր իրողութիւն մը. կը լսեմ թէ այդ խմբակը ու իր պետը գործած են Պօլիս եւ Բարիզ այլեւայլ թուականներով, բոլորովին իրենք իրենց գլխուն, կամայականաբար, կարգ մը գործեր որոնց մասին հաշիւ չեն տուած եւ չեն ալ ուզեր տալ երբէք:*

*Իրաւ է թէ այս արարքները կրնան մինչեւ մէկ աստիճան ծածկուած կամ ներուած նկատուիլ շնորհիւն ու միջոցովն այն պաշտօնին զոր պ. Վահէ ինքն իրեն յանձնել տուաւ կեդր. Վարչութենէն եւ զոր կատարելու համար 1900-ին Պօլիս գնաց վերջապէս – պաշտօն մը որուն կատարման ամենեւին չսպասուած եղանակին վրայ առանձնաբար պիտի խօսիմ – սակայն հակառակ այս վերջին ժամու գիրկընդխառնումին՝ մեզ՝ դրսիններուս՝ բնաւ կարելի չէ ընդունիլ որ 1896-ի, 1898-ի Ընդհ. Ժողովները չի ճանչցող մէկը – համար չի տալու համար չի ճանչցող, եւ այսուհետեւ ալ համար տալու պարտքէն ազատած՝ քանի որ կուսակցութեան գլուխն անցած է իրօք եթէ ոչ ըստ օրինի – կարենայ իրեն համախոհ խմբակին հետ հրապարակի վրայ հանդիսաւորապէս ներկայանալ իբրեւ այդ Ընդհ. Ժողովներէն իսկ արտօնուած, իբրեւ անոնց կողմէ ձեռնհաս կարգուած միացման հարցին վրայ խօսելու եւ բանակցելու:*

*Ես կը գտնուիմ ուրեմն հանդէպ այնպիսի մարմինի մը՝ որ ընտրուած չէ, որ տարիներէ ի վեր ունեցած է պաշփպօզուգներու յատուկ զարտուղի ընթացք մը, ընկերներուն դէմ ըմբոստ, գործերուն մէջ կամայական եւ անհաւատարիմ, որ յաջողեր է վերջերս ձեռքն անցընել այնպիսի իշխանութիւն մը որ իրեն Վեր. Հնչ. կուսակցութեան կողմէ տրուած չէ ոչ հիմնական կանոնին գծած ձեւովը եւ ոչ ալ ուրիշ կերպով, եւ որ կը կրէ կեդր. Վարչութիւն անունն որ իրենը չէ:*[45]

Ուրեմն, ըստ Մխիթարին, Վահէ Արզուեան կը դառնայ անօրինականութեան կեդրոնը։ Մինչդեռ 1896-ի եւ 1898-ի վարչութիւնները օրինական էին։ Գիտենք, որ այս վարչութիւններուն մէջ ղեկավարի դեր ունէր Արփիարեան, որուն հետ, ինչպէս պիտի տեսնենք, Մխիթար աշխատած էր միութեան հարցի առնչութեամբ։ Մխիթար չի նշեր Արփիարեանի անունը։ Նոյնիսկ եթէ նշէր, *Դրօշակ* պիտի չընդունէր տպագրել զայն՝ իր կողմէն 1899-ին յառաջացուցած փոթորիկէն ետք։

Հարցը իր էութեան մէջ Արփիարեան-Արզուեանի հակադրութիւնն էր, զոր մէջտեղ կը հանէին, այս անգամ, Դաշնակցականները։ Վերջիններուն նպատակն էր, անկասկած, Մխիթարի խօսքը պատշաճեցնել իրենց շահերուն։ Նիւթէն բոլորովին հեռու կը մնայ այս շահերուն մասին անդրադառնալ, բայց կը բաւէ մատնանշել՝ որ նամակը գրուած է (20 Ապրիլ 1902) Հնչակեան-Վերակազմեալ Հնչակեան միութենէն մէկ ամիս ետք։

1902 Յուլիսին *Անահիտ*ի մէջ Չօպանեան շատ երկար յօդուած մը կը գրէ՝ «Միութեան խնդիրը» խորագիրով։[46] Թիրախը՝ *Դրօշակ*ի Յաւելուածի Մխիթարի նամակն է։ Մտահոգութիւնը՝ Մխիթարին խօսքը կը հանդիսանայ Հնչակեան-Դաշնակցութիւն «միութիւնը վիժեցնել ձգտող այլանդակ գրութիւն մը»։[47]

Յօդուածը գրաւած է *Անահիտ*ի ճիշդ կէսը (12 էջ, գրութիւն պարունակող ընդամէնը 24 էջերէն), որ կը նշանակէ նիւթին խիստ կարեւորութիւնը Չօպանեանի համար։

Չօպանեանի խորագիրին «միութիւն»-ը կը վերաբերի Հնչակեան-Դաշնակցութիւն միութեան, իսկ յօդուածը հանդէս կու գայ Հնչակեան-Վերակազմեալ միութեան անհամաձայնութիւններու սկզբնական շրջանին։ Չօպանեան միշտ պաշտպանած է արզուեանական կողմը, եւ իր յօդուածը կը հետեւի այս ուղղութեան։ Ասիկա արդէն պիտի բացատրէ՝ թէ ինչու Չօպանեան պիտի ընդդիմանայ Մխիթարի նամակին եւ պնդէ որ յետ-արփիարեանական շրջանին Վերակազմեալները ունեցած են պաշտօնական վարչութիւն, քանի որ անոր ղեկավար ուժերէն մէկն էր Արզուեան։ Միաժամանակ, յօդուածը անուղղակի պաշտպանութիւն մը պիտի ըլլար քայքայուիլ սկսած Հնչակեան միութեան կողմերէն մէկուն՝ Վերակազմեալներուն, որուն առաջնորդն էր դարձեալ Արզուեան եւ իր խմբակը։

Չօպանեան դժգոհ է.

*Պ. Մխիթարի համեմատ, ուրեմն՝ անկարելի եւ անօգուտ է այլ եւս միութիւնը, - եւ ասի՝ Վեր. Հնչակեաններուն յանցանքովը, եւ մասնաւորապէս այն Վեր. Հնչակեան գործիչներուն որ* 1901 *օգոստոսէն ի վեր Հնչակեան կուսակցութիւնը փրկեցին Արփիարեանի բերած աւերումէն։ Պ. Մխիթար կը զգացնէ թէ միութեան բանակցութիւնները կարելի պիտի ըլլար շարունակել եթէ* 1898-ի *պատգամաւորական ժողովէն ընտրուած վարիչները բոլորն ալ – այսինքն Արփիարեան, եւն. – գործի գլուխը մնացած ըլլային։*

Ապա կ՚աւելցնէ.

*Պ. Մխիթար աւելի առաջ կ՚երթայ եւ Վեր. Հնչակեաններու վերջին վարիչ մարմնոյն եւ մանաւանդ պ. «Վահէ»-ին դէմ կ՚ուղղէ այնքան ծանր որքան տխմար ամբաստանութիւններ:*[48]

Իսկ բուն սլաքը Չօպանեան մանրամասնօրէն կ՚ուղղէ Արփիարեանին դէմ, զայն համարելով Մխիթարի նամակին հեղինակակից եւ անոր հասցէագրելով բազում ամբաստանութիւններ (Չօպանեանի հեգնանքով յիշատակած «վերջին խօսք»-ը կը վերաբերի այս նամակին).

*Այդ «վերջին խօսք»-ին մէջ յիշատակուած իրողութիւնները (?) եւ նկատողութիւնները ամենամեծ մասամբ՝ Արփիարեանի աղբիւրէն կը բղխին, կարելի է նոյն իսկ ըսել թէ այդ «վերջին խօսք»-ը Արփիարեան-Մխիթար աշխատակցութեան մ՚արդիւնք է. եւ ասի միայն բաւական է գաղափար մը տալու համար այդ իրողութիւններուն եւ նկատողութիւններուն ճշդութեան եւ լրջութեան աստիճանին վրայ: Պ. Մխիթար որ այժմ Արփիարեանը կը նկատէ իբրեւ ճշմարտութեան հասնելու լաւագոյն միջոցը եւ որ անոր հետ տեսակ մը Երկեակ Նիզակակցութիւն կազմած է՝ Հնչակեանութիւնը կործանելու «ազգասիրական» նպատակով, 1900-ի յունիս 23-ին Անգլիայէն ինծի ուղղած մէկ նամակին մէջ հետեւեալը կը գրէր Արփիարեանի մասին. «Կրնաս առանց զղջումի մը երկիւղին, դատապարտել քու ներքին ատեանիդ առջեւ այս ամենախղճալի թեթեւսօլիկը, որ միանգամայն ոճրագործ մը կրնայ համարուիլ: Մարդ սպաննելը է՛ն թեթեւ ոճիրն է, ատկէ աւելին կայ:» Իսկ բերանացի կերպով՝ ինծի, ինչպէս ուրիշ շատ անձերու, պ. Մխիթար հազար անգամ ըսած է այդ շրջանին՝ թէ Արփիարեանը ո եւ է անկեղծութեան, ո եւ է լրջութեան անկարող անձ մըն է, թէ՝ ո եւ է խօսք որ Արփիարեանին բերնէն կ՚ելլէ, չի կրնար ճշմարիտ ըլլալ՝ քանի որ Արփիարեանին բերնէն կ՚ելլէ: Շահեկանութենէ զուրկ չէ այստեղ յիշել նաեւ այն կարծիքը զոր այդ թուականին Արփիարեան ունէր Մխիթարի մասին, 1900-ի օգոստոս 11-ին ինծի գրած մէկ նամակին մէջ: Արփիարեան, խօսելով այն բանակցութեանց մասին զոր պ. Մխիթար ունեցած էր «օրինաւոր» կեդրոնին հետ եւ մասնաւորապէս այն վարմունքին մասին զոր ունեցեր էր իրեն նկատմամբ անձնապէս, հետեւեալը կ՚ըսէր. «Մօտերս ***ին պիտի ղրկեմ ուրիշ նամակներ ալ, ապրիլ-մայիսին ստացուած, որոնք շատ տխուր գոյնով մը պիտի լուսաւորեն Մխիթարին ընթացքը. սկսիլ քաղցրութեամբ, շարունակել սպառնալիքով, վերջացնել դաւաճանութեամբ, ահա իր ընթացքը:» Այս երկու մարդիկը, որ իրարու վրայ այսքան սիրուն գաղափար մը ունէին ճիշտ այն պահուն ուր «օրինաւորութեան բոլոր պայմաններուն մէջ» բանակցութիւններ կը կատարէին իրարու հետ, հիմա «եղբայր եմք մեք» կ՚երգեն կոր անամպ համերաշխութեան գրկապնդումի մը մէջ:*[49]

Եւ տակաւին երկար կը շարունակէ Չօպանեան։ Ամբողջ խնդիրը ուղղակիօրէն թէ անուղղակիօրէն կը կեդրոնանայ Վերակազմեալներուի Արփիարեանի եւ

Արզուեանի շրջաններուն վրայ։ Մխիթար հարցը կը դնէր սեւ-ճերմակ հակադրութեամբ, Արփիարեանի շրջանը՝ գերազանց, ընդդէմ Արզուեանի շրջանին՝ շատ վատ։ Չօպանեան հարցը նոյնպէս կը դնէ սեւ-ճերմակ հակադրութեան վրայ, բայց հակառակ բեւեռումով, Արփիարեանի շրջանը՝ շատ վատ, ընդդէմ Արզուեանի շրջանին՝ գերազանց։

Վահէ Արզուեանը պաշտպանելու պարտականութիւնը ստանձնած է Չօպանեան։ Չօպանեանի սերտ կապը արզուեանականներուն հետ ակներեւ կը դառնայ նաեւ Արզուեանի ամերիկեան յենակներէն Կարապետ Փափազեանի 1901 Դեկտեմբեր 20 թուակիր նամակներէն մէկուն մէջ՝ ուղղուած Լոնտոնի Վերակազմեալներու վարչութեան, ուր գրուած էր.

*Արշակ* [Չօպանեան] *ինծի* [Յովհաննէս] *Շահնազարին նկատմամբ շատ մը տեղեկութիւններ հաղորդած էր։*[50]

1902 Օգոստոսին, Վենետիկի մէջ Արփիարեան կը հիմնէ *Հայ հանդէս* կիսամսեակը։

Արփիարեան զայրացած է որ Չօպանեան կը հրատարակէ անձնական նամակներ, հետեւաբար *Հայ հանդէս*ին մէջ զայն կ՚անուանէ «անպատիւ մարդ» իսկ կատարածը՝ «անպատիւ գործ»։ Ան կ՚առարկէ՝ որ իր եւ Մխիթարի միջեւ եղած անհասկացողութիւնը ժամանակաւոր բնոյթ ունէր.

*Երկու բարեկամ օր մը իրարու հետ անհամաձայն գտնուելով, իրենց փոխադարձ գանգատները իրենց ուրիշ մէկ բարեկամին կը հաղորդեն։*[51]

Չօպանեան՝ անպատիւ մա՞րդ։ Քիչ մը շատ է։ Չօպանեան կը պատասխանէ՝ Արփիարեանի գրութիւնը նկարագրելով իբրեւ «բարբաջանք», իսկ Արփիարեանը ներկայացնելով իբրեւ «այլանդակ նկարագիր» ունեցող անձ։[52] Կը գրէ՝ թէ հանրային կարեւորութիւն ունեցող խնդիր մըն է միութեան հարցը։ Անհարժեշտ էր նամակներէն քանի մը հատուած հրապարակել, որպէսզի Մխիթար եւ Արփիարեան չյաջողէին տապալել հայութեան համար այնքան այժմէական Հնչակեան-Դաշնակցութիւն միութեան հարցը։ Անոնք ամէն գնով կ՚ուզեն տապալել այս հայրենանուէր աշխատանքը։

Արփիարեան սեւ հոգի մըն է, որ ստութիւնն ու քսութիւնը ցնորական աստիճանի կը հասցնէ.

*Արփիարեան կը դպչի այնպիսի կարեւոր խնդիրներու, կարգ մը իրողութիւններ կը ներկայացնէ այնքան ահաւորապէս խեղաթիւրուած ձեւով մը, ստութիւնն ու քսութիւնը այնպիսի ցնորական աստիճանի մը կը հասցնէ, որ, դժբախտաբար, հակառակ ամբողջ*

*զգուանքին զոր ատի կը պատճառէ ինծ, պարտք կը զգամ հարկ եղած զոհողութիւնը յանձն առնել՝ այդ սեւ հոգիին ներսիդին անգամ մը եւս պայծառօրէն ցոյց տալու համար ամենուն: Այդ զոհողութիւնը յանձն կ՚առնեմ՝ միմիայն սա նկատումէն մղուած. – Արփիարեան, Հնչակեան կուսակցութենէն վտարուելէն ի վեր, ջանք չմնաց որ մութին մէջ չթափէր արգելքներ բարձրացնելու համար Միութեան յաջողմանը դէմ:*[53]

Ահաւասիկ Արփիարեանի կարճ պատասխան մը *Հայ հանդէս*ի 1902 Սեպտեմբեր 15 թիւին մէջ, որ կը վերջանայ այսպէս.

*Բարեբախտաբար Պ. Ջօպանեանին բոլոր գրածները սուտ են: Ու մենք անոնցմով պիտի չզբաղէինք եթէ Անահիտի ետին չտեսնէինք զինքը վարձողները:*[54]

«Զինքը վարձողներ» ըսելով յստակօրէն նկատի ունի Վահէ Արզուեան, թէեւ անոր անունը տակաւին չէ յիշատակած։ Բայց յաջորդ՝ Հոկտեմբեր 1 թիւին մէջ, կտրականապէս հերքելով իր մեղսակցութիւնը *Յառաջ*ին մէջ տպագրուած Մխիթարի նամակին հետ, Արփիարեան կը շեշտէ Արզուեանին անունը «պաշը պօզուգ»-ի դերի մէջ.

*Ջօպանեան կը ջանայ ինծի վերագրել Մխիթարին կողմէն Դրօշակին գրուած նամակի մը պարունակութեան պատասխանատուութիւնը: Արդ՝ Անահիտ եւ իր խմբագիրն են այդ լուրերը տարածողը: Պ. Ջօպանեան Պ. Արզուեանին պարզապէս պաշը պօզուգի դեր մը կուտայ: Մխիթարին ի միջի այլոց հետեւեալ սուտն ալ ըսած է.*
*- Անո՞նք ով են – Հնչակեանները – որ Վահէն իր առած ստակներուն հաշիւը անոնց պիտի տայ:*[55]

*Հայ հանդէս*ի Հոկտեմբեր 15-ի թիւը շատ աւելի կը կեդրոնանայ Արզուեանի վրայ։ Արզուեան-Ջօպանեանի խումբը «տօլանտրճիներ» անուանելէ ետք կը գրէ.

*Պ. Ջօպանեան յուլիսի Անահիտին մէջ կը գրէ. «Վահէին (Արզուեան) Պոլիս երթալէն ի վեր է որ վեր. Հնչակեան կուսակցութիւնը վերանորոգուեցաւ եւ բոլոր Հնչակեանները երախտագէտ են այդ անկեղծ ու քաջ յեղափոխականին որ իր վրայ դրուած յոյսերը լիովին վարձատրեց՝ իր կեանքը վտանգելով ատոր համար:»*
*Հարցումներ: Որո՞ւն համար:*
*Պ. Արզուեանին «վրայ դրուած յոյսերը»: Ինչէ՞ն գիտէ թէ այդ յոյսերը «լիովին վարձատրած» է: Արդեօք Պ. Արզուեան իր տեղեկագիրը Անահիտի՞ խմբագրութեան խրկեց: Արդեօք իր համարատուութիւնը Պ. Ջօպանեանի՞ն ըրաւ: Անահիտի խմբագիրը բան մը չի կրնար գիտնալ. վասնզի Պ. Արզուեան չէր կարող Հնչակեան կուսակցութեան գործերը իրեն հաղորդած ըլլալ: Ուրեմն, ինչ որ Պ. Ջօպանեան կը գրէ, պէտք է սուտ ըլլայ: Եւ ինչո՞ւ այս սուտը: Ջգենք որ չհասկցանք թէ ինչ ըսել կ՚ուզէ «իր վրայ դրուած յոյսերը լիովին*

*վարձատրեց» բացատրութեամբ: Մարդ մը կրնայ վարձատրուիլ իր ըրած գործերուն համար. գործ մը, կրնայ վարձատրուիլ: Բայց յոյս մը ի՞նչպէս կրնայ վարձատրուիլ:*

*Պ. Ջօպանեանին ո՞վ պաշտօն տուաւ հրապարակաւ թարգման հանդիսանալ Պ. Արզուեանի նկատմամբ Հնչակեան կուսակցութեան երախտագիտական զգացումներուն: Կուսակցութեան օրինաւորապէս գումարուած ընդհանուր ժողովն է, որ յանուն կուսակցութեան երախտագիտութիւն կամ դժգոհութիւն կը յայտնէ, յետ լսելու եւ քննելու կեդրոնին համարատուութիւնը:*

*Պ. Ջօպանեան* 1900 *նոյեմբերի Անահիտին մէջ – որ ուշ հրապարակ ելաւ, - կը գրէր թէ Պ. Արզուեան ո՛ եւ է յարաբերութիւն չունի Հնչակեան կուսակցութեան հետ: Պոլսոյ ուղեւորութեանը համար պարզապէս դրամական աջակցութիւն մը ստացած է: Այս հաւաստումը ստո՞յգ է: Եթէ ստոյգ է, այն ատեն Պ. Արզուեանին Պոլսոյ ուղեւորութիւնը եւ անոր հետեւանքները ո՛ եւ է վերաբերութիւն չունին Հնչակեան կուսակցութեան հետ: Պ. Արզուեան ինքն իր հաշուոյն գործած է, ինչու ուրեմն Հնչակեան կուսակցութիւնը երախտագէտ մնայ: Իսկ եթէ այս հաւաստումը ստոյգ չէ, ինչո՞ւ գրեց, եւ եթէ ստոյգ է, ինչո՞ւ հիմակ տարբեր կը գրէ: Այս հարցումին պատասխանը շատ կարեւոր է, տօլանտրճիական ծրագիրներուն խնդրին լուսաբանութեանը համար:*[56]

*Հայ հանդէս*ի 1902 Նոյեմբեր 1 թիւին մէջ Արփիարեան կը յայտարարէ, որ յարմար ժամանակին, բայց ոչ հիմա, պիտի հրատարակէ Հնչակեան Մասնաճիւղին գրած ու գրելիք նամակները, որոնց շնորհիւ պիտի բացայայտուին «տօլանտրճի» խմբակին դրամական մուտքերը եւ պարզաբանուի թէ ինչու Չօպանեան ստանձնած է «զրպարտիչ ստախօսի պաշտօն»:[57]

Վերջին յարձակում մը եւս Արփիարեանի կողմէ Նոյեմբեր 15 թիւին մէջ.

*Տօլանտրճիական խմբակ մը հայ ժողովուրդը խաբելու, դրամ շորթելու կը հետամտի: Պ. Ջօպանեան իր Անահիտը անարգ գործիքն է այդ խմբակին, որուն չորս տարուան ձեռնարկներուն պատմութիւնը այժմ ամբողջապէս գիտենք: Ուր որ պէտք է կը հաղորդենք, եւ կը հրապարակենք երբ կարգը գայ:*

*Տօլանտրճիութիւնը կը շարունակուի, եւ պիտի շարունակուի: Հայ ազգին համար քանի մը հազար ոսկիի դրամաշորթութիւնը մեծ աղէտ մը չէ, բայց վտանգը հոն է որ այդ դրամը շարունակաբար շորթելու համար, անխուսափելի հարկ մըն է ազգին գլխուն մեծամեծ փորձանքներ բերելը: Անցեալը մէջ տեղ կեցած է:*[58]

Միշտ յիշենք որ Արփիարեանի համար գլխաւոր «տօլանտրճի»-ն Արզուեանն է:

*Հայ հանդէս*ի յաջորդ երկու թիւերուն՝ 1903 Յունուար 1 եւ 15, Արզուեան-Չօպանեանի մասին խօսք չկայ: Իսկ Չօպանեան *Անահիտ*ի 1902 Օգոստոսէն ետք այս հարցի առնչութեամբ լռութիւն կը պահպանէ:

## 8. ԵՐԿՐՈՐԴ ՄԱՀԱՓՈՐՁ

*Հայ հանդէս*ի 1903 Յունուար 15-ի թիւը (թիւ 10) պիտի ըլլար վերջինը։ 1903 Փետրուար 22-ին Վենետիկի մէջ տեղի կ'ունենայ երկրորդ մահափորձը իր դէմ։

Հ. Մկրտիչ Վրդ. Պոտուրեան քանի մը վարդապետներու հետ կը փութայ հիւանդանոց.

*Բարեկենդանի օրերուն էր, երբ Ս. Ղազարու վանականները հրաւիրուած էին ներկայ ըլլալ թատերախաղի մը, Վենետիկեան որբանոցի մը տնօրէնութեան կողմէ։*

*Հոն էի, քանի մը երիտասարդ վարդապետներու հետ, վանքին եւ Մուրատ Ռափայէլեանի աշակերտներով։*

*Առաջին արարին վարագոյրը չէր իջած, երբ մեր վարդապետներէն մէկը ներս մտաւ, եւ առանց սպասելու որ վարագոյրն իջնէ եւ սրահին լոյսերը բացուին, գուժեց ականջիս - «Արփիարը զարկի՜ն...»։*

*Խումբ մը վարդապետներ թողուցինք թատերասրահը եւ շտապեցինք այն հիւանդանոցը ուր փոխադրուած էր Արփիար։*

*Խոր քունով անշարժ էր մահճակալին մէջ, թմրեցուցիչի ազդեցութեան տակ։ Քովը, գթութեան մայրապետ մը կը հսկէր։ Վէրքը մահացու չէր բարեբախտաբար, եւ ի դժբախտութիւն՝ զինք սպաննել ուզողներուն։*

*Սպասեցի որ արթննայ։*

*Կէս ժամ ետք արթնցաւ, ու ժպիտ մը գծագրուեցաւ դէմքին վրայ։*

*- Անցած ըլլայ, Պր. Արփիար։ Երա՞զ է թէ իրականութիւն։ Ո՞ր գինովին հարուածը քեզ հոս բերաւ։*

*- Նորավէպդ տպեցի՞ր. գէշ չէ, տպէ...*

*- Ձգէ՛ հիմա հին վիպակները, այս նոր նորավէպին նայինք։ Ի՞նչ կը նշանակէ այս դէպքը։*

*- Զիս սպաննել ուզեցին, բայց չյաջողեցան. ուրիշ ոչինչ։ Գիտէի արդէն։ Ինծի գրած էին Եգիպտոսէն, բայց լուրջի չէի առած եւ գրեթէ մոռցած էի։*

*- Ժամը քանիի՞ն պատահեցաւ։*

*- Տասնին երբ տուն կ'երթայի, հրացանի հարուածի մը ձայնը լսեցի հատ մըն ալ ետեւէն. չորս կողմս նայեցայ, ոչ ոք չկար։ Քիչ մը առաջ գացի, զգացի որ վիզէս քրտինք կը վազէ։ Քրտինքս սրբեցի, եւ փողոցի լամբին տակ թաշկինակիս նայեցայ, ու տեսայ որ արիւն է եղեր... Խեղճ մոլորածի մը քաջագործութիւնը...*[59]

Այս մոլորած-մարդասպանն էր արաբկիրցի Մարտիրոս Հացագործեան (Էքսէրճեան)։[60]

Վենետիկի մահափորձէն ետք, Արփիարեան 1903 Մարտ 18 թուակիր նամակ մը կը գրէ Երուանդ Օտեանին, Գահիրէ, որմէ հատուածներ կը հրատարակէ Օտեան իր յայտնի յուշագրութեան մէջ։ Ահաւասիկ նամակին այն հատուածը՝ որ կը վերաբերի իր սպանութեան.

*«Այս ամենէն ետքը դիպուածիս մասին երկար չեմ գրեր: Ինչպէս որ արդէն գրած էի, Վահէին գործն է: Առաջին տպաւորութիւնս հաստատուեցաւ կարգ մը իրողութիւններէ որոնք անծանօթ էին ինծի: Նախապատրաստութիւնները տեսնուած էին Անահիտի միջոցաւ երկու տարիէ ի վեր: Վերջերս շատ խայտառակութիւններ եղեր է, չէի գիտեր: Իր «Հնչակեան»ները սկսեր են իրեն դէմ ելլել, բոլոր ըրածները մէջտեղ հանել, շատ մը բաներ: Ես այս ամէնը չգիտնալով՝ Ամերիկա գրած էի Յունուար 1-ին որ սա մեր հաշիւներն ալ կարգադրեն, ու մեր վարչութեան օրուան տեղեկագիրը պատրաստեն ու մենէ հաշիւ ուզեն: Վահէն եւ սօուք Հէրիֆը հասկցած են որ իմ պահանջումներս շատ գէշ պիտի ըլլան եւ մեծ կշիռ պիտի ունենան ուրիշ ամբաստանութեանց քով. եւ որովհետեւ ես շատ բան գիտեմ, շատ թուղթեր ունիմ, ուստի կործանումնին ինէ կը վախնան: Եւ մտածել որ այսօր 16-18 ընտանիք Եւրոպա ու Ամերիկա պիտի ապրին կուսակցական դրամով, առանց բան մը ընելու. հացի խնդիր: Եւ Վահէն է որ ինքն ալ մեծ գումարի պէտք ունենալով հանդերձ, միւսներն ալ պիտի հոգայ: Իմ մահուանս մէջ փնտռած են քիչ մը ապահովութիւն թէեւ չմեռայ, բայց դեռ հոս մարդ կը սպասցնեն կոր, սակայն ոստիկանութիւնը զգուշութիւններ ձեռք առաւ ու եռեւէս պտտող նոր «հերոս»ը այս օրերս աներեւութացաւ, վասն զի ճանչցուեցաւ: Անշուշտ նոր մը կը ղրկեն:*

*«Զիս սպաննելու թէրօրներէն մին Ալեքսանդրիայէն էր. ըսաւ թէ կօչկարար է. հաւանաբար սուտ է: Բայց Ալեքսանդրիայէն ըլլալը իրաւ է, զի շատ մը նոր տեղեկութիւններ հարցուցի եւ ամէնուն ճիշտ պատասխան տուաւ:»*[61]

Օտեան Աղեքսանդրիայէն 1903 Մայիս 12 թուակիր նամակով կը պատասխանէ Արփիարեանին.

*Վահէն հոս էր, հիմակ ալ հիւանդ պառկած է եղեր Բոր-Սայիտ: Գուշակութիւնդ ճիշդ է, իր գործն է եղեր քեզի դէմ եղած սպանութեան փորձը: Գահիրէի մէջ որոշեր են, Ատոմ Ասլանեանի տանը, մարդն ալ Գահիրէէն գտեր ղրկեր են: Գահիրէ ամէն մարդ գիտէ ասիկա: Նոյնիսկ իտալական ոստիկանութենէն տեղեկութիւն եկեր է հոս, եւ այս տեղի ոստիկանութիւնն ալ խուզարկութիւն կը կատարէ եղեր:*

*Հոս ալ դաշնակցական մը ինծի ըսաւ, որ Վահէն Ալեքսանդրիա գտնուած միջոցին իրենց տղոցմէ մէկուն դիմեր է եւ առաջարկեր է զինքը Եւրոպա ղրկել եւ հոն մէկը սպաննել, եւ 40-50 ոսկի խոստացեր է, մարդն ալ եկեր, իր մեծերուն խօսեր է, եւ անոնք ալ արգիլեր են իրեն երթալ:*

*Քու վրայ եղած փորձին ատեն Վահէն Գահիրէ էր, յետոյ հոս եկաւ ու բաւական ժամանակ հիւանդ պառկեցաւ. օր մըն ալ իմացանք, որ շոգենաւով մեկներ է, երէկ ալ լուր առի, թէ Բոր-Սայիտ հիւանդ պառկած է եղեր: Կ'երեւայ, որ շոգենաւին մէջ հիւանդացեր ու ստիպուեր է Բոր-Սայիտ ցամաք իջնել. Շահնազարը ամիսուկէս կայ հոսկէ մեկնեցաւ Թիֆլիզ, լուր ունի՞ս: Քու վրայ եղած փորձին առթիւ սոսկալի կատղած էր Վահէին դէմ, նոյնիսկ միտք ունէր բաներ մը հրատարակել: Իրեն գրած նամակդ Գահիրէի մէջ ամէնուն ցուցուցեր է եւ Վահէին դէմ սոսկալի խօսքեր ըրեր է. ան ալ կատղած էր, այս պատճառաւ, Շահնազարին դէմ:*[62]

Կարապետ Փափազեան մահափորձին առնչութեամբ կը բացայայտէ վերամբարձ ու արհամարհական կեցուածք մը, որ բնաւ զարմանալի չէր.

*Մեզի համար՝ Արփիարի անձը դադրած է ո՛եւէ նշանակութիւն ու շահեկանութիւն ունենալէ, այն օրէն ի վեր, որ ան՝ Հնչակեան կուսակցութենէն անգա՛մ մը դուրս՝ տխուր քաջութիւնն ունեցաւ հրապարակաւ դաւելու Հնչակեանութեան դէմ: Մեզի համար՝ Արփիար կը դադրէր Հնչակեան մը ըլլալէ, ա՛յն վայրկեանէն իսկ որ ան յայտնապէս կը մեղանչէր կուսակցական եւ յեղափոխական կարգապահութեան տարրական օրէնքներուն դէմ: Թէ հո՛տ կը վերջանայ Արփիարի բոլոր յանցաւքը՝ ատիկա ալ մեր գիտնալիք բանը չէ՛, այլ Հնչակեան Ընդհ. Պատգ. Ժողովին գործն է: - Այսչափ՝ ճշդելու համար մեր դիրքը Արփիար անձին վերաբերութեամբ:*[63]

Մահափորձէն շուրջ քսան տարի ետք՝ 1922-ի աշնան, Պուքրէշի հայաշատ Մոշիլոռ պողոտան գտնուող գարեջրատան մէջ Մկրտիչ վարդապետ Պոտուրեան պատահաբար կը հանդիպի մարդասպանին։ Վերջինս կը սկսի զրոյցը.

*- Կը յիշէ՞ք այն տարին երբ Արփիար Արփիարեանը վիրաւորեցին:*

*- Այո, պարոն, 1907-ին* [իմա՝ 1903-ին, Հ.Ա.] *էր, լաւ կը յիշեմ, Ղեւոնդեանց կամ Վարդանանց տօնին օրը, երբ կատարուեցաւ այդ մահափորձը Արփիարի դէմ:*

*- Ես այն տարին հոն էի, ո՛րքան երիտասարդ, ո՛րքան տաքարիւն... Երբ Արփիարը գետին ինկաւ, մութին մէջ էր... կը դիտէի... ամէն անկիւնէ խալացիներ հոն կը վազէին, մինչ Արփիար, ուշաթափ փռուած էր սալայատակին... օտարները շրջապատեցին, հետզհետէ գալարուող հայը, որ չէր մեռած... Անծանօթները կը մեղքնային հէգ մարդուն վրայ, իսկ ես իմ անկիւնէս կ՛անիծէի բախտը որ գնդակը իր նպատակին չէր հասած...*

*- Ինչե՞ր կ՛ըսէք, պարոն, եղաւ պատասխանս, դուք այդքան չարամիտ մէկը չէք երեւիր...*

*- Այն ատեն այդպէս էր: Խենդ, անմիտ, խաբուած երիտասարդ մը որ կը հաւատար իրեն ըսուածներուն...*

*- Յետո՞յ, շատ մնացի՞ք Վենետիկ:*

*- Նոյն գիշերն իսկ արդէն չոգենաւ մտայ: Անցագիրս գրպանս էր, վիզա եղած: Իմ «գործս» վերջացած էր, աւելի ճիշդը, ձախողած...*

*Անծանօթը լռեց: Իսկ ես չուզեցի խանգարել, որպէսզի շարունակէ կէս մնացած իր խոստովանութիւնը: Եւ իրապէս, վերսկսաւ.*

*- Համաշխարհային պատերազմին Ռուսաստան թափառեցայ: Զինադադարին Պոլիս էի: Հոն, մեր յայտնի դէմքերէն մէկը օր մը կը գանգատէր մեր կուսակցութեանց գործած աւերներուն վրայ: Երբ խօսք եղաւ Արփիարեանի սպանութեան* [1908-ին] *շուրջ, գոչեցի.*

*- Զգէ՛ այդ վատը, մատնիչը, դաւաճանը...*

*Խօսակիցս, զարմացաւ, եւ որպէս պատասխան իմ երեք բառերուս, կրկնեց ինք իրեն. - «Անկաշա՛ռ, արդարախօ՛ս, ուղղամի՛տ այդ մեծ գրագէտը»:*

*Յետոյ ինծի տուաւ Թէոդիկի տարեցոյցը, ուր կարդացի Արփիարի մասին գրած իր*

*Հետեւեալ տողերը. - «Երբ Արփիար սալայատակին վրայ հոգին պիտի աւանդէր՝ վերջին անգամ գլուխը վերցուց եւ զինք շրջապատող օտարներուն ըսաւ, ՀԱՅ ԵՄ, ու մեռաւ»:*

*Երկար, շատ երկար լռութենէ մը ետք, Անծանօթը եզրակացուց.*

*- Վարդապե՛տ շատ ուրախ եմ որ Արփիարը քեզի անձամբ ծանօթ եղած է. կրկին ուրախ ու երջանիկ եմ որ հիւանդանոց այցելած էք եւ անշուշտ հոգացած: Անհունօրէն երջանիկ եմ որ չիմար խելքէս եկող գնդակովս չմեռաւ այդ մեծ մարդը: Ես այն ատեն մոլորած էի, չէի գիտեր: Կեցցէ՛ Արփիարը...*[64]

Արփիարեան չմեռաւ, բայց երկրորդ մահափորձով ամբողջ էջ մը փակուեցաւ իր գործունէութեան մէջ: Չշարունակեց *Հայ հանդէս*ը: Վահէ Արզուեան յաջողեցաւ, գոնէ ժամանակաւորապէս, լռեցնել Արփիարեանի խանգարիչ ձայնը:

Թէեւ Կարապետ Յ. Փափազեանի Պոսթոնէն Լոնտոնի Վերակազմեալներուն (Արզուեանին) ուղարկած 1901 Դեկտեմբեր 20 թուակիր վերոյիշեալ նամակը կ'ուղենշէ՝ որ այդ թուականէն Արփիարեանի դէմ դաւ մը կը պատրաստուէր, բայց մահափորձին բուն գործադրութիւնը տեղի ունեցաւ Հնչակեան պատմութեան ամենէն ցաւալի պահերէն մէկուն ժամանակ: Այսպէս, 1902 Մայիս 17-ին կը նշուի Հնչակեաններուն եւ Վերակազմեալ Հնչակեաններուն միութիւնը, որուն համար կարեւոր դեր խաղացած էր Արզուեան: Սակայն շուտով միութիւնը կը քայքայուի եւ Նազարբէկեան Հնչակեանները ու Արզուեան Վերակազմեալները կը սկսին փոխ-թշնամանք: Արզուեան ամէն պահու կը վախնար որ Արփիարեան լուրջ բացայայտումներ կատարէ եւ խանգարէ իր նկրտումները Վերակազմեալներու շարքերէն ներս:

Երկրորդ մահափորձով վերջ կը գտնէ Արփիարեանի կեանքի վենետիկեան շրջանը, որմէ ետք բաւական դժուարութեամբ կը վերագտնէ իր գրական կեանքը: Երկու եւ կէս տարի ետք միայն կը յաջողի անցնիլ Եգիպտոս, սկսելու համար իր ստեղծագործական կեանքի վերջին փուլը:

## 9. ՅԱՋՈՐԴՈՂ ՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Արփիարեանի մահափորձին անմիջապէս կը յաջորդէ Հնչակեաններու ու Վերակազմեալներու միջեւ փոխ-սպանութիւններու շարք մը.

- Ապրիլ 1903, Պաթում – Հնչակեանները կը սպաննեն Հնչակեան հերոս, յետագային Վերակազմեալներուն միացած Մխօ Շահէնին:

- 12 կամ 13 Յունիս 1903, Օտեսա – Հնչակեանները կը սպաննեն Ամերիկայի շրջանի Վերակազմեալներու օրգան *Ձայն հայրենեաց*ի խմբագիր Գարեգին Չիթճեանին:

- 7 Յուլիս 1903, Պոսթոն – Վերակազմեալները մահափորձ կը կատարեն

Հնչակեան Կուսակցութեան Ամերիկայի ներկայացուցիչ եւ *Երիտասարդ Հայաստան* լրագիրի խմբագիր Սապահ-Գիւլեանի դէմ։

- 19 Հոկտեմբեր 1903, Զուիցերիա – Վերակազմեալները մահափորձ կը կատարեն Աւետիս Նազարբէկեանի դէմ։

- 26 Հոկտեմբեր 1903, Լոնտոն – Վերակազմեալները կը սպաննեն Հնչակեաններու Կեդրոնական Վարչութեան նախկին անդամ Սագունիին (Սաղաթէլ Գէորգեան)։

- 4 Նոյեմբեր 1903, Լոնտոն – Վերակազմեալները կը սպաննեն Ռուսաստանի պատգամաւորներ Հարմին եւ Որսորդին (Սագունիի ընկերները)։

## 10. ԵՐԿՐՈՐԴ ՄԱՀԱՓՈՐՁԷՆ ԵՏՔ

Ինչպէս նշեցի, երկրորդ մահափորձէն ետք վերջնականապէս կը դադրի *Հայ հանդէս*ի հրատարակութիւնը։

Արփիարեանի անստորագիր կենսագիրը կը նկարագրէ անոր վիճակը մահափորձէն անմիջապէս ետք.

*Յետ այնմ Վենետիկեան Հայրերը Արփիարը իրենց գլխէն գրեթէ տէֆ ընելու համար յանձնարարականով մը Նափոլի Ստեփան Եազըճեանին ղրկեցին, որ Արփիարի ամենամօտիկ բարեկամներէն մէկն էր։ Արփիար այդչափ տառապանքէ վերջ այնչափ փոխուած էր որ գրեթէ անճանաչելի դարձած էր, վրայ գլուխ չկար, յետին աստիճանի խեղճութեան հասած Նափոլի հասնելով երբ առաւօտ մը նա իր բարեկամ Եազըճեանի գրասենեակին դուռը կը զարնէր, վերջինս կարծելով թէ ողորմութիւն խնդրող պարզ աղքատ մըն է զինքը այդ ժամուն անհանգիստ ընողը, վռնտած է. Արփիար կրկին եւս վճռական ճիգ մըն ալ ընելով մտած է ներս, ուր իր բարեկամը աչքերուն չի հաւատալով յանկարծ անոր դիմագծերուն մէջ գտած է իր հին բարեկամը եւ գրկախառնութեամբ մը օթեւան տուած է Արփիարին, ուր կարճ ժամանակ մնալէ յետոյ Արփիար ճամբայ ելած է դէպի Եգիպտոս։*[65]

Թէեւ Եգիպտոս փոխադրուելու հարցը դրուած էր մահափորձէն անմիջապէս ետք, բայց անոր գործադրութիւնը կ'ուշանայ մինչեւ 1904-ի կէսերը։ Երուանդ Օտեան ականատեսն է այս բոլորին.

*Վենետիկի մէջ Արփիարի վրայ կատարուած մահափորձը, թէեւ անյաջող, բայց բուռն զայրոյթ առաջ բերաւ Եգիպտոսի մէջ եւ շատ վնասեց վերակազմեալ Հնչակեաններու վարկին՝ միւս կողմէ հոս համակրութեան նոր հոսանք մը ստեղծեց դէպի Արփիարը եւ իր բարեկամներն ու համակիրները մտածեցին զինքը Եգիպտոս բերել եւ հոն գրական զբաղում մը ճարել իրեն։*

*Այս մասին յայտնուած փափաքները իրեն հաղորդեցի։ Արփիար համամիտ երեւցաւ։*

*«Եգիպտոս գալուս գաղափարը ինծի հաճելի է, կը գրէր* [1903] *Մայիս* 27 *Թուականով ինծի ուղղած մէկ նամակին մէջ, բայց կախում ունի Փիլիկի «խնդրէն», վասնզի Փիլիկի խնդիր մը ունիմ:*

*«Կարելի չեղաւ իբրեւ աշակերտ զինքը Մխիթարեան դպրոցը դնել: Տնօրէնը «սկզբունք» ունեցող վարդապետ մըն է, բարեբախտաբար միակը:*

*«Օրթագեղցի չընդունիր եւ Փիլիկը Օրթագեղ ծնած է, ինչ եւ է: Ճաշը կուտայ, ես ալ երկու սենեակ վարձած եմ, մէկը իրեն, միւսը ինծի: Հոս՝ սենեակ մը* 10 *ֆրանք է ամիսը, կահաւորեալ եւ ընդարձակ: Իմ հսկողութեանս տակ իտալական դպրոցները կ'երթայ եւ արուեստներ կը սորվի, երեք արուեստ հիմակուհիմա: Արդ՝ ես չեմ կարող զանիկա այս քաղաքին մէջ մինակ թողուլ: Սակայն ուրիշ վարդապետներ խոստացեր էին որ զինքը դպրոց դնել տան: Երբ հոն սենեակ ունենայ ու կանոնաւոր հսկողութեան տակ մտնէ ու հոնկէ երթեւեկէ իր դպրոցները, ես ալ այն ատեն հանգիստ սրտով կը մեկնիմ:*

*«Այս խոստումը արուած էր եւ անոր համար որոշած էի մեկնիլ: Չգիտեմ թէ պիտի կատարե՞ն, եթէ կատարեն՝ ան ատեն առանց ո եւ է արգելքի կրնամ գալ. այս օրերս յայտնի կ'ըլլայ:»*[66]

Դպրոցի հարցը կարգադրուեցա՞ւ թէ ոչ՝ յայտնի չէ, բայց Արփիարեան Եգիպտոս կրնայ գալ միայն 1904-1905-ի սահմանագլուխին: Փիլիկը կը թողու Իտալիա, մինչեւ կարողանայ իր ապրուստը ապահովել Եգիպտոսի մէջ:

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. «Արփիար Արփիարեան. կենսագրական համառօտ գծեր», *Լուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 20 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 485, էջ 2:

2. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 18 Սեպտեմբեր / 1 Հոկտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1220, էջ 1:

3. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 19 Սեպետմբեր / 2 Հոկտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1221, էջ 1:

4. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 25 Հոկտեմբեր / 7 Նոյեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1257, էջ 1:

5. Արսէն Կիտուր, *Պատմութիւն Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան 1887-1962*, Ա. հատոր, Պէյրութ, Հրատարակութիւն Ս. Դ. Հնչակեան Կուս. Պատմագրութեան Կեդր. Յանձնախումբի, 1962, էջ 273:

6. «Պոլսոյ ձերբակալութիւնները», *Նոր կեանք*, հանդէս ազգային, գրական, քաղաքական, Լոնտոն, 15 Սեպտեմբեր 1900, Գ. տարի, թիւ 18, էջ 286:

7. «Արզուեան եւ Գոչեան», *Նոր կեանք*, 1 Նոյեմբեր 1900, Գ. տարի, թիւ 21, էջ 335:

8. «Վարչապետին տագնապը», *Նոր կեանք*, 15 Սեպտեմբեր 1900, Գ. տարի, թիւ 18, էջ 283:

9. Անդ:

10. «Պոլսոյ ձերբակալութիւնները», *Նոր կեանք*, 15 Սեպտեմբեր 1900, Գ. տարի, թիւ 18, էջ 286-287:

11. «Արզուեան եւ Գոչեան», *Նոր կեանք*, 1 Նոյեմբեր 1900, Գ. տարի, թիւ 21, էջ 335:

12. Վահան Թէքէեան, «Մատնութիւն երկրորդ», *Լուսաբեր*, 18 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 510, էջ 1:

13. Արփիար Արփիարեան, «Արշակ Չօպանեան», *Նոր կեանք*, 1 Յուլիս 1900, Գ. տարի, թիւ 13, էջ 201:

14. Վահան Թէքէեան, «Մատնութիւն երկրորդ», *Լուսաբեր*, 18 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 510, էջ 1:

15. Ա. Ա., «Դիկտատորը», *Լուսաբեր*, 9 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 443, էջ 2:

16. Անդ, էջ 2:

17. Ա. Ա., «Երդմնադրուժները», *Լուսաբեր*, 12 Նոյեմբեր 1907, ԺԳ. տարի, թիւ 444, էջ 2:

18. Արսէն Կիտուր, նշ. աշխ.ը, էջ 277:

19. *Երիտասարդ Հայաստան*, շաբաթաթերթ, Պոսթըն, 4 Յուլիս 1903, առաջին տարի, թիւ 9, էջ 69:

20. *Երիտասարդ Հայաստան*, 8 Օգոստոս 1903, առաջին տարի, թիւ 14, էջ 108-109:

21. *Երիտասարդ Հայաստան*, 27 Յունիս 1903, առաջին տարի, թիւ 8, էջ 60:

22. Անդ, էջ 61:

23. Արսէն Կիտուր, նշ. աշխ.ը, էջ 277:

24. Անդ, էջ 277:

25. Արսէն Կիտուր, նշ.աշխ.ը, էջ 277:

26. *Երիտասարդ Հայաստան*, 1 Օգոստոս 1903, առաջին տարի, թիւ 13, էջ 100:

27. *Երիտասարդ Հայաստան*, 18 Յուլիս 1903, առաջին տարի, թիւ 11, էջ 84:

28. Արսէն Կիտուր, նշ.աշխ.ը, էջ 277:
29. Անդ, էջ 278:
30. *Հնչակ*, Լոնտոն, 1 Ապրիլ 1902, տասնեւհինգերորդ տարի, թիւ 1, էջ 1: *Նոր կեանք*, Լոնտոն, 15 Ապրիլ 1902, Ե. տարի, թիւ 1, էջ 1:
31. Կ. Յ. Փափազեան, [«Նամակ»], *Երիտասարդ Հայաստան*, 27 Յունիս 1903, Ա. տարի, թիւ 8, էջ 59:
32. Ա. Ա., «Երդմնադրուժները», *Լուսաբեր*, 12 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 444, էջ 2:
33. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 11/24 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1334, էջ 1:
34. Արսէն Կիտուր, նշ.աշխ.ը, էջ 282:
35. Անդ, էջ 282-284:
36. Անդ, էջ 284:
37. Ա. Ա., «Դիկտատորը», *Լուսաբեր*, 9 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 443, էջ 2:
38. Արսէն Կիտուր, նշ.աշխ.ը, էջ 284:
39. «Պաշտօնական յայտարարութիւններ», *Հնչակ*, տասնեւվեցերորդ տարի, թիւ 1, էջ 1:
40. «Պաշտօնական», *Ձայն հայրենեաց*, շաբաթաթերթ, Պոսթոն, 7 Փետրուար 1903, Դ. տարի, թիւ 172, էջ 1:
41. «Դիմակները պատռուեցան. դաւաղիրները դուրս», *Հնչակ*, 1 Յունուար 1903, տասնեւվեցերորդ տարի, թիւ 1, էջ 1:
42. «Յեղափոխական բարոյականը», *Ձայն հայրենեաց*, 21 Փետրուար 1903, Դ. տարի, թիւ 174, էջ 1:
43. «Միութեան բանակցութիւնները», *Դրօշակ*, Յաւելուած, Ժընեւ, Ապրիլ 1902, թիւ 4, էջ 1:
44. Անդ, էջ 2:
45. Անդ, էջ 2:
46. Ա. Չօպանեան, «Միութեան խնդիրը», *Անահիտ*, հանդէս ամսեայ, Փարիզ, Յուլիս 1902, Գ. տարի, թիւ 7, էջ 151-162:
47. Անդ, էջ 151:
48. Անդ, էջ 152:
49. Անդ, էջ 153-154:
50. *Երիտասարդ Հայաստան*, 27 Յունիս 1903, առաջին տարի, թիւ 8, էջ 60:
51. Ա. Ա., «Անպատիւ մարդ՝ անպատիւ գործ», *Հայ հանդէս*, ազգային եւ գրական կիսամսեակ, Վենետիկ, 1 Սեպտեմբեր 1902, Ա. տարի, թիւ 3, էջ 45:
52. Ա. Չօպանեան, «Ժամանցագրի մը վերջալոյսը», *Անահիտ*, Օգոստոս 1902, Դ. տարի, թիւ 8, էջ 184-187:
53. Անդ, էջ 184:
54. «Տրամաբանական», *Հայ հանդէս*, 15 Սեպտեմբեր 1902, Ա. տարի, թիւ 4, էջ 63:
55. Ա. Ա., «Յ. Գ. Պ.», *Հայ հանդէս*, 1 Հոկտեմբեր 1902, Ա. տարի, թիւ 5, էջ 74:
56. Ա. Ա., «Տագնապեալները», *Հայ հանդէս*, 15 Հոկտեմբեր 1902, Ա. տարի, թիւ 6, էջ 94-95:
57. «Կեղծարարները», *Հայ հանդէս*, 1 Նոյեմբեր 1902, Ա. տարի, թիւ 7, էջ 111:
58. «Պապանձումը», *Հայ հանդէս*, 15 Նոյեմբեր 1902, Ա. տարի, թիւ 8, Յաւելուած, էջ Դ:

59. Հ. Մկրտիչ Վրդ. Պոտուրեան, «Արփիար Արփիարեանի դէմ. Վենետիկի մէջ առաջին մահափորձը», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 15 Մարտ 1974, ԾԸ. տարի, թիւ 16.770, էջ 2:

60. «Ոճրագործին շուրջը», *Լուսաբեր*, 27 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 488, էջ 2:

61. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 9/23 Նոյեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1272, էջ 1:

62. Երուանդ Օտեան, *Նամակներ*, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, 1999, էջ 170-171:

63. Կ. Յ. Փափազեան, «Անելը», *Ձայն հայրենեաց*, 25 Ապրիլ 1903, Դ. տարի, թիւ 183, էջ 2:

64. Հ. Մկրտիչ Վրդ. Պոտուրեան, «Արփիար Արփիարեանի դէմ. Վենետիկի մէջ առաջին մահափորձը», *Արեւ*, 14 Մարտ 1974, ԾԸ. տարի, թիւ 16.769, էջ 2. 15 Մարտ 1974, ԾԸ. տարի, թիւ 16.770, էջ 2:

65. «Արփիար Արփիարեան. կենսագրական համառօտ գծեր», *Լուսաբեր*, 20 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 485, էջ 2-3:

66. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 9/23 Նոյեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1272, էջ 1. 10/24 Նոյեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1273, էջ 1:

## Դ.
## ՍՊԱՆՈՒԹԻՒՆ

### 1. ԴԷՊՔԸ

Արփիարեան կը սպաննուի 1908 Փետրուար 12-ին, երեկոյեան ժամը 9-ի մօտ, Գահիրէի Շարա Էլ Մանախ փողոցը, ատրճանակի երեք հարուածներով, Պետրոս Հիւսէնեանի (Հիւսընեան) ձեռքով: Կազմակերպողն էր Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան բռնատիրական թեւի առաջնորդ Վահէ Արզուեան եւ իր խմբակը:

### 2. ԲՆԱԿՈՒԹԻՒՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Յուսահատ Վենետիկի վիճակէն, Արփիարեան վերջապէս կ'որոշէ հաստատուիլ Եգիպտոս:

Ե՞րբ հասաւ Աղեքսանդրիա: «Պոլսէն վերադառնալէս քիչ ետքն էր երբ Արփիար Արփիարեան վերջնականապէս որոշեց Եգիպտոս գալ հաստատուիլ», կը յուշագրէ Երուանդ Օտեան:[1] Իսկ Օտեան Պոլսէն Աղեքսանդրիա հասած է 1904 Դեկտեմբերի կէսերը:[2] Ուրեմն, Արփիարեան Աղեքսանդրիա եկած է 1904 Դեկտեմբերի երկրորդ կէսին կամ 1905 Յունուարի սկիզբ: Աւելի ուշ չէր կրնար ըլլալ, քանի որ Յունուարին սկսած է աշխատակցիլ Աղեքսանդրիոյ *Շիրակ* ամսագիրին:

Օտեանի համաձայն, Արփիարեան որոշեց վերջնականապէս հաստատուիլ Եգիպտոս, «որովհետեւ այլեւս կեանքը անտանելի դարձած էր իրեն Իտալիոյ մէջ: Իր մէկ քանի յոյսերը ի դերեւ ելած էին եւ ապրուստի միջոցները սպառած:»[3]

Օտեան կը պատմէ.

*Նամակով մը իմ կարծիքս հարցուց Եգիպտոս գալու մասին ու միեւնոյն ատեն գրեց որ եթէ հնար է ճամբու ծախք մը ճարեմ իրեն:*

*Վերակազմեալ Հնչակեաններու մէջ մէկ քանի բարեկամներ ունէի, որոնց անկեղծութեան կը հաւատայի, ասոնք էին Օննիկ Թաշճեան, Բարսեղ Օհանեան եւ Շաւարշ Հովիւեան: Գացի զիրենք գտայ ու բացէ ի բաց ըսի իրենց.*

*- Արփիարը Եգիպտոս գալ հաստատուելու միտք ունի, եթէ հոս գայ զինքը կը սպաննէ՞ք:*

*- Ո՛չ, պատասխանեցին, որչափ ատեն որ Արփիար կուսակցութեան դէմ պայքար չմղէ, զայն վարկաբեկելու չաշխատի, հին հաշիւները չպրպտէ, կրնայ ապահով ըլլալ թէ իր մազին դպչող չպիտի ըլլայ:*

*Նոյնիսկ երբ իմացան իր նիւթական անձկութիւնը եւ ճամբու ծախքի պէտքը, պատրաստակամութիւն յայտնեցին իրենց անձնական քսակէն օժանդակելու:*

*Արփիարին հաղորդեցի այս ամէնը եւ ըսի որ քիչ օրէն կը յուսամ ճամբու ծախքն ալ ճարել ու ղրկել:*

*Բայց Արփիար արդէն իր գլխուն ճարը տեսեր էր ու նամակս առնելէն անմիջապէս ետքը ճամբայ ելած էր ու առտու մըն ալ եկաւ գիս գտաւ Ապու Տարտարի այն գործարանը, ուր կը գտնուէի:*[4]

Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի դահլիճին մէջ Երուանդ Սրմաքէշխանլեան (Երուխան) կը հանդիպի Արփիարեանին, Եգիպտոս հասնելէն երեք օր ետք։ Նիւթական ու բարոյական վիճակը շատ ծանր էր։ Վենետիկի մահափորձէն ետք տակաւին չէր կրցած վերագտնել ինքզինք։ Իրապէս, Արզուեան յաջողած էր լռեցնել զինք, այլեւ քայքայել իր կեանքը։

Այս առումով, Սրմաքէշխանլեանի տուած նկարագրութիւնը շատ խօսուն է.

*Երկու-քուկէս տարի առաջ, Աղեքսանդրիոյ Առաջնորդարանին մէջ, Թէլեան*[5] *օր մը ըսաւ ինծի.*

*- Արփիարը եկեր է. քեզ տեսնել կ՚ուզէ անգամ մը:*

*- Ի՞նչ վիճակի մէջ է:*

*- Մի՛ հարցըներ:*

*Իրաւ ալ չհարցուելիք բան էր այն վիճակը, որուն մէջ տեսայ հայ մամուլին պատկառելի վետերանը, - Առաջնորդարանին դահլիճէն ներս մտած ատենս, - որ սանկ կամացուկ մը, անկիւն մը նստեր էր հոն, բազկաթոռի մը ծարօքը, այն ճիտը ծուռ աղքատներէն մէկուն պէս որ առաջնորդարան կ՚իյնան ողորմութեան համար:*

*Անյարդար վարսերու աղեբէկ մացառուտք մը գլխէն մինչեւ վիզը կը ծածկէր զանիկա, անճանաչ խառնափնդոր բան մը դարձնելով, տեսակ մը աբբայ Մարկոս, ճգնութեամբ եղբայրներէն դուրս ելած. այդ մթութեան մէջ իր կարճատեսի սուր, հեգնող ու թափանցիկ աչուըները միայն կը կածկլտային միշտ: Ոտուըները ահագին սանդալի նման ոտնամաններ անցուցած էր, հաստաբեստ ներբանով, Սահարա կտրող անցնող անապատական ճամբորդի մը պէս: Խոշոր բալթօի մը մէջ կորսուած էր մարմինը: Ո՞ւր էր տասը տարի առաջուան Արփիարը: Խեղճութեան փլատակ մը:*

*- Բարեւ, միւսիւ Արփիար, ըսի ձեռքս երկնցնելով, զիս ճանչցա՞ր:*

*- Վա՛յ, դո՛ւն ես, Երուանդ. հաստցեր ես, տղայ. ի՞նչ կ՚ընես կոր աղէ՞կ ես, կը գրե՞ս կոր նորէն:*

*Իր երեւոյթէն կրած այլայլութեանս մէջ՝ չէի գիտեր ի՛նչ պատասխանել իր հարցումներուն: Բայց ան, առանց պատասխանի սպասելու, աչքերը սեւեռած կիսախուփ՝ անցեալին*

*մէջ պրպտումով մը.*

*- Գիտե՞ս, Արեւելքին մէջ 91-ին առաջին նորավէպդ գրեցիր, «Պապուկ» վերնագրով, կը յիշե՞ս. հաւնեցանք ան ատենը, մանաւանդ Հրանտը...:*

*Եւ գլուխը երերցնելով քթին տակէն կը խնդար...*

*Իսկ ես, այս յիշողութեան առջեւ ափիբերան, «Այո, կարծեմ անանկ բան մը եղաւ» կ'ըսէի, ես որ այդ «Պապուկ»-ին հեղինակն էի եւ որ սակայն տասնըվեց տարիներու մշուշին մէջէն հազիւ ուրեմն տարտամ ու աղօտ կերպով կ'ընդնշմարէի ատանկ գրուած մը: Բայց այդ մարդը յիշողութեան հրէշ մըն էր ուրեմն. անծանօթ սկսնակի մը ո՞վ գիտէ մէկ ի՛նչ խեղճ նորավէպը տարիներ ետքը, - եւ ի՜նչ տարիներ, յուզմունքի, փոթորիկի, պայքարի, արիւնի, նախճիրի ու անօթութեան ալ տարիներ, - յիշելու համար տեղնիտեղօք, երէկ եղած բանի մը պէս, մարդ սովորական մահկանացու մը ըլլալու չէ:*

*Ու գրգլիկներու կոյտի մը տակ մսկոտօրէն ու խելօքիկ մը պատսպարուած այդ մանրուկ եղկելի էակը յանկարծ հսկայացաւ աչքիս առջեւ, իր հզօր իմացականութեան ամբողջ փողփողանչոյլ հանդիսաւորութեամբը փայլեցաւ...*

*- Հոս ո՞ւր կը նստիք կոր, պարոն Արփիար:*

*- Եղբայր, երեք օրէ ի վեր եկած եմ. ի՛նչ զարմանալի երկիր է հոս. աժան է ըսին, ա՞ս է աժանը. նորէն Վենետի՛կ դառնամ ի՛նչ ընեմ, կ'ըսէր իր չփացած մանուկի թղկացող ձայնովը, բաճկոնին օձիքը միւս օձիքին վրայ բերելով:*

*Մեծ տարագիրը աստանդական կը շրջէր ուրեմն արտասահմանը, տեղ մը չունենալով պատսպարուելու, բարձ մը որուն վրայ հանգչեցնէր իր խոնճաբեկ ու գնդակոծ գլուխը...:*[6]

Եթէ Արզուեան հասաւ իր նպատակին, ո՞ւր էին մտաւորականները, գրասէրները, մշակութասէրները՝ օգնելու համար վերականգնել Արփիարեանը: Մշակոյթի մարդը միս-մինակ պէտք է տանի իր անձը, միտքերը եւ կեանքը:

1905 Յունուարին Վահան Թէքէեանի եւ Միքայէլ Կիւրճեանի խմբագրութեամբ եւ տնօրինութեամբ Աղեքսանդրիոյ մէջ կը հիմնուի *Շիրակ* գրական եւ ընկերական ամսաթերթը, որուն առաջին թիւէն կ'աշխատակցի Արփիարեան: 1905 Հոկտեմբեր 17-էն կը դառնայ Գահիրէի *Լուսաբեր* եռօրեայի խմբագիրը: Ապրուստի տեսակէտէն ապահով զգալով, Իտալիայէն կը բերէ Փիլիկին միասին բնակելու համար:[7] 1906 Յունիսին *Շիրակ* կը փոխադրուի Գահիրէ եւ Արփիարեան կը դառնայ անոր խմբագիրը, մինչ Թէքէեան եւ Կիւրճեան կը մնան իբրեւ հիմնադիր-տնօրէններ:

## 3. ՎԱՀԷ (ԱԼԻՔՍԱՆ) ԱՐԶՈՒԵԱՆ՝ ՎԵՐԱԿԱԶՄԵԱԼ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ «ԲՌՆԱՏԻՐԱԿԱՆ» ԹԵՒԻ ԱՌԱՋՆՈՐԴԸ

1903-ին «հին» եւ «նոր» (Վերակազմեալ) Հնչակեաններուն միջեւ կայացած

ժամանակաւոր եւ պայթիւններով լեցուն «միութեան» վերջնական քայքայումէն ետք՝ որուն հետեւանքը եղաւ, ինչպէս տեսանք, փոխադարձ մահափորձ-սպանութիւնները, 1906-ին Վերակազմեալ Հնչակեանները իրենք իրենց միջեւ կը բաժնուին երկու խումբի. «Իսկ Վերակազմեալներն ալ երկու մասի բաժնուեցան քանի մը ամիս կայ», կը գրէ Արփիարեան 1907-ի սկիզբը։[8]

Կը յառաջանան Վերակազմեալներու «հին» (չափաւոր) եւ «նոր» (բռնատիրական) խումբեր («հին» եւ «նոր» անուանումները խիստ պայմանական են եւ գործածուած են իմ կողմէս՝ դիւրացնելու համար երկու խումբերուն զանազանումը), իւրաքանչիւրը ինքզինք ներկայացնելով իբրեւ Վերակազմեալներու ներկայացուցիչ։ Արփիարեան, որ գործնականօրէն հեռացած էր կուսակցութենէն ու կուսակցական գործունէութենէն, իր աշխատակցած *Լուսաբեր*ի մէջ դիրք կը բռնէ ի նպաստ Վերակազմեալներու հին խումբին եւ ուժեղօրէն կը քննադատէ նոր խումբը եւ անոր գլուխը կանգնած Վահէ Արզուեան։

Բռնապետ մըն էր Արզուեան։ Հին Վերակազմեալներէն Լեւոն Մկրտիչեան 1925-ին պիտի յիշէր.

*Մեզմէ շատեր, մեր կուսակցական-յեղափոխական շրջանին, անշուշտ ճանչցան Վահէ Արզուեան անուն անձ մը որ քանի մը տարի կատարեալ դիկտաթօրի դեր կատարեց Վերակազմեալ Հնչակեան կուսակցութեան մէջ։* [...]

*Ինչ որ ալ ըլլայ, սակայն, ամէն անոնք որ պատեհութիւն ունեցած են իրեն մօտենալու, պէտք է խոստովանին թէ անիկա տարապայման ուժով մը օժտուած էր եւ այդ ուժին շնորհիւ՝ կրցած էր իր շուրջիններըը իր ազդեցութեան տակ առնել եւ զանոնք վարել Արեւելքցի բռնապետի մը պէս։*[9]

«Վահէ հրամայելու համար ծնած է եւ հոս կը գտնէր իր կոչումը», կը հաստատէ Արշակ Ալպօյաճեան։[10]

Միհրան Տամատեան, 1906-ի խզումէն ետք արտասանած ճառի մը մէջ այսպէս կը նկարագրէ արզուեանական խմբակը.

*Արզուեան քլիքը որուն գործունէութիւնը սկիզբէն մինչեւ վերջը եղած էր պաշըրպօզութ, եւ աւելի աւազակային ու դաւադրական բնոյթ ունէր՝ քան գաղափարական-յեղափոխական, եւ որ Վերակազմեալ կողմէն գլխաւոր պատասխանատուն էր թէ՛ վերեւ ակնարկուած բռնազբօսիկ միութեան* [1902] *եւ թէ՛ անոր անխուսափելի հետեւանք բաժանման եւ եղբայրասպանութիւններուն, վերջապէս անցեալ տարուան* [1906] *վերջերը իր ամբողջ արբանեակներով, կը մեկուսացուէր, կը կղզիացուէր Վեր. Հնչ. Կուսակցութենէն։*[11]

## 4. ՎԵՐԱԿԱԶՄԵԱԼ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ ՊԱՌԱԿՏՈՒՄԸ ԵՒ ՄԵՂԱԴՐԱՆՔՆԵՐԸ ԱՐԶՈՒԵԱՆԻ ԽՄԲԱԿԻՆ ԴԷՄ

Արփիարեանի սպանութեան համար շատ կարեւոր է հասկնալ Վերակազմեալներուն այս բաժանումը:

Երկու կողմերու միջեւ խզումը վերջնական էր: Ոչ անպայմանօրէն իբրեւ պաշտօնական խօսնակներ, այլ աւելի մղուելով խմբագիրներու անձնական համակրութեան եւ նախասիրութեան կեցուածքներէն, մամուլը եւս կը բաժնուի երկու խումբի:

Գահիրէի *Լուսաբեր*ը՝ շնորհիւ Արփիարեանի, կը բռնէ «հին» կամ «չափաւորական» կողմը (մանրամասն պիտի անդրադառնամ ստորեւ) իսկ *Ազատ բեմ*ը՝ շնորհիւ Լեւոն Լարենցի, «նոր» կամ «բռնաւորական-արզուեանական» կողմը: Անդրանիկեան նոյնիսկ վերջինս կ'անուանէ «Ազատ բեմեան խմբակը եւ իր կուսակցութիւնը»:[12]

Պոսթոնի *Ձայն հայրենեաց* շաբաթաթերթը կը դառնայ արզուեանական խումբի խօսնակը: Այս խումբը իր ձեռքը կ'անցընէ Նազարբէկեանի *Հնչակ*ին զուգահեռ Պոսթոնի մէջ ուշ յաճախականութեամբ լոյս տեսնող նոյնանուն *Հնչակ* լրագիրը:[13] Միւս կողմէն, արզուեանական խումբէն 1906 Հոկտեմբերին վտարուած Սուրէն Պարթեւեան 1907 Ապրիլին Պոսթոնի մէջ կը սկսի խմբագրել *Ազգ* շաբաթաթերթը, իբր «չափաւոր» Վերակազմեալներու ձայն: Սոցիալ Դեմոկրատ Հնչակեանութեան Ամերիկայի շրջանի խօսնակ *Երիտասարդ Հայաստան* շաբաթաթերթը (Նիւ Եորք) Սապահ-Գիւլեանի խմբագրութեամբ կը բռնէ հակա-արզուեանական դիրք:

Եւ այսպէս, իւրաքանչիւրը իր մամուլով կը հաստատէ խզումը:

Բայց այս պառակտումը կը նշանաւորուէր գործնական քայլերով եւ դէպքերով:

Համաձայն 1907 Յունուար 26-27-ին Պոսթոնի մէջ գումարուած Ամերիկայի Վերակազմեալ Հնչակեան Շրջանակի 25-րդ Պատգամաւորական Ժողովին («հին» Վերակազմեալ), Վահէ Արզուեան ամբողջ երեք տարի (պէտք է հասկնալ՝ 1903-1906-ի սկիզբ) Շրջանակի դրամէն անձնապէս իւրացուցած է աւելի քան 10 հազար տոլար, հետեւաբար, Նահանգային Վարչութեան ատենապետ Ս. Սուրէնեանի եւ նոյն վարչութեան անդամներ Պ. Գաբրիէլեանի ու Յ. Սարգիսեանի որոշումով 1906-ի սկիզբները Կուսակցութեան գանձը Արզուեանի գործակից Ղեւոնդ վրդ. Մարդուկէսեանի ձեռքէն կ'առնուի եւ իրեն յատկացուած պիտճէն կը վերածուի շաբաթական 20-25 տոլարի: Իբրեւ հակադարձութիւն կամ փոխադարձ հարուած, 1906 Ապրիլ-Մայիսին, Արզուեան, Տոքթ. Ա. Տէր-Մարկոսեանի գործակցութեամբ, յանուն Կեդրոնական Վարչութեան, այլ առանց Կեդրոնական Դիւանի գիտակցութեան, կը լուծէ Նահանգային Վարչութիւնը:[14]

1906 Հոկտեմբերին, Գահիրէի մէջ, Վերակազմեալներու անունով Արզուեանի «նոր» Վերակազմեալները կը գումարեն Դ. Ընդհանուր Պատգամաւորական Ժողով մը,[15] ուր որոշում կ'ընդունին Վերակազմեալներու շարքերէն արտաքսել Սուրէն Պարթեւեան, Վահրամ Գրիգորեան, Պետրոս Գաբրիէլեան, Սարգիս Մալէմէզեան։[16] Արտաքսումին համար կը նշեն միայն ընդհանուր պատճառներ.

*Այս զտումը, մաքրագործումն ու սրբացումը, եթէ սովորութիւնը դառնար յեղափոխութեան դրօշին տակ ծառայող բոլոր կուսակցութիւններուն, համերաշխութիւն, բռնութեան դէմ պայքարող անձնուէրներու միութիւնը շատոնց կատարուած պիտի ըլլար։ Փտութիւնները միա՛յն արգելք կը հանդիսանան մաքուր տարրերու միացումին եւ գործակցութեան։*[17]

1907 Յունուար 26-27-ին կայացած յիշեալ 25-րդ Պատգամաւորական Ժողովը («հին» Վերակազմեալ) պաշտօնապէս կը յայտարարէ՝ որ 1906 Հոկտեմբերի Գահիրէի Ժողովը չի ճանչնար, եւ զայն կ'անուանէ «Դաւադրական Ժողով»։ Ժողովը կ'որոշէ Վերակազմեալ Հնչակեանութեան շարքերէն վտարել Արզուեան եւ քանի մը ուրիշներ, կէտ առ կէտ նշելով պատճառները։[18]

«Նոր» Վերակազմեալներու *Ձայն հայրենեաց* շաբաթաթերթի 1907 Փետրուար 13-ի յաջորդական թիւը լոյս չի տեսներ։ Լոյս կը տեսնէ մէկ շաբաթ ուշացումով՝ Փետրուար 20-ին։ Փետրուար 8-ին, «հին» Վերակազմեալներէն խումբ մը ներխուժած է խմբագրատուն։ Դէպքը կը նկարագրէ «տուժող» կողմը՝ *Ձայն հայրենեաց*։ Նկարագրութեան բնագիրը ինքնին հակամարտութեան նմոյշ մըն է՝ իր բառապաշարով, ոճով եւ թատերական արտայայտչականութեամբ։ Բնագիրը առաջ կ'անցնի դէպքէն։ Ան կը սկսի այսպէս.

*Անցեալ Ուրբաթ օր, Փետր.* 8*-ին, առաւօտեան կանուխ* 25 *հատի չափ տղաքներ, Տօքթ. Նազարէթ Գալուստեանի եւ Հնչակեան Կուսակցութենէ արտաքսուած Սարգիս Մալէմէզեանի առաջնորդութեամբ, յանկարծ Ձայն Հայրենեացի խմբագրատան վրայ կը յարձակին,* 309 Washington St.: *Պ. Վահան Մանուկեան, Ձայն Հայրենեացի գործակատարը, որ այդ պահուն մինակ կը գտնուէր, կ'ելլէ թէլէֆօն տալու ոստիկանատունը, սակայն անմիջապէս ձեռքէն կը բռնեն, եւ կ'արգիլեն։ Հետեւաբար անիկա կը ստիպուի դուրս ելլել ուրիշ տեղէ թէլէֆօն ընելու համար։ Այս պատեհութենէն օգտուելով՝ խմբագրատան վրայ յարձակողները գրասեղանը կը կոտրեն, բաժանորդներուն հասցէները կը յափշտակեն, եւ իրենց ընկերներէն մէկին կը յանձնեն, որ փախցնէ։ Խմբագրատունէն կ'անյայտանան նաեւ ուրիշ իրեղէններ։ Քիչ մը վերջը վրայ կը հասնին կեդ. Վարչութեան ներկայացուցիչը Պ. Շահինեան, Պ. Արամ Ասքանազ եւ խմբագիրը։ Ոստիկան կը բերուի ու խուժանավարները կ'աշխատին ցոյց տալ, թէ իրենք ալ այդ տեղին կը վերաբերին, եւ քովերնէն կնքուած թուղթ մը կը հանեն՝ ապացուցանելու։ Քանի որ ոստիկանները հայերէն չէին կրնար կարդալ, կը պատուիրեն ատոնց հանդարտ կենալ, մինչեւ խնդրոյն օրինաւոր լուծումը։ Միեւնոյն ատեն խուժանը կը բազմանայ։ Սարգիս Մալէմէզեան, Ձայն Հայրենեացի նախկին գործակատարը, այս*

*խառնաշփոթութեան միջոցին, Զայն Հայրենեացի տպուած թուղթէն հատ մը կը վերցնէ, վրան Վահրամ Գրիգորեանի գրել կուտայ, փոթ օֆիսէն ուրիշ բանալի մը խնդրելով՝ Զայն Հայրենեացի նամակատուփին համար։* Mr. Fisher, *որ Սարգիս Մալեճմէզեանը ճանչցեր էր իբրեւ գործակատար* Armenian Publishing Co.*ի, եւ չէր լսած թէ անիկա* 10 *ամիսներէ ի վեր հեռացուեր էր այդ գործէն, կը պատրաստուէր բանալի մը տալ, երբ յանկարծ Զայն Հայրենեացի խմբագիրը երեւցաւ, ու եղելութիւնը պատմեց։ Սարգիս գլխիկոր մեկնեցաւ։*

Ապա *Զայն հայրենեաց* կը նկարագրէ՝ թէ բանալիի դէպքի ձախողութենէն ետք, «հին» Վերակազմեալներու պետ Միքայէլ Յովհաննէսեան կու գայ դէպքի վայրը, եւ իբր անտեղեակ իր մարդոց արարքէն, կը յանդիմանէ անոնց եւ կ'ուզէ համերաշխութեամբ վերջացնել խնդիրը։ Բաւական երկար խօսակցութիւններէ ետք ամէն բան կը վերջանայ։ Այս բոլորը *Զայն հայրենեաց* մանրամասնօրէն կը պատմէ թատերական խիստ պատկերաւոր նկարագրութիւններով։ Բայց, բաժանորդներուն ցանկը առած-տարած էին արդէն.

*Կիրակին կ'անցնի, ու Զայն Հայրենեացի թշնամիները տարակուսելով թէ բաժանորդներուն ցանկը վերցնելը բաւական չէ թերթին հրատարակութիւնը դժուարացնելու, կ'որոշեն տպարանը երթալ, եւ տառերը ոչնչացնել։ Երկու ոստիկան երկուշաբթի առտուն կանուխ, Զայն Հայրենեացի տպարանին դրան առջեւ կը կանգնին։ Խռովարարները կը հասնին եւ կ'ուզեն բռնի կերպով ներս մտնել։ Զայն Հայրենեացի գործակատարը դուրս կ'ելլէ տպարանէն անութին տակ ծրար մը ունենալով, եւ յարձակում կը կրէ խուժանէն։ Ոստիկանները կը միջամտեն ուրիշ ոստիկաններ ալ կը հասնին եւ կը սկսին իրենց բիբը գործածել անսաստողներուն գլխուն վրայ։ Հինգ հոգի կը ձերբակալուին, որոնց վրայ զէնք ալ կը գտնուի եղեր։ Ասոնց երեքը* 5-20 *տոլար տուգանք վճարելով դուրս կ'ելլեն։*[19]

Երկկողմանի ատելութեան աստիճանը դժուար չէ որսալ այստեղ։

«Հին» Վերակազմեալները կը պատասխանեն՝ Պոսթոնի *Հայրենիք*ին մէջ հրատարակելով «Պաշտօնական ազդ» մը, ուր կը պնդեն՝ թէ իրբեւ Վերակազմեալներու օրինաւոր ներկայացուցիչ, իրենց սեփականութիւնն է *Զայն հայրենեաց*ը, անոր տպարանը եւ ամբողջ գոյքերը.

*Ամերիկայի Վեր. Հնչակեան Նահ. Վարչութիւնս հարկ կը զգայ ներկայ պաշտօնագրով Զայնի շուրջ պատահած դէպքին ծագումն ու խկութիւնը հաղորդել հայ հասարակութեան։*

*Ըստ Հնչ. կանոնագրութեան, Ամերիկայի Հնչ. Շրջանակը վարող Նահ. Վարչութիւն մը կ'ընտրուի Պատգ. ժողովի քուէով։ Այդ Վարչութեան իրաւասութեան տակ է Զայն Հայրենեաց թերթը, որու վարչութիւնն ալ կ'ընտրուի Նահ. Վարչութեան կողմէ։ Տարիներէ իվեր ընդունուած այս կանոնին համաձայն՝ Զայնի վերահսկողութիւնը ստանձնող մեր նոր ներկայացուցիչը ընտրեցինք Պն. Ս. Մալեճմէզեան, եւ որուն պաշտօնաթուղթով մը յանձնարարեցինք Զայնի խմբագրատուն երթալ եւ ստանձնել թերթին գործառնութիւնները։*[20]

«Ազդ»-ի ոչ-երկար շարունակութիւնը կը բովանդակէ որոշ դէպքային բացատրութիւններ։

Չ'ուշանար «նոր» Վերակազմեալներուն կտրուկ պատասխանը։ Անոնք պարզապէս չեն ընդունիր «հին»-երու վարչութեան օրինաւորութիւնը, ճիշդ այնպէս ինչպէս «հին»-երը չեն ընդունիր նորերունը։ Ահաւասիկ պատասխանին վճռական սկիզբը.

*Նախ, այս ինքնակոչ Նահ. Վարչութիւնը բացարձակապէս ապօրինի է իր իսկ ընդունիլ կեղծած կանոնագրին Յօդ. Զ.ովը, ուր կ'ըսուի.*

*- Պատգամաւորական ժողովը օրինաւոր կը համարուի, երբ մասնաճիւղերու մեծամասնութիւնը ներկայացուած է.*

*Արդ՝ ապօրինի պատգամաւորական ժողով մը, ինչպէս որ էր Վերակազմեալ Հնչակեան կուսակցութենէն վռնտուածներու եւ կարգ մը դասալիքներու վերջերս գումարուածը, ուր ընկեցիկ փոքրամասնութիւն մը միայն ներկայացուած էր, ՁԻ ԿՐՆԱՐ Նահ. Վարչութիւն մը ընտրել։ Ուստի ապօրինի պատգամաւորական ժողովին կեղծ Նահ. Վարչութիւնը իրաւասութիւն մը չէր կրնար ունենալ Զայն Հայրենեացի վրայ։*[21]

«Հին» Վերակազմեալները պէտք ունէին իրենց ձայնը ներկայացնող մամուլի։ Ինչպէս նշուեցաւ, յիշեալ գործողութեան նպատակն էր իրենց վերադարձնել *Զայն հայրենեաց*ը։ Երբ կը ձախողին, Պոսթոնի մէջ կը հիմնեն *Ազգ* շաբաթաթերթը, «նոր»-երուն կողմէ դեռ նոր վտարուած Սուրէն Պարթեւեանի խմբագրութեամբ, որուն առաջին թիւը լոյս կը տեսնէ 1907 Ապրիլ 20-ին։ Այստեղ արդէն առիթ կ'ունենան մանրամասն պատասխանել Փետրուար 8-ի դէպքերու *Զայն հայրենեաց*ի նկարագրութիւն-մեկնաբանութեան։ *Ազգ*ի առաջին թիւին մէջ Ամերիկայի Վերակազմեալ Հնչակեան Մասնաճիւղերու Նահանգային Վարչութիւնը կը հրապարակէ երկար հաղորդագրութիւն մը, ուր, ի միջի այլոց, կը գրէ.

*Նահգ. Վարչութիւնս, իբրեւ Ամերիկայի Վեր. Հնչակեան Շրջանակի կամքը ներկայացնող՝ օրինաւորապէս ընտրուած մարմին, բացարձակ իրաւունքն ու պարտականութիւնն ունէր իր վերահսկողութեան տակ առնելու Զայն Հայրենեացը, որ Ամերիկայի Վեր. Հնչակեան ընկերներու ջանքերովն ու զոհողութիւններովն հիմնուած թերթ մըն է եւ՝ հետեւաբար՝ Ամերիկայի Վեր. Հնչակեան Մասնաճիւղերու սեփականութիւնը։*[22]

Ապա կը «սրբագրէ» դէպքերու նկարագրութիւնը.

*[Բ]ացարձակապէս ՍՈՒՏ է, թէ մենք 25-30 հոգիներէ բաղկացած արշաւախումբ մը ղրկած ըլլանք Զայնի գրասենեակին վրայ «յարձակելու» ասպատակային ծրագրով։ - Մեր ներկայացուցիչը, Փետրուար 8-ի Ուրբաթ առտուն, Զայնի խմբագրատունը ներկայացած է, իր հետ ունենալով ՄԻԱՅՆ 6 ընկերներ, որոնք նշանակուած էին թերթին նոր վարչութիւնը*

*կազմելու, եւ որոնք երկար տարիներու իրենց անձնուէր զոհաբերութեամբը՝ այլապէս տիրական իրաւունքն ունէին Հոն իբրեւ իրենց տունն զգալու, քան կուսակցական ներքին դժբաղդ դիպուածի մը իրե՛նց իսկ անակնկալ ու դեռ անհաւատալի բերումովը բաղդաւորուած Ջայնի ներկայ «պաշտօն»աւորները։*[23]

Տպարանի նկարագրութիւնը եւս «սուտ» է.

*Դարձեալ, ՍՈ՛ՒՏ է, թէ մեր ընկերները յարձակում գործած ըլլան Ջայնի տպարանին վրայ: Ընդհակառա՛կը, իրենք էին որ Տօք. Ա. Տէր Մարկոսեանէն հրահանգուած՝ յաջորդ օրը, Շաբաթ, 9 Փետրուար, այդ փորձն ըրին, բայց՝ տպարանին դրան վրայ մեր ընկերներէն չորսին հանդիպելով՝ ետ դառնալ ստիպուեցան։*[24]

Ապա մանրամասն կը բացատրէ իրենց մեծամասնութիւն ըլլալը, Գահիրէի ժողովին դաւադրական կարգավիճակը, եւ այլն։

Հարցը կը հասնի դատարան,[25] ուրմէ ետք քանի մը ամիս կը տիրէ լրագրական հանդարտութիւն։

1907 Յուլիս 22-ին, Նիւ Եորքի մէջ կը սպաննուի մեծահարուստ առեւտրական Յովհաննէս Թաւշանճեան՝ քանի որ մերժած էր դրամ տրամադրել «յեղափոխական»-ներուն։ Դէպքը այնքան խօսուն էր, որ ամերիկեան թերթերը լայն տեղ կը յատկացնեն կատարուածին եւ անոր յաջորդող ձերբակալութիւններուն ու նախնական քննութիւններուն, իսկ հայ եւ ամերիկացի հասարակութիւնը կը մեղադրէ Վերակազմեալ Հնչակեանութիւնը՝ իր ամբողջութեան մէջ։

«Նոր» Վերակազմեալները սպանութեան լուրը կը ներկայացնեն այսպէս.

*Տեղական թերթերէ կ՚իմանանք թէ՝ երկուշաբթի օր Նիւ Եորքի մէջ Հայ մը ցերեկ ատեն սպաննած է գորգի վաճառականներէն Պրն. Յ. Թավշանճեան: Սպաննողը ձերբակալուած է եւ իր անունը կուտայ Պետրոս Համբարձումեան, քսան եւ չորս տարեկան, Խարբերդցի: Ոստիկանութեան եւ ընդ. դատախազութեան ճիգերը անոր կողմէն այս ոճիրը մասնաւոր կազմակերպութեան մը եւ մեղսակիցներու վերագրելու համար, ապարդիւն եղած են որովհետեւ անիկայ յայտարարած է թէ՝ ինք իրեն առանձին մտածած, վճռած եւ գործադրած է այդ արարքը առանց որեւէ մէկին գիտակցութեան:*

*Թավշանճեան կը թողու կին մը եւ երկու զաւակներ:*

*Դժբաղդաբար, սակայն, Տէր Գասպարի սպաննութեան ատեն, կարգ մը Հայերու մատնիչ յայտնութիւնները սկսան թափել այս առթիւ ալ տեղական թերթերուն մէջ, Հայ յեղափոխութիւնը սոսկ զզուանք ազդող «Սեւ ձեռք» ընկերութեան մը վերածելով որը իբր թէ՝ որեւէ պարկեշտ եւ պատուաւոր* (!) *մարդու համակրութիւնը չի վայելեր ոչ հոս, ոչ երկրին մէջ։*[26]

Աչքի կը զարնէ երկու կէտ։ Առաջինը՝ որ «նոր» Վերակազմեալները անպայմանօրէն կ՚ուզեն «փաստել» սպանութեան անհատական բնոյթը։ Երկրորդը՝ որ

լուրը կ'իմանան «տեղական թերթերէ», ուրեմն՝ իրենք տեղեակ չեն եղած անոր մասին։

Մինչդեռ *Ազգ* բոլորովին այլ ուղղութիւն կու տայ լուրին, գրելով՝ որ Համբարձումեան խոստովանած է իր Հնչակեան պատկանելութիւնը.

*Պետրոս Համբարձումեան, ոստիկանութեան կողմէ հարցաքննութեան ենթարկուելով՝ յայտարարեր է, թէ ինք կը պատկանի «Հնչակեան» (?) կոչուած «ընկերութեան», թէ Խարբերդի Մէզիրէէն վեց տարի առաջ Ամերիկա եկած է, եւ բնակած Ուստր, Պօսթոն, Փրօվիտէնս, Չըլսի, թէ Շիքակօէն ուղղակի եկած է Թաւշանճեանը սպաննելու, որովհետեւ ան մերժած էր տեղի տալ իրեն եղած սպառնալիքներուն եւ վճարել ընկերութեան կողմէ իրմէ պահանջուած դրամը եւն. եւն.։*[27]

Նոյն թիւի ուրիշ յօդուածի մը մէջ սպանութիւնը կը վերագրէ «թայֆայական քլիք»-ին.

*Վեր. Հնչակեան Կուսակցութիւնը, որուն անունը չահագործող թայֆայական քլիքը այս էջերուն մէջ իսկ խարանուեցաւ արդէն, անտարբեր չի կրնար ըլլալ, որ հասարակ ոճրագործներ Յեղափոխութեան վարկն ու Հայութեան պատիւը ցեխերու եւ անմեղ անխոստովանելի այլ չափազանց վրանբացօրէն խոստովանուած նպատակներուն համար, - պարզապէս՝ ԱՊՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ։*

*Ամերիկահայ յեղափոխական շարքերուն կը մնայ՝ ծայրագոյն վճռականութեամբ բողոքելով այս ոճիրին դէմ, հասկնալ՝ թէ չարիքը վերջացած չէ։*[28]

*Երիտասարդ Հայաստան*ի խմբագիր Սապահ-Գիւլեան Վերակազմեալներու կողմէ 1903 Յուլիս 7-ին ենթարկուած էր մահափորձի, երբ Վերակազմեալներուն միակ առաջնորդն էր Վահէ Արզուեան։ *Երիտասարդ Հայաստան*ի 1907 Օգոստոս 14 թիւին Սապահ-Գիւլեան կը հրատարակէ հետեւեալ լուրը, ուր, ի միջի այլոց, գրուած է.

*Դրամաշորթ խմբակի պետ Ալէքսան Արզուեանը կը փնտռուի ոստիկանութեան կողմէն, սակայն մինչեւ այժմ եղած բոլոր ջանքերը ապարդիւն անցած են, որովհետեւ Արզուեանը արդարութեան ձեռքը չիյնալու համար օրը անգամ մը իւր պահըստած տեղը կը փոխէ եղեր։*

*Վերակազմեալ խմբակի ներքին կանոնագրութիւնը ինկած է կառավարութեան ձեռքը եւ թարգմանուած է ամերիկեան թերթերու մէջ. յայտնուեցաւ որ Մարդուկէսեանը իբրեւ վեր. կեդրոնի ներկայացուցիչ ուզած մարդը սպաննել կուտայ եւ պատասխանատու կը մնայ կեդրոնին, իսկ Արզուեանը, որպէս վեր. կեդրոնի անդամ, կտրածը՝ կտրած, նետածը՝ նետած է եղեր։*[29]

Իսկ Օգոստոս 21 թիւին *Երիտասարդ Հայաստան* կը հրապարակէ American

Steel and Wire ընկերութեան տեսակցութիւնը Մուրատ Ալի Մուհամմէտի հետ (ինչո՞ւ ընկերութիւնը պիտի տեսակցէր Մուրատի հետ եւ ո՞վ է այս Մուրատը).

*Ուսթրէն կը հեռագրեն* [1907] *Օգոստոս* 18-*ին* –

*Ամէրիքըն Սթիլ էնտ Վայր ընկերութեան Մուրատ Ալի Մուհամմէտի հետ երկար տեսակցութեան մը միջոցին, որ այսօր հրատարակած է, ըսած է թէ հայ տէրօրիստներու պետ Ալէքսան Արզուեանը իսկապէս Թուրք կառավարութեան գաղտնի գործիքն է եւ այժմ ծովու վրայ է դէպի իւր երկիրը. այս լուրը յուզում յառաջ բերած է Հայ գաղութին մէջ, ուր Մուհամմէտը ճանչցուած է որպէս նախկին գործիք Թուրք կառավարութեան: Մուհամմէտը իմիջի այլոց ըսած է* –

*«Արզուեանը տարիներէ ի վեր դաստիարակած է դիպլոմատիկական նուրբ ծառայութեանց մէջ՝ Ամերիկայի մէջ երեւան հանելու Սուլթանի կեանքին դէմ դաւադրողները, որոնք հազարներով կը հաշուին: Արզուեանը Ամերիկա եկած է Հնչակեանութիւնը քանդելու յատուկ նպատակով:*

*«Ինքը շատ խելացի ըլլալով՝ յաջողեցաւ մտնել ընկերութեան մէջ, մինչեւ որ անոր իսկական պետը դարձաւ: Իւր միակ փափագն էր ամբողջ ընկերութիւնը Ամերիկեան օրէնքի սահմաններուն մէջ բերել: Այս նպատակին հասնելու համար դրամաշորթներու ներքին շրջան մը կազմեցաւ:*

*«Ես գիտեմ որ Արզուեանը այժմ ազատ է, եւ Պօսթոնի ու Նիւ-Եօրքի ոստիկանութիւնը կրնան մէկ կողմ նետել զայն ձերբակալելու խորհուրդը: Անգլիան եւ Ֆրանսան այս անգամ պիտի ըլլան իւր ձեռնարկներու վայրը»:*[30]

Ապա *Երիտասարդ Հայաստան* իր կողմէն կ՚աւելցնէ.

*Արզուեան-Մարդուկէսեան խմբակի վերջին հակամարդկային, հակահայկական եւ հակայեղափոխական ստոր եւ եպերելի ընթացքը, ինչպէս նաեւ Գիսակ Ճէլալեանի եւ Աւետիս Մանուկեանի խոստովանութիւնները, ոստիկանութեան կողմէն երեւան հանուած այդ նզովմականներու նորանոր ոճիրներու համար պատրաստած ծրագիրները, թունաւոր դաշոյնները, ռումբերը եւ դրամաշորթութեան համար պատրաստուած գործիքները այնպիսի զզւանք յառաջացուցած են դէպի այդ խմբակը, որ մինչեւ այժմ մեղմ լեզու գործածող ամերիկեան մամուլը սկսաւ բացէ ի բաց պահանջել, որ ոստիկանութիւնը այդ խմբակը որքան կարելի է շուտով արմատախիլ ընէ:*[31]

Դարձեալ համաձայն *Ազգ* շաբաթաթերթի տեղեկութեան, ձերբակալուածներէն Աւետիս Մանուկեան կը խոստովանի.

*«Շատ տարիներ գործած եմ Նիւ Եօրքի մէջ եւ լաւ գործ մը ունէի գորգավաճառի մը քով անցեալ Ապրիլին երբ Արզուեանէն հրաման մը ստացայ չորս ուրիշ մարդերու հետ Պօսթոն երթալու եւ հոն չորս մարդեր սպաննելու:*

*«Ինծի ըսին թէ այդ մարդերը Հայաստանի թշնամիներ էին: Հիմա գիտցածս ըսելուս պատճառը այն է որ իմ հայրենասէր կարծած մարդիկս իրապէս դրամաշորթներ եւ մարդասպաններ էին:*

*«Ինծի հետ Պոսթոն եկող մարդերն էին՝ Գիսակ Ճէլալեան, Ճիմ Ջանգալեան, Լեւոն Պօյաճեան եւ Եղիա Գուզուճեան: Սպաննուելիք մարդերն էին՝* [Սուրէն] *Պարթեւեան,* [Վահրամ] *Գրիգորեան եւ երկու ուրիշներ, որոնց անունները չեմ յիշեր:*

*«Մեզի առատ դրամ տրուած էր: Չեմ գիտեր թէ ո՞ւսկից եկաւ այդ դրամը:*

*«Ճէլալեան մեր խումբին առաջնորդն էր: Իւրաքանչիւրնիս երկար դաշոյն մը եւ խոշոր րիվօլվըր մը ունէինք: Մեզի ցոյց տրուած էր թէ ինչպէս քերթելու էր դաշոյնին ծայրը եւ զայն թաթխելու թոյնի մէջ, որ ներարկուէր ան, մեզի ըսուած էր նոյնպէս փամփուշտներու վրայ խաչաձեւ կտրել եւ զանոնք թաթխել թոյնի մէջ:*

*«Մենէ իւրաքանչիւրին մէկ մէկ մարդ նշանակուած էր հետապնդելու, եւ ես երեք շաբաթ հետեւեցայ իմինիս առանց զայն սպաննելու լաւ պատեհութիւն մը ունենալու: Միւսներն ալ ըսին թէ չէին կրնար մինակ գտնել իրենց մարդերը:*

*«Տէյվիս փողոցի մէջ տուն մը փոխադրուեցանք եւ ապա էսէքս փողոցը: Հրամանները մեզի կուգային Արզուեանէն Ճէլալեանի միջոցով:*

*«Մարդերէն ոմանք թողուցին սպաննութեան գործը եւ մենք Նիւ Եորք ետ դարձանք ուրիշներու համար: Ես Ճէլալեանը կրկին չի տեսայ մինչեւ Թաւշանճեանի Եունիըն Սքուէրի մէջ սպաննութենէն վերջը:»*[32]

Երկու անգամ կը յիշուի Արզուեանի անունը: Միաժամանակ, խնդիրը նոր երանգ կը ստանայ երբ Մանուկեան կը բացայայտէ՝ թէ սպանութեան համար թիրախ ընտրուած էին նաեւ «հին» Վերակազմեալներու ներկայ գործունեայ անդամներ Սուրէն Պարթեւեան եւ Վահրամ Գրիգորեան:

Ամերիկայի Վերակազմեալ Հնչակեան մասնաճիւղերուն Նահանգային Վարչութիւնը («հին» Վերակազմեալներ) անմիջապէս պաշտօնական դատապարտութիւն մը կը հրապարակէ: Առանց անուններ նշելու, սպաննողները կ'անուանէ «մարդասպան խմբակ», «ոճրագործ խմբակ» եւ «ոճրագործ քլիք»:[33] Յստակ է թէ որուն կը վերագրուին այս արտայայտութիւնները:

Ապա, 1907 Օգոստոս 31 – Սեպտեմբեր 2-ին, Պոսթոնի մէջ կը գումարուի «հին» Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան Ամերիկայի Շրջանակի 26-րդ Պատգամաւորական Ժողովը, ուր կ'որոշուի հետեւեալը.

*Նկատի ունենալով վերջերս, Նիւ-Եորքի մէջ, Յովհաննէս Թաւշանճեանի վրայ գործուած անարգ ոճիրը,*

*Նկատի ունենալով մեր ընկերներէն ոմանց կեանքին դէմ Պոսթոնի մէջ եւ այլուր սադրուած ու վիժած եղբայրասպան դաւադրութիւնը,*

*Նկատի ունենալով այս ոճիրի ու եղեռնական դաւադրութեան միակ հեղինակ ու պատասխանատու սեւ խմբակին՝ յանուն Հայ Յեղափոխութեան եւ իմասնաւորի Վերակազ-*

*մեալ Հնչակեան Կուսակցութեան խօսելու անպատկառ ու չնական յաւակնութիւնը,*

*Պատգ. Ժողովս, յանուն Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան, իր զայրոյթն ու զզուանքը կը յայտնէ ոճրագործ ու եղբայրասպան խմբակին դէմ, եւ ներկայիւս կուգայ Հրապարակաւ յայտարարել,*

*Թէ այս եղեռնապիղծ խմբակը ո՛չ մէկ կապ ու առնչութիւն չունի Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան Երկրի ու Արտասահմանի շրջանակներուն եւ մասնաճիւղերուն հետ, այլ մէկ քանի զեղծարար ու արտաքսուած խաչագողներու անձնական շահերուն ու կիրքերուն համար միայն իր ճղճիմ ու որջացեալ գոյութիւնը տակաւին քաշկռտող դրամաշորթական քլիք մը է լոկ,*

*Թէ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութիւնը իսպառ կը դատապարտէ Հայ Յեղափոխութեան անունով բռնի դրամ պահանջելու եւ դրամի համար մարդ սպաննելու սկզբունքը,*

*Թէ վերջապէս այդ ոճրագործ քլիքին սպառնալիքներուն ու դաւերուն տեղի տալով՝ սէնթ մը անգամ վճարելը՝ ամենամեծ դաւաճանութիւնը պիտի ըլլար Հայ Ազգին ու Հայ Յեղափոխութեան դէմ, եւ ամենաստոյգ միջոցը Ոճիրն ու Եղբայրասպանութիւնը քաջալերել,*

*Պատգ. Ժողովս, ներկայ յայտարարութեամբ, կոչ կ'ընէ Հայ Հասարակութեան, Հայ Մամուլին եւ մասնաւորապէս Հայ յեղափոխական տարբեր կազմակերպութիւններուն այսուհետեւ Վերակազմեալ Հնչակեան անունը չի տալ՝ ո՛եւէ պարագայի տակ՝ ոճրագործ խմբակին, եւ այսպէսով ձեռնտու չըլլալ անոր՝ յեղափոխական կուսակցութեան մը դիմակին տակ չարագործելու:*[34]

Յիշատակուող «սեւ խմբակը», «ոճրագործ ու եղբայրասպան խմբակը», «եղեռնապիղծ խմբակը» եւ «դրամաշորթական քլիքը» ուղղակիօրէն վերագրուած է Արզուեանի «նոր» Վերակազմեալներուն:

Չմոռնանք, որ մինչ «հին»-երը կը փորձէին մեղադրել «նոր»-երը, հասարակական կարծիքը՝ իր հայկական եւ ամերիկեան կողմերով, ընդհանրապէս կը մեղադրէր Վերակազմեալները իր ամբողջութեան մէջ: Հարուածները շատ ուժեղ ու ազդեցիկ էին եւ վտանգի տակ կը դնէին արդէն իրենց վերջին շունչը ապրող երկու Վերակազմեալներուն գոյութիւնը: Եւ ճիշդ այս պատճառով էր որ «հին»-երը կ'ուզէին ամբողջ մեղադրանքը արագօրէն վերագրել «նոր»-երուն: Իսկ «նոր»-երը *Ձայն հայրենեաց*ի յաջորդական թիւերու մէջ պարզապէս անիմանալի աստիճանի բարձրացուցին ինքնապաշտպանութիւնը եւ զիրենք մեղադրողներուն դէմ յարձակումները: «Նոր»-երուն ելոյթները մէկ կէտ մը կը հետապնդէին՝ թէ սպանութիւնը կազմակերպողներն ու գործադրողները իրենք չեն եւ թէ իրենց դէմ եղած ամբաստանութիւնները կատարեալ դաւեր են:

*Ձայն հայրենեաց* յաջորդական թիւերու մէջ կը հրատարակէ՝ «Ազգին դահիճները» (5 թիւ),[35] «Արիւնոտ ճամբան»,[36] «Օտարին կարծիքը»[37] եւ «Ազգի դահիճներուն վարձքը»:[38]

Միաժամանակ, նոյն նիւթով ՎԷԱՅԲՔԷ ծածկանուն մը կը ստորագրէ երկարաշունչ երկու թատրերգութիւններ՝ «Խաչակրութիւն Վեր. Հնչ. Կուսակցութեան

դէմ», կատակերգութիւն մը, մէկ արարուած, հինգ տեսիլ, որ լոյս կը տեսնէ 4 թիւերու մէջ[39] եւ «Եպիսկոպոսը», թատերգութիւն մէկ արարուած, տասնըմէկ տեսիլ եւ երեք պատկեր, 8 թիւի մէջ։[40]

## 5. *ԼՈՒՍԱԲԵՐ* ԸՆԴԴԷՄ ԱՐԶՈՒԵԱՆԻ

1904-ի վերջաւորութեան Արփիարեան Վենետիկէն կը ժամանէր Եգիպտոս, ուր պիտի մնար մինչեւ իր սպանութիւնը։

1905 Հոկտեմբեր 17-ին կը սկսի աշխատակցիլ Գահիրէի *Լուսաբեր* եռօրեայ լրագիրին։ Թէեւ ինք չէ ընդունած խմբագիր ըլլալու հանգամանքը, բայց այդ թուականէն սկսեալ ինք կը կատարէր խմբագրական աշխատանքները։

Արփիարեան իր *Լուսաբեր*ով հետեւողական քննադատութեան կ՚ենթարկէ Արզուեանն ու իր խմբակը։ Այս ընթացքը, միաժամանակ, շարունակութիւն մըն էր *Հայ հանդէս*ի քննադատութիւններուն, որոնք ընդհատուեցան 1903 Փետրուար 22-ի Վենետիկի մահափորձով, կատարուած Արզուեանի հովանաւորութեամբ։ *Լուսաբեր*ի ընթացքը վերջապէս պիտի հասցնէր արզուեանական խումբի կազմակերպած սպանութեան Գահիրէի մէջ։ Հետեւաբար, կարեւոր է մանրամասնօրէն հետեւիլ *Լուսաբեր*ի արփիարեանական հրապարակումներուն։

1907 Յունուարին *Լուսաբեր* կը հրատարակէ կարճ «լուր» մը.

*Ամերիկայէն ստացուած նամակներ կը տեղեկացնեն, թէ այդ երկրի մէջ մեծ ուժ ստացող Վեր. Հնչակ. կուսակցութեան 15 մասնաճիւղերը եւ ուրիշ շատ մը խումբեր ու կուսակցութեան բոլոր գիտակից անդամներ բողոք բարձած են կեդրոնին եւ վերջերս Եգիպտոս գումարուած Պատգ. Ժողովին դէմ, զոր «Արզուեան Ժողով» կ՚անուանեն։ Նաեւ հաղորդուած են ուրիշ շատ մը մանրամասնութիւններ, զորս այժմ հրապարակ դնել անհարկի կը նկատենք։ Եւ կը մաղթենք որ Հնչակեան նախկին պառակտման ամենավատ հետեւանքները չկրկնուած, համաձայնութիւն գոյանայ ազգային շահը առանց վատնելու։*[41]

Մարտին, երկու թիւերու մէջ ամբողջութեամբ կը հրատարակէ Յունուար 26-27-ին Պոսթոնի մէջ գումարուած Ամերիկայի Վերակազմեալ Հնչակեան Շրջանակի 25-րդ Պատգամաւորական Ժողովին պաշտօնական երկար հաղորդագրութիւնը, ուր Արզուեանի դէմ քննադատութիւնը գրաւած է առիւծի բաժինը։[42]

Յաջորդ թիւին, Սլաք ստորագրութեամբ կը գրուի՝ թէ

*պարզ է գիտնալ թէ Արզուեանի մը ճախաւեր ու յախուռն գործերը որքան վարկաբեկ ըրին կուսակցութիւնս արատաւորելով անոր համայքը։*[43]

Մարտ 23-ին, Կարմիր Հնչակեան ստորագրութիւն մը կը գրէ.

*Վասնզի այդ կեդրոն հաւակնող Մարմինը Արզուեան Վարչութիւն մըն է՝ կրնանք ըսել խաչագողի խմբակ մը, որոնք ինքզինքնին ապրեցնելու միջոց կը խորհին եւ ո՛չ թէ ազգին ցաւերը թեթեւցնելու։*[44]

Ապրիլ 4-ին, *Իրաւունք*էն արտատպուած գրութեան մը մէջ Վերակազմեալ Հնչակեանութեան ներկայ պառակտումը կը վերագրուի Արզուեանին.

*Վեր. Հնչակեաններու մէջ ծագած պառակտումը՝ որ գլխաւորապէս դրամական զեղծումի կը վերագրուի, կարելի էր առանց մեծ աղմուկի կարգադրել եթէ ամբաստանուած խմբակը՝ Արզուեան-Մարդուկէսեան եւ ընկ. խոհեմութիւնը ունենար խնդիրը այդ տեսակ Ատեանի մը առջեւ հանելու, փոխանակ Ամերիկայէն խոյս տալով, իր 5-6 համախոհներով Գահիրէի մէջ արամազդեան վճիռներ արձակելու։*[45]

Օգոստոս 3-ին Արփիարեան կը յայտարարէ՝ թէ

*տեղեկագրութիւն մը կը պատրաստեմ* 1896-1901 *ժամանակամիջոցին պատահած անցքերուն. օր մը գայն կը հրատարակեմ, երբ ժամանակը յարմարադէպ համարիմ։*[46]

Վտանգաւոր յայտարարութիւն։

Յետոյ վրայ կը հասնի Յուլիս 22-ին Նիւ Եորքի մէջ սպաննուած մեծահարուստ Յովհաննէս Թաւշանճեանի լուրը։ Արփիարեան յաջորդական երկար յօդուածներ կը գրէ, լուրեր քաղելով անգլերէն, ֆրանսերէն եւ հայերէն մամուլէն եւ կատարելով լայն մեկնաբանութիւններ։ Կը նշէ Հնչակեանութեան բաժանումը երեք մասի՝ Հնչակեաններ եւ երկու Վերակազմեալներ, բայց ոչ մէկ ամբաստանութիւն արզուեանական խումբին։ Պոսթոնի *Ազգ* շաբաթաթերթի Յուլիս 27-ի թիւին մէջ հրատարակուած Պետրոս Համբարձումեանի բացայայտումներէն ետք, ուր ամբաստութիւնները կ'ուղղուէին դէպի «թայֆայական» խմբակը, Արփիարեան կը սկսի արծարծել անդամներուն անունները։[47] Բայց ան զգոյշ է տակաւին։ Համբարձումեանի բերանով է որ կու տայ լուրը։ *Իր* կարծիքը չէ ասիկա։

Նոյնպէս, Օգոստոս 22-ի թիւին մէջ կը յիշեցնէ Արզուեան անունը՝ թարգմանելով Նիւ Եորքի թերթէ մը.

*New-York World թերթը Թաւշանճեանի սպանման առթիւ կարգ մը մէջբերումներ ընելէ յետոյ կը յաւելու թէ «Թաւշանճեանէն եւ ուրիշ չորս վաճառականներէ դրամ պահանջող ընկերութիւնը երկու լրագրական օռկաններ ունի, մէկը Պոսթընի, իսկ միւսը Փարիզի մէջ։ Ընկերութեան վարիչները ըլլալ կ'ըսուին չորս վաճառականներուն այցելող մարդը եւ ուրիշ մը Ալիքսան Արզուեան անունով, որ երեք կամ չորս տարիէ ի վեր պահուըտած է այս երկրին*

*մէջ, եւ կը կարծուի թէ Փրովիտէնս կը գտնուի այժմ։*»[48]

Միաժամանակ, սակայն, իւրաքանչիւր թիւի մէջ *Լուսաբեր* կը շարունակէ Թաւշանճեանի սպանութեան մասին երկար յօդուածներ ու խմբագրականներ գրել, արտատպումներ ու թարգմանութիւններ կատարել, սգահանդէսներու քննախօսականներ հրատարակել։ Նիւթին համար տրամադրուած չափազանց ընդարձակ տարածութիւնները եւ անոր նկատմամբ ցուցաբերուած անզիջող վճռականութիւնը՝ եռօրեայ չորս էջով լրագիրի մը համար, արդէն իմաստ մը կ'արտայայտեն։ Ուրիշ հարց է Արզուեանի անունին նկատմամբ ցուցաբերուած ժամանակաւոր զգուշաւորութիւնը։

Դարձեալ ուրիշ լրագիրի մը՝ Ս. Դ. Հնչակեան *Երիտասարդ Հայաստան*ի Օգոստոս 14-ի վերոբերեալ գրութիւնը կը վերատպէ, ուր կը խօսուի «[դ]րամաշորթ խմբակի պետ Ալիքսան Արզուեան»-ի մասին։[49]

Սեպտեմբեր 5-ի (Գ. տարի, թիւ 415) մէկ թիւի լռութենէ ետք, Սեպտեմբեր 7-ը կը շարունակէ ընդհատուածը՝ ծաւալուն խմբագրականով մը։[50]

Սեպտեմբեր 12-ին կը վերահրատարակէ *Երիտասարդ Հայաստան*ի Օգոստոս 21-ի վերոբերեալ գրութիւնը՝ որ կը վերաբերի Ամերիքըն Սթիլ Էնտ Վայր ընկերութեան ունեցած տեսակցութեան Մուրատ Ալի Մուհամմէտի հետ, ուր Արզուեան կը ներկայացուի իբրեւ Սուլթանին գործակալը։[51]

Սեպտեմբեր 17-ի թիւէն սկսեալ Թաւշանճեանի հարցը կը վերածուի լոկ միջանկեալ նշումներու։

*Լուսաբեր*ի 1907 Հոկտեմբեր 12-ի թիւը, արդարեւ, տարբեր էր բոլոր նախընթացէն։ Արփիարեան կը պատմէր կենդանի փորձառութենէն դրուագ մը՝ ուր կը յայտնաբերէր, որ մեծահարուստ Տիգրան Գարակէօզեանի սպանութիւնը Պոլսոյ մէջ 1895-ին նախաձեռնութիւնն էր Վահէ Արզուեանի.

*Մինչ այս մինչ այդ,* [1895] *դեկտեմբերին վերջին օրերը Դաշնակցական կուսակցութիւնը զիս սպաննել փորձեց։ Վիրաւորուած, տունը կը դարմանուէի, երբ իրիկուն մը ժամը* 10-*ին* (*ըստ Թրքաց*), *Հայրենիքի խմբագիր սիրելի մէկ բարեկամս* [իմա՝ Երուանդ Օտեան, Հ.Ա.], *որ հիմակ Աղեքսանդրիա կը գտնուի, բնակարանս եկաւ, եւ զիս առանձինն տեսնելով, ըսաւ թէ՝*

*- Հիմակ Վահէն տեսայ* (*Արզուեանը*). *աս իրիկուն Տիգրան Գարակէօզեանը պիտի զարնեն։*

*- Ի՞նչ կ'ընեն, խե՛նդ են ի՞նչ են, աղաղակեցի, որմէ՞ն արտօնուեցան ասանկ բան մը ընելու։ Կ'աղաչեմ, շուտ գնա՛ գտիր Վահէն եւ իմ կողմէս խստիւ ըսէ որ չըլլայ թէ ատանկ բան մը ընեն։*

*Անիկայ գնաց ու ես սրտատրոփ կը սպասէի, երբ մութը աղէկ մը կոխած, ժամը* 1-1½ *կար, դուռը զարկին եւ Արտեան Հովիւեանը ներս մտաւ այլարած դէմքով, ու առանց բարեւ մը տալու,*

*- Գարակէօզ Տիգրանը զարկին, ըսաւ.*

*- Ա՜խ, աս ի՞նչ էր ըրին. ազգին ալ, կուսակցութեան ալ մեծ հարուած, աղաղակեցի:*

*Յետոյ Արտեան Հովիւեան Բարիզ կը պատմէր այդ րոպէին իմ գրեթէ խելագարումս, եւ երկու ձեռքերս ուժգին գլխուս զարնելս այս աղէտին ի լուր.*

*- Մեռա՞ւ, հարցուցի.*

*- Ո՛չ:*

*Քիչ մը հանգստացայ:*

*Յաջորդ օրը* [Հնչակեան] *Գործադիր մարմնին անդամներէն ոմանք եկան զիս գտան: Շա՜տ ծանր խօսեցայ. բայց եղածը եղած էր, ու եղելութիւնը հետեւեալ կերպով պատմեցին:*

*Ղալաթիա վաճառական մը՝ Մ...եան, որմէն 200 ոսկի պահանջուեր է, խոստացած է եղեր այդ օրերը վճարել, բայց երբ գանձումին համար Հնչակեան մը ներկայացած է, տրուած պատասխանը մերժողական եղած է: Ու ետքէն ստոյգ աղբիւրէ իմացեր են որ Գարակէօզեան Տիգրանը արգելք եղած է խոստումին կատարմանը.*

*- Ատ չափզրկններուն բան մը չտուի վռնտեցի, ըսեր է Մ...ին, ինչ կրցան ընել որ, դուն ալ մի տար. ի՞նչ կրնան ընել որ:*

*Այս տեղեկութիւնը մեր կրակոտ երիտասարդներուն գլուխը բռնկցուցած է: Մէկ կողմէն՝ Ջէյթունին ապստամբութիւնը եւ դրամի անհրաժեշտ պէտքը, միւս կողմէն՝ Գարակէօզեանին յարուցած արգելքը: Ինք չտուա՛ւ թող չտար, ուրիշներ ալ չը տուին, ո՞վ բան մը ըսաւ, բայց արգե՛լք ըլլալ, բայց նախատե՞լ, բայց կուսակցութեան վարկը մէկ փարայի ընելու աշխատիլ այն պահուն երբ անդին Ջէյթունը կրակի մէջ է: Ուստի ժողովք մը ընելով որոշեր են Տիգրան Գարակէօզը սրունքէն վիրաւորել միայն վախցնելու համար: Խնդալս չկրցի զսպել երբ այդ որոշումնին իմացայ, իբր թէ կարելի ըլլայ մէկուն ըսել՝ «բարեկա՛մ, կեցիր քեզի ուզած տեղէս անվնաս մը վիրաւորել կ'ուզեմ»: Ու ինծի ալ բան մը չեն հաղորդած, գիտնալով որ անպատճառ արգելք պիտի յարուցանեմ: Ասկէ զատ՝ վիրաւոր վիճակիս մէջ, վտանգաւոր համարած էին զիս խռովել, յոգնեցնել:*

*Ահա այս է սպանման պատմութիւնը:*[52]

Առաջին անգամ Արզուեան կը մերկանար իբրեւ հարուստներու աhաբեկչութեան կողմնակից՝ տակաւին իր կուսակցական կեանքի սկզբնական շրջանին:

Արփիարեանի պատմածը, առաջին հայեցքէն, կրնայ հնարովի ըլլալ: Բայց յօդուածէն ճիշդ հինգ տարի ետք, Երուանդ Օտեան գրեթէ նոյն մանրամասնութիւններով կը պատմէ դէպքը.

*Այս միջոցին* [իմա՝ Արփիար Արփիարեանի մահափորձէն եւ ապաքինումէն ետք, Հ. Ա.], *իրիկուն մը, Ղալաթիա, թիւնէլ մտած միջոցիս հանդիպեցայ Վահէ Արզուեանի որ մէկէն ի մէկ ըսաւ.*

*- Այս իրիկուն հարուստներու դէմ ցոյց մը պիտի ընենք...*

*- Ի՞նչ ցոյց:*

*- Տիգրան Գարակէօզեան տէռօրի պիտի ենթարկուի:*

*- Արփիարը գիտէ՞, հարցուցի:*

*- Ոչ՛, հիմա իրեն պէտի երթայի իմաց տալու, պատասխանեց Վահէ, բայց քանի որ քեզ տեսայ ա՛լ ես չեմ ուզեր երթալ, որովհետեւ ուրիշ կարեւոր գործեր ունիմ, դուն գնա՛ իրեն իմացուր եւ ըսէ՛ թէ ամէն բան պատրաստ է գործողութիւնը կատարելու համար... տես ի՞նչ կ'ըսէ:*

*- Բայց եթէ ընդդիմանա՞յ:*

*- Անմիջապէս եկուր ինծի իմաց տուր, Եանիի գարեջրատունը քեզի կը սպասեմ:*

*Հեւ ի հեւ վազեցի Արփիարեանի քով՝ որ այլեւս անկողինը թողած՝ բազմոցին անկիւնը կը բազմէր:*

*Պատմեցի Վահէի ըսածները: Արփիար չափազանց յուզուեցաւ ու խռովեցաւ,*

*- Վազէ՛ խսկոյն զէնքը տե՛ս եւ ըսէ՛ որ չըլլայ թէ այդպիսի բան մը ընեն... բացարձակապէս կը հակառակիմ, թո՛ղ գիտցած ըլլան, չո՜ւտ գնա՛ զէնքը գտիր...*

*Վերադարձայ Եանիի գարեջրատունը, ուր արդարեւ Վահէ նստած էր:*

*Իրեն կրկնեցի Արփիարին խօսքերը: Ժամացոյցը նայեցաւ եւ պատասխանեց.*

*- Կարծեմ այլեւս ուշ մնացինք, գործողութիւնը կատարուած ըլլալու է...:*

*- Բայց Արփիար բացարձակապէս հակառակ է այդ մահափորձին, պնդեցի:*

*- Երթամ նայիմ, եթէ տակաւին ժամանակը չէ անցած ու կարելի է արգիլել՝ այն ատեն կը յետաձգենք գործողութիւնը, ըսաւ Վահէ ոտքի ելլելով:*

*Միասին դուրս ելանք եւ ինք բաժնուեցաւ ինէ Կալաթա-Սարայի դիմաց եւ ես մտայ Թօքաթլեանի սրճարանը, որ այդ թուականին գրեթէ մեր կեդրոնատեղին էր:*

*- Տիգրան Գարակէօզեանը զարկեր են...:*

*Առաջին անգամ այս լուրը լսեցի ներս մտնելով:*

*Ուշ մնացեր էինք...:*

*Ա՛լ չհամարձակեցայ Արփիարին քով վերադառնալ եւ հետեւեալ օր ուրիշներէն իմացայ եղելութիւնը:*

*Տիգրան Գարակէօզեանի վէրքերը, առաջին անգամ թեթեւ կը կարծուէին, բայց խեղճը մէկ երկու օր ետքը մեռաւ:*

*Իր դէմ եղած գլխաւոր ամբաստանութիւնը այն էր թէ ինք յեղափոխութեան, կամ սուրբ գործին, ինչպէս կ'ըսէին, դրամ չվճարելէ զատ, վճարելու տրամադրութիւն ունեցող հարուստներուն ալ կը խրատէր եւ նոյն իսկ կը ստիպէր դրամ չտալու:*[53]

Այսպէս, *Լուսաբեր*ի Հոկտեմբեր 17-ի թիւով, Արզուեանի վարկին շուրջ նոր կայծ մը կ'աւելնայ։

Բայց տակաւին գլխաւորը չէ հասած։ 1907 Նոյեմբեր 5-ի թիւէն Արփիարեան կը սկսի երկար յօդուածներու շարք մը՝ որոնք քանի մը ընդմիջումներով կը շարունակուին մինչեւ Նոյեմբեր 30։ Յօդուածներուն կեդրոնը Արզուեանն է՝ իբրեւ «դիկտատոր» եւ դրամաշորթ։

Առաջին յօդուածին մէջ՝ Նոյեմբեր 5-ին, ի միջի այլոց, կը մատնանշէ.

[Մասնաւոր ծրագիրի մը համար նախատեսուած] 5000 *ֆրանգը Ամերիկայէն խրկուեցաւ երկու անգամէն. առաջին 2500 ֆրանգը 1899 ապրիլ 16-ին Փարիզ Հասաւ,* «Alexander Arzou» *«Աղեքսանդր Արզու» Հրամանին, միւսն ալ մայիսին վերջին օրերը. ու Արզուեան որ ստակը ամբողջովին առնելէն իրեք ամիս վերջը իր գործը աւարտած պիտի ըլլար, այսինքն՝* 1899 *սեպտեմբերին, դեռ* 1900 *փետրուարին «Փարիզ կը սլքտար» ըստ Լեւոն Մկրտիչեանի ինծի գրածին: Ու այդ ժամանակամիջոցին կը շարունակէ Ամերիկայէն ստակ քաշել ուղղակի Կարապետ Փափազեանին միջոցաւ, եւ ես այդ առաքումին դէմ բողոք գրած եմ, իբր ապօրինաւոր գործ:*

*Երկարելու պէտք չկայ. օր մըն ալ Մկրտիչեանէն նամակ առի որով կ'իմացնէր թէ՝ Արզուեանը* 1900 *մարտի մէջ Եգիպտոս երթալով իրմէն* 1500 *ֆրանգ եւս առեր է: Վերջապէս, ըստ Մկրտիչեանին գրածին, Արզուեան* 500 *անգլիական ոսկի* (12500 *ֆրանգ*) *քաշեր է, առանց գործ մը յաջողցնելու:*[54]

Նոյեմբեր 7-ի թիւին մէջ Արզուեան կը ներկայանայ իբրեւ անձ մը՝ որ ամէն ճիգ կը թափէ նոյնիսկ ամենաջնջին գումար մը ձեռք ձգելու համար.

*Ամենապզտիկ գումար մը իսկ իւրացնելու Համար Ալիքսան Արզուեանին անձեռնՀասութիւնը Հաւաստեմ, իրմէն եղած խնդրանքի մը առթիւ:*

*Երբ* 1900 *դեկտեմբերին վերջին օրերը Արզուեանը Պոլիսէն Բարիզ վերադարձաւ ու զինքը տեսնելու գացի, ինէ խնդրեց որ կուսակցութիւնը իրեն, իբրեւ վարչութեան անդամի, ամիսը* 15 *անգլիական ոսկի յատկացնէ: Պատասխանս մերժողական եղաւ. Կեդրոնի անդամներէն ո՛չ ոք ամսական կը ստանար: Խմբագրութեան ծախքերն ալ Նոր կեանքի բաժնեգիններէն կը Հոգացուէին, որով ոչ ոք կուսակցութեան վրայ բեռ կը մնար, կամ նուիրատուներու դրամովը կ'ապրէր Եւրոպա: Աւելցուցի որ՝ եթէ իմ Հաւանութիւնս տայի անգամ, մեր միւս պաշտօնակիցներն ալ պէտք էր Հաւանէին: Բայց ոչ ոք պիտի ուզէր տարին* 5,000 *ֆրանգի անպէտ ծախք մը ընել, Արզուեանը անկարող ըլլալով արտասաՀման ո եւ է օգտակար աշխատութեամբ իր ժամանակը կուսակցութեան զոՀել ու փոխարինութեան մըն ալ իրաւունք ստանալ: Եթէ երկիր մտնար, ըստ մեր պայմանին, խնդիրը կը փոխուէր:*[55]

Նոյեմբեր 9-ի թիւին մէջ Արփիարեան կ'ամբաստանէ Վերակազմեալները՝ որ 1901-էն ետք դրամաշորթ «դիկտատոր» Արզուեանը նշանակեցին իբրեւ ղեկավար.

*Ինչո՞ւ Համար* 1896-*ին Լոնտոն գումարուած ժողովը սոսկալի տեսակէն Հակառակորդ մըն էր Ալիքսան Արզուեանին:*

*Այդ ժամանակամիջոցին –* 1896-1900 *չկար վերակազմեալ մը որ անիծելով չանիծեր Արզուեանը – ինչո՛ւ:*

*Դուք ամէնքդ ալ Վերակազմեալներ, անխտրաբար անձնական Հակառակութիւն մը չէիք կրնար ունենալ Արզուեանի դէմ: Եւ կարծեմ թէ ոչ մէկերնիդ ալ անՀատական Հաշիւ մը*

*ունէիք այդ մարդուն հետ. այլ պարզապէս՝ զինքը դրամաշորթ, աւազակ, ու թրքական սպասարկու կը համարէիք: Ի՞նչպէս ուրեմն այդ «դրամաշորթը, այդ աւազակը, այդ թրքական սպասարկուն» բացարձակօրէն դիկտատոր նշանակեցիք:*[56]

Նոյեմբեր 12.

*Նախորդ տեղեկութիւններով ցոյց տրուեցաւ որ եթէ Արզուեան մը կարող եղաւ դրամաշորթութեամբ պարապիլ առանց արգելքի եւ ազգին գլխուն ամէն փորձանք բերել, բոլոր այդ չարագործութեանց պատասխանատուութիւնը կը ծանրանայ այն Վերակազմեալներուն վրայ որոնք կուսակցութեան օրէնքները ոտնակոխ ընելով, միահեծան դիկտատորութիւն տուին անհատի մը:*[57]

Նոյեմբեր 16.

*Այդ ժողովին* [իմա՝ Վերակազմեալներու Բ. Պատգամաւորական Ժողովին, Աղեքսանդրիա, 1898, Հ.Ա.] *մէջ Արզուեանին ոչ մէկ բարեկամ չէր գտնուեր. բայց ոչ ոք ալ անտարբեր կ'երեւնար Արզուեանին համար. բոլոր ժողովականներն ալ անոր ոխերիմ հակառակորդներն էին, աւելի կամ նուազ բուռն սաստկութեամբ: Ինչո՞ւ այս կատաղութիւնը. վասնզի Արզուեանը կը համարէին՝ դրամաշորթ, պաշը-պօզուգ, դաւաճան մը:*[58]

Նոյեմբեր 23.

[Արզուեանի ոտնձգութիւններուն] *վրայ օր մը ընդարձակօրէն կը գրեմ, եւ ձեռքս գտնուած թղթակցութիւններս, որոնք թէեւ պակասաւոր են, բայց կը բաւեն ամէն բան պարզելու:*[59]

Նոյեմբեր 30. մանրամասնօրէն բացատրուած 9 կէտերու մէջ Արփիարեան կ'ուզէ փաստել Արզուեանի դրամաշորթութիւնները: Քաղեմ միայն երկրորդն ու եօթներորդը.

2.- *Պոլսոյ Մասնաճիւղին գանձապահ Սիսակ Մելիքեան* 1896 *Հոկտեմբեր* 12-*ին Լոնտոն եկաւ: Նորընտիր Վարչութեան ներկայանալով յայտարարեց թէ՝ Ալիքսան Արզուեան Մասնաճիւղին ձեռքը գտնուած* 1,500 *Օսմանեան ոսկին կորզելու համար, զինքը խղդել տալու փորձ մը ըրած էր երկու հոգիի ձեռքով: Մանրամասնութեանց մէջ չեմ մտնար: Այդ ամբաստանութիւնները լսուեցան վարչական ժողովին մէջ, որուն անդամներն էին՝ Միհրան Սվազլ, Միհրան Տամատեան, Ս. Սուրէնեան եւ ես: Պոլսէն եկած նամակները եւ ուրիշ տեղեկութիւններ այս ամբաստանութիւնները հաստատեցին:*

7.- *Արզուեան* 1897-*ի ամառը Հնչակեան կեղծ կնիքով մը Կ. Պոլիս կը սկսի դրամ հաւաքել, մահուան սպառնալիքով: Վտանգի ներքեւ գտնուողները Լոնտոն իրենց զաւկին կը դիմեն:*

*Զաւակը մեզի կուգայ, եւ Վարդան Խանիկեան որ այդ պահուն Լոնտոն էր կուգայ գիս կը հրաւիրէ Տամատին քով: Սպառնագիրը Լոնտոն խրկուած էր, կնիքը կեղծ էր, ու ես կ'անդրադառնամ թէ՝ թուանշանները Արզումանեանինն են: Պոլսոյ մասնաճիւղին հարկ եղածը թէեւ կը գրենք, բայց այս գործը Տամատեանին եւ իմ միջեւ ամենածանր գժտութեան պատճառ կ'ըլլայ, ցաւալի թիւրիմացութիւններով: Բայց Տամատեանը կատարելապէս կը համոզուի թէ՝ Արզուեանը պաշը-պօզուք դրամաշորթ մըն է:*[60]

Այս բոլոր յօդուածները բաւարար չե՞ն արդեօք մարդասպանութեան փորձ ու տենչ ունեցող անձի մը կամ խմբակի մը համար երեք-չորս ամսուայ ընթացքին կազմակերպել սպանութիւն մը։

## 6. ԴԷՊԻ ՍՊԱՆՈՒԹԻՒՆ ՏԱՆՈՂ ՃԱՄԲԱՆ

Այս պայմաններուն մէջ Արփիարեանի սպանութիւնը վճռուած հարց մըն էր։ Բայց խմորումներու եւ դէպքերու ամբողջ շղթայակապ զարգացում մը տեղի ունեցած էր, զոր ականատեսի աչքով կը ներկայացնէ Արփիարեանի ամենամտերիմ բարեկամներէն Երուանդ Օտեան.

*Առաջին սրտազեղումէն ետքը* [երբ Արփիարեան 1904-ին կու գար Եգիպտոս, Հ.Ա.], *չեմ գիտեր քանիերորդ անգամը ըլլալով՝ դարձեալ խորհուրդ տուի իրեն բոլորովին քաշուելու կուսակցական պայքարներէ եւ ինքզինք նուիրելու գրականութեան:*

*- Ես ալ արդէն ա՛լ զզուած եմ այդ ամենէն, պատասխանեց, նոյն իսկ պիտի ջանամ կուսակցականի հետ չխօսիլ, անոր բարեւ չտալ:*

*- Կեցցէ՛ս ուրեմն, ըսի, հիմա մարդ եղար, խելքդ գլուխդ եկաւ:*

*Յետոյ գացինք տեսնել հին բարեկամներ, Լեւոն Մկրտիչեան, Միքայէլ Կիւրճեան, Միհրան Թելեան, Բարեպաշտ, եւն.:*

*Ամէնքն ալ իմ խրատս կրկնեցին իրեն ու ամենուն ալ նոյն պատասխանը տուաւ:*

*Համոզում գոյացուցինք թէ արդարեւ Արփիար այլեւս փոխուած էր:*

*Իրա՛ւ ալ, Արփիար մէկ քանի օր ճշմարտապէս խոյս տուաւ յեղափոխականներէն, մեզի հետ առանձնացաւ, եւ կուսակցական խօսակցութիւններէն փախուստ տուաւ:*

*Բայց ահա՛ օր մը Բարսեղ Օհանեանի հետ կը տեսնուի, միւս օր Օննիկ Թաշճեանի կը ծանօթանայ, երրորդ օրը Լեւոն Լարենցի հետ տեսնեմ զինքը:*

*- Արփիար, ի՞նչ է այս, կ'ըսեմ յանդիմանական շեշտով մը, նորէն սկսար մօտենալ անոնց:*

*- Չէ՛, Լարենցի հետ Անգլիական գրականութեան վրայ խօսեցանք, զարգացած մէկը կ'երեւայ կոր, Պոլսոյ լրագրութեան վրայ տեղեկութիւններ առի, պատասխանեց:*

*Յետոյ, կամաց կամաց, հետերնին վիճաբանութեան սկսաւ, հին խնդիրներու տոպրակը բացաւ, վահէն մէջտեղ դրաւ, ուզեց զանոնք համոզել, եւն.:*

*Տեսայ որ դարձեալ հին Արփիարն էր:*

*Ի զո՛ւր ես ու Կիւրճեան կը ջանայինք զինքը առնել տանիլ առանձնացնել: Մինակ մնալուն պէս միջոցը կը գտնէր երթալ Լարենցը գտնելու եւ «Անգլիական գրականութեան վրայ խօսելու»:*

*Բարեբախտաբար շատ չմնաց Ալեքսանդրիա: Իր գալուստը իմացուելուն պէս, զինքը ուզեցին Գահիրէէն Լուսաբերի խմբագրութիւնը իրեն յանձնելու համար:*

*- Ջըլլայ որ թերթին մէջ պայքար սկսիս Հնչակեաններու դէմ, թո՛ղ զիրենք ինչ կ՚ուզեն ընեն, խրատեցինք մեկնելէն առաջ:*

*- Երբեք չպիտի զբաղիմ իրենցմով, պատասխանեց վճռաբար, ա՛լ ինծի համար անոնք գոյութիւն չունին:*

*- Բայց հոս սկսար հետերնին տեսնուիլ, վիճաբանիլ...*

*- Ի՞նչ ընեմ, ժամանակ անցընելու համար էր... բայց Գահիրէ արդէն իրենցմէ մարդ չեմ ճանչնար որ խօսիմ, ասկէ զատ, հաստատապէս որոշած եմ, բարեւ անգամ չպիտի տամ:*

*- Մանաւանդ Լուսաբերի մէջ բնա՞ւ հեռուէն մօտէն ակնարկութիւն մի՛ ըներ:*

*- Տող մը բան չպիտի գրեմ իրենց վրայ:*

*Այս հաստատ մտադրութեամբ Արփիար ճամբայ ելաւ Գահիրէ երթալու համար:*

*Իրա՛ւ ալ երբ իր խմբագրապետութեամբ Լուսաբեր սկսաւ հրատարակուիլ, առաջները բնաւ պայքար մը չէր նշմարուեր յեղափոխական կուսակցութիւններու դէմ:*

*Լարենցի խմբագրութեամբ Գահիրէի մէջ չարունակուած Ազատ բեմը դադրած էր, Դաշնակցականները ո եւ է օռկան չունէին, այնպէս որ պայքարի ալ տեղի չի կար:*

*Արփիար գոհ էր իր վիճակէն, ապրուստը ապահոված էր, երբօրորդին՝ Փիլիկը՝ բերել տուած էր Իտալիայէն ու իր քովը առած, միւս կողմէ հնաւուրց բարեկամներ, Տիրան Քելէկեան ընտանիքը, Մալէզեան ընտանիքը, եւն. չրջապատած էին զինքը, Վահան Թէքէեանն ալ Գահիրէ գացած ու հոն հաստատուած էր, այնպէս որ Արփիար իր արտասահմանի մենաւոր ու թափառական կեանքին մէջ երբեք ասանկ վիճակ մը չէր ունեցած:*

*Բայց ահա՛ սպառնական նամակներու խնդիրը երեւան ելաւ, Հայ հանրային կարծիքը սկսաւ յուզուիլ Ալեքսանդրիոյ ու Գահիրէի մէջ, ամէն մարդ, տուները, փողոցն ու սրճարանները ատով կը զբաղէին: Ասկէ զատ Պօղոս փաշայի չրջանակին մէջ գտնուող Արփիարի հին բարեկամ մը Պ. Յովակիմ Յովակիմեան, ամենօրեայ խօսակիցը եղած էր իրեն եւ ամէն օր կը կրկնէր Արփիարի թէ հարկ էր բացէ ի բաց, հրապարակաւ, պայքար վարել այդ յեղափոխականի անունին տակ դրամաչորթութիւն ընող խմբակին դէմ, թէ պէտք էր զանոնք դիմակազերծ ընել, եւն.:*

*Միւս կողմէ հին Հնչակեան ընկերներ, որոնք քաչուած էին կուսակցութենէն, զինքը կը քաջալերէին ըսելով որ վախնալիք բան մը չի կար, թէ երբեք չպիտի համարձակէին Եգիպտոսի մէջ ոճիր մը գործել, թէ տէրօրները յայտնուած էին եւ փախչելու յայտնուած էին եւ փախչելու ստիպուած, եւն.:*

*Բոլոր ասոնք վերջապէս մղեցին Արփիարը Լուսաբերի մէջ վերսկսելու պայքարը Վահէի ու իր ընկերներուն դէմ, ամենաբուռն կերպով: Ինքն ալ արդէն, պէտք է խոստովանիլ, չափազանց տրամադիր էր ասոր ու գերմարդկային ճիգեր կ՚ընէր հանդարտ մնալու համար:*

*Իր այս ընթացքով Արփիար ձեռքովը խզած կ՚ըլլար անձին ապահովութեան համար այն*

*լուելեայն պայմանը զոր, իր գալուստէն առաջ, գոյացուցած էինք վերակազմեալ Հնչակեան-ներու հետ:*

*Լուսաբերի մէջ պայքարը սկսելէն քիչ ետքը ինծ զգացուցին բարեկամ Հնչակեաններ.*

*- Եթէ չարունակէ այս լեզուն` մենք չենք կրնար պատասխանատու ըլլալ պատահելիքին, ըսին:*

*Իրեն նամակով գրեցի այս սպառնալիքը:*

*«Ա՛լ կարելի չէ ետ կենալ, պատասխանեց, թո՛ղ ընեն ինչ որ կ՚ուզեն»:*

*Բնականաբար Արփիարի գրածները մեծ ընդունելութիւն կը գտնէին եւ իրապէս կը վարկաբեկէին վերակազմեալ Հնչակեանները, որոնց կատաղութիւնն ու զայրոյթը հետզհետէ կ՚աւելնար:*

*Նախ այդ Հնչակեանները Գահիրէի մէջ գումարուելով` կ՚որոշեն Արփիարը լաւ մը ծեծել: Բայց յետոյ այդ պատիժը անբաւական եւ նոյնիսկ վնասակար կը համարեն:*

*Երկրորդ գումարման մը մէջ, ընկեր մը կ՚առաջարկէ արջասպ (քէզապ) նետել Արփիարի երեսին ու քիթը բերանը այրել եւ նոյնիսկ թերեւս աչքերը կուրցնել:*

*Այս միջոցը, ինչպէս յայտնի է, Բարիզի մէջ կիները կը գործածեն իրենց անհաւատարիմ ամուսինը կամ սիրահարը պատժելու համար:*

*Այդ տարօրինակ առաջարկը միաձայնութեամբ կ՚որոշուի:*

*- Այո՛, արջասպ նետենք երեսին, կը գոչեն:*

*Գործադրութիւնը կը յանձնուի նոյնիսկ առաջարկը ընող ընկերին, որուն օգնական մը կը տրուի` Յովակիմ անունով: Յովակիմ Ռոտոստոցի տղայ մըն էր, անկեղծ, պակասամիտ եւ յանդուգն: Ինքն էր որ Աղեքսանդրիոյ մէջ կոտրած էր Բարթող փաշայի մարմարեայ արձա-նագրութիւնը եւ բաւական ժամանակ Ազատ բեմի գրաշարութիւնը ըրած էր:*

*Հնչակեան ընկերը կ՚ըսէ իրեն.*

*- Քեզի բան մը պիտի ըսեմ եւ դուն ալ առանց վարանելու պիտի ընես այդ բանը:*

*- Կ՚ընեմ, կը պատասխանէ Յովակիմ:*

*Ընկերը կը տանի տղան, հեռուէն անոր ցոյց կուտայ Արփիարը.*

*- Կը ճանչնա՞ս այս մարդը, կը հարցնէ:*

*- Այո՛, Արփիարն է:*

*- Լա՛ւ, քեզի շիշի մէջ դրուած հեղուկ մը պիտի տամ ու այս մարդուն երեսին պիտի թափես:*

*- Ո՞ւր է հեղուկը:*

*- Սպասէ՛:*

*Արփիարի վրայ այս եղեռնագործութիւնը կատարելը ամենադիւրին գործ մըն էր որ ո եւ է վտանգ չէր ներկայացներ գործողին համար:*

*Արփիար փողոց մը կը բնակէր գրեթէ մութ, անցուդարձը ցանցառ էր, գիշերը յաճախ այցելութեան երթալով, ուշ կը դառնար տուն, իր վերարկուին մէջ պլլուած, գլուխը կախ ու առանց շուրջը նայելու: Շիշը գլխուն ի վար թափել ու ձգել փախչիլ, այս էր ամբողջ ըլլալիքը:*

*Շատ մը անգամներ ընկերն ու Յովակիմ կը հետապնդեն Արփիարը, ընկերը իր գրպանին մէջ պահած աղետալի շիշը, բայց ամէն անգամ ո եւ է դիպուածական պատահար մը արգելք*

*կ՚ըլլայ ծրագիրը գործադրելու: Շատ հաւանական է որ Հնչակեան ընկերը, որ Արփիարի գրական տաղանդը գնահատելու կարող մարդ մըն է, ամէն անգամ խղճահարութիւն մը զգացած է, վերջին վայրկեանին, արարքը կատարել տալու:*

*Զմռնամ ըսելու որ այդ անձը մին է այն Հնչակեաններէն, որուն դիմած էի Արփիար տակաւին Իտալիայէն չեկած, որպէս զի հասկնամ թէ Եգիպտոսի մէջ անոր կեանքին դէմ վտանգ մը կա՞ր եւ որ ժխտական պատասխան տուած էր պայմանաւ սակայն որ Արփիար իրենց կուսակցութեան դէմ չգրէ:*

*Յետոյ այս Հնչակեանն ալ հեռացաւ Վահէի խմբակէն, ինչպէս նաեւ Յովակիմ, որ այդ խմբին կատաղի հակառակորդը դարձաւ:*

*Արջասպի փորձն ալ վիժելէ ետքը, կ՚որոշուի Արփիարը սպաննել:*

[...]

*Լուսաբերի մէջ Վահէի ու անոր խմբակին դէմ պայքարը հետզհետէ կը սաստկանար եւ ամէնքս ալ կը զգայինք թէ Արփիար փորձանք մը կը պատրաստէր իր գլխուն: Ինքն ալ այս բանը գիտէր եւ երբ փողոցը Ֆիլիկին հետ քալէր, կը ստիպէր զայն որ քիչ մը անդիէն երթայ, որպէս զի եթէ իրեն դէմ մահափորձ մը կատարեն, սխալմամբ եղբօրորդին չզարնուի:*

*Նոյն ստիպումը կ՚ընէր նաեւ իր ուրիշ մտերիմ բարեկամներուն:*

*- Գործը չօլբազ տէրօրի մը յանձնուած կ՚ըլլայ՝ պարապ տեղը դուք կը վնասուիք, կ՚ըսէր:*

*Իր բարեկամները սակայն իր մասին մտատանջուելով հանդերձ՝ չէին կարծեր որ ոճիր մը գործելու չափ առաջ պիտի երթային իր հակառակորդները:*

*Արփիարի մղած պայքարը հրապարակային քննադատութիւն մըն էր խմբակի մը դէմ, որուն արարքները զզուանք եւ զայրոյթ յառաջ բերած էին բովանդակ հայութեան մէջ եւ ինչ որ ինք քաջաբար կը գրէր՝ ուրիշներ արդէն երկար ատենէ ի վեր կը կրկնէին իրարու:*

*Արփիար «Սովալլուկ գայլերու Վոհմակ» անունով մկրտած էր զանոնք եւ իրաւամբ ալ չափազանցութիւն չի կար այս որակումին մէջ:*

*Այս պայքարի տաք միջոցին Արփիար, օր մը նստած է եղեր Իսմայիլիա թաղին կողմերը, Վիքթօրիա սրճարանը, մայթին վրայ դրուած սեղաններէն մէկուն քով եւ գրելու զբաղած:*

*Նոյն միջոցին սրճարանին կից ճաչարանը կուգայ Պ. Լեւոն Լարենց եւ կը նստի՝ նոյնպէս փողոցի մայթին վրայ դրուած սեղանի մը քով, Արփիարին մօտիկը:*

*Եւ ահա՛ կը սկսի հոնկէ սպառնալիքներ ընել Արփիարին:*

*- Պիտի տեսնաս ի՛նչ պիտի ընենք քեզի, եթէ մեզի դէմ գրելը շարունակես, կը գոչէ:*

*- Ինչ որ կ՚ուզէք ըրէք, միայն գիտցէ՛ք որ զիս չէք կրնար վախցնել եւ պիտի շարունակեմ գիտցածներս հրապարակելու, կը պատասխանէ Արփիար:*

*- Մենք գիտենք քեզ լռեցնելուն կերպը, կ՚ըսէ Լարենց ու այսպէս մէկ քանի խօսք իրարու հետ փոխանակելէ ետքը, Արփիար բարկութեամբ ոտքի կ՚ելլէ եւ ձեռքի գրիչը Լարենցի ուղղելով կը գոչէ.*

*- Այս գրիչս աչքդ կը խօթեմ...*

*Լարենց կրկին սպառնալիքներ տեղալով՝ Արփիարի վրայ կը վազէ, վերջապէս սրճարանին ծառաները, որոնք Արփիարը կը ճանչնային ու կը յարգէին, կը միջամտեն ու կը հեռացնեն Լարենցը:*

Արփիար իսկոյն կը դիմէ ոստիկանութեան եւ իմաց կուտայ իր դէմ բերանացի կերպով եղած սպառնալիքները:

Ոստիկանութիւնը կը նշանակէ իր յայտարարութիւնները եւ կ՛ըսէ թէ կարելի եղած հսկողութիւնը ի գործ պիտի դրուի Լարենցի վրայ:

Այս միջադէպէն քանի մը ամիս վերջն էր որ Արփիար սպաննուեցաւ, երբ արդէն Լարենց խոյս տուած էր Եգիպտոսէն:

[...]

1908 Փետրուարի սկիզբներն էր երբ Արփիարէն նամակ մը առի:

Այդ նամակով կը ծանուցանէր թէ իմացած է որ զինքը սպաննելու որոշում տրուած է, թէ ասոր համար պէտք եղած տէրօրը արդէն իսկ Ամերիկայէն բերուած է [...]:

«Այս ամենուն կարեւորութիւն չպիտի տայի, կը գրէր, եթէ յանկարծ Գահիրէէն անյայտ չըլլային Զարեհ Գոչեան եւ Լեւոն Լարենց: Իրենց անյայտացումը կասկածիլ կուտայ թէ իրաւցնէ բան մը պիտի ընեն:»

Եւ ինք իսկոյն լուր կ՛ուզէր այդ երկուքին մասին, ենթադրելով որ անոնք Ալեքսանդրիա եկած են Գահիրէէն:

Իսկոյն փութացի տեղեկութիւն առնել եւ իմացայ թէ Զարեհ Գոչեան միշտ Գահիրէ կը գտնուի, իսկ Լեւոն Լարենց արդարեւ եկած է Ալեքսանդրիա, բայց հոն քանի մը օր կենալէ ետքը, փախած է Եւրոպա:

Այս փախուստը կը պատմուէր հետեւեալ կերպով:

Լեւոն Լարենց Ալեքսանդրիա գալով կը փորձէ ծխախոտի ծանօթ վաճառական Գրիգոր Մելքոնեան գումար մը պահանջել, յանուն վերակազմեալ Հնչակեան կուսակցութեան: Մելքոնեան կը մերժէ տալ, Լարենց կը սպառնայ. ի վերջոյ Մելքոնեան դիմում կ՛ընէ ոստիկանութեան եւ Լարենց կը ստիպուի անմիջապէս հեռանալ Ալեքսանդրիայէն:

Իր մեկնելէն ետքը, ոստիկանութիւնը իր քննութիւնը առաջ տարաւ բայց առանց շօշափելի արդիւնքի մը, քանի որ ամբաստանեալը արդէն հեռացած էր Եգիպտոսէն:

Այս տեղեկութիւնները իմանալով՝ հաղորդեցի Արփիարին՝ ըսելով թէ իր կասկածները չափազանցուած էին եւ թէ չէի կարծեր որ իրեն դէմ իրաւցնէ մահափորձ մը ըլլար: Եւ ճշմարտապէս կը հաւատայի թէ այդպիսի յիմարութիւն մը չպիտի գործուէր, քանի որ արդէն Թաւշանճեանի ու Աբիկ Ունճեանի սպանութիւնները այնքա՛ն վարկաբեկած են զանոնք գործող կուսակցութիւնը:

Եւ սակայն քանի մը օր ետքը, 1908 Փետրուար 13, Հինգշաբթի ցերեկ, երբ Ապու Տարտար փողոցէն կ՛անցնէի, Բարեպաշտ, իր խանութին առջեւ կեցուց զիս:

- Իմացա՞ր, հարցուց:

- Ի՞նչ բան...

- Արփիարին մասին բան մը չիմացա՞ր:

- Չէ՛, պատասխանեցի:

- Ուրեմն գնա՛ Միհրան Թելեանը տես:

- Ի՞նչ, գոչեցի, գէշ լո՞ւր մը կայ, զարկե՞ր են զինքը...

- Այո՛, պատասխանեց Բարեպաշտ, հեռագիր եկեր է Առաջնորդարան:[61]

## 7. ՍՊԱՆՈՒԹԻՒՆ, ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԹԱՂՈՒՄ

Արփիարեան կը սպաննուի Չորեքշաբթի, 1908 Փետրուար 12-ին, երեկոյեան ժամը 9-ի մօտ, Գահիրէի Շարա Էլ Մանախ փողոցը, ատրճանակի երեք հարուածներով, ոմն. Պետրոս Հիւսէնեանի ձեռքով:

Ազգային յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի կ'ունենայ Ուրբաթ, Փետրուար 14-ին, Պէյն Էլ-Սուրէնի եկեղեցիին մէջ: Եկեղեցին կենալու տեղ չկար: Դասին մէջ սգակիր կանգնած էր եղբօրորդին՝ Փիլիկ Արփիարեան: Աղեքսանդրիայէն եկած էր Երուանդ Օտեան:

Ներկայ էին Ազգային Ժողովի ատենապետ Պօղոս Նուպար, Դեր ատենապետ Աղաթօն պէյ, Քաղաքական Ժողովի ատենապետ Սեդրակ Դաւիթեան եւ Ազգային Ժողովի անդամները:

Դամբանականներ կը խօսին՝ Առաջնորդ Հայրը, Վահան Մալէզեան եւ Վահան Թէքէեան:

Դագաղը կը փոխադրուի փառաշուք կատարումով.

*Դագաղը հանուելով եկեղեցիէն, Պէյն-էլ-Սուրէնի փողոցը պտտող ժողովրդեան հոծ ալիքներուն առաջէն դրուեցաւ քառաձի չքեղ մեռելակառքի մը մէջ, որ յամրօրէն սկսաւ յառաջանալ դէպի Մուսքի եւ դանդաղ անցնելով Մուսքիէն, Աթապա-էլ-Հաարայէն եւ Թըլթատան առջեւէն՝ հասաւ Օբէրայի հրապարակը:*

*Առջեւէն, դպրոցական աշակերտներ կը կրէին բազմաթիւ ծաղկեպսակները: Յետոյ կուգար մեռելակիր կառքը, նոյնպէս ծածկուած ծաղիկներու ներքեւ, որուն ետեւէն կը քալէր Պ. Փիլիկ Արփիարեան, շրջանակուած բարեկամներով: Վսեմ. Պօղոս փաշա Նուպար կը քալէր անմիջապէս ետքը, հետեւուած ահագին բազմութենէ մը որուն թիւը երկու հազար հոգի կը հաշուուի:*

*Տիկ. Սիրանոյշ իր խումբին ամբողջ անդամներով, հետիոտն կուգար ամբոխին մէջ:*

*Ճամբուն վրայ անցուդարձը դադրած էր եւ ամենազգի բազմութիւնը երկու կողմը շարուած՝ կը թուէր զգալ թէ սովորական թաղում մը չէր աս, թէ քիչ օր առաջ կատարուած Եգիպտացի հայրենասէր Մուսթաֆա Քամէլի ազգային սուգին մէկ կրկնութիւնն էր, փոքրաթիւ հասարակութեան մը համար:*

*Թափորը կանգ առաւ Օբէրայի հրապարակը ուրկէ յուղարկաւորներուն ստուար բազմութիւնը 50-է աւելի կառքերով՝ մեռելակառքին հետեւեցաւ մինչեւ Մարմինայի գերեզմանատունը:*

*Գերեզմանատան դուրսի դրան առջեւ դագաղը կառքէն վար իջեցուելով երիտասարդութիւնը, մեծ մասամբ մտաւորականներէ բաղկացած, ուսամբարձ տարաւ զայն գերեզմանատան ներսի մատուռը: Հոն եւս Առաջնորդ Հայրը մեռելական օրհնութիւնները կարդալէ վերջ, Ողբացեալին մտերիմներն ու հիացողները կրկին իրենց ուսերուն վրայ բարձրացուցին Արփիարեանի մարմինը եւ յուղարկաւորներու պատկառազգեաց չարքին մէջէն գուրգուրագին ու մեծ վայելուչ գնացքով մը տարին զայն հանգչեցուցին իր փոսին եզերքը:*

*Դագաղակիր կամաւորներու թիւը այնքան բազմաթիւ էր, որ դուրսը մնացողները կը խնդրէին միւսներէն իրենց ալ տեղ բանալ, կամ տեղերնին վայրկեան մըն ալ իրենց թողուլ:*

*Փոսին եզերքը ժողովուրդին պահանջմամբ դագաղը բացուեցաւ եւ ամբողջ ներկաները յարգանքի եւ կսկիծի անսահման արտայայտութեամբ մը ծռեցան վերջին անգամ մըն ալ նկատելու ողբացեալ գրագէտին արիւնաշաղ մարմինը որ ընդհանուր հեծկլտանքներ եւ արցունքներ խլեց ներկաներէն:*

*Առաւօտուընէ յայտնուած փափաքի մը համաձայն, Արփիարի փոսը բացուած էր Մուշեղի եւ Կունծիկ Աբեղայի (նախկին գործակից Արփիարի եւ խմբագիր Պոլսոյ Հայրենիքին) գերեզմաններուն քով:*

*Ս. Առաջնորդ Հայրը կնքեց հողակոյտը որուն վրայ նոր դամբանականներ արտասանեցին Պ.Պ. Արտաշէս Ազապլար եւ Աբրահամ Ջաղլասեան, երկու դեռատի երիտասարդներ որոնք Արփիարի սուգին պատանի հայութեան սրտին մէջ գտած խորունկ արձագանքը կը հնչեցնէին:*

*Այս դամբանականներէն ետքը գերեզմանին վրայ զետեղուեցան ծաղկեպսակները:*[62]

## 8. ՅԵՏՄԱՀՈՒ

Սպաննողը մատնանշող քիչ մը քօղարկուած արտայայտութեամբ կը սկսի Վահան Թէքէեան իր կարդացած դամբանականը.

*Քանի մը անգամ միտքէս անցեր էր, ո՛վ Արփիար, որ ինծի պիտի իյնար հողվրտիքիդ վրայ խօսիլ, ով դուն որ այնքաններու հողվրտիքը գրեցիր եւ խնդալով կ'ըսէիր որ դեռ շատերունը պիտի գրես: Չէիր կասկածեր, հաշուի չէիր առներ այն մահը որ ոչ թէ բնութենէն այլ՝ մարդոցմէ եւ մարդոց մէջ հայրենակիցներէ կուգայ, թէպէտ երկու անգամ այդ մահը մօտէն տեսեր էիր արդէն եւ վերջին երեք տարիներու միջոցին այդ միեւնոյն մահուան զոհ իյնալը տեսար բազմաթիւ ազգակիցներուդ, Պոլիս, Վան, Կովկաս, Ամերիկա եւ Պուլկարիա: Ու դուն չը վախցար այդ մահերէն ու ընդհակառակը հետզհետէ աւելի խստութեամբ, զանոնք պատճառողին դատապարտեցիր եւ զանոնք գործադրող մտքերն ու ձեռքերը հարուածեցիր: Շատերը, քու բարւոյդ համար, քեզ զգուշացնել ուզեցին այստեղ, քեզի խորհուրդ տուին հրաժարիլ այդ պայքարէն որ ամենէն ազնիւ ու ազգօգուտ պայքարն էր զոր ներկայ ժամանակիս մղել պէտք էր եւ զոր մղելով ոգի ի բռին, անդուլ, աննուաճ, անվեհօրէն եւ դիւցազնաբար՝ դուն վերջին մեծ ծառայութիւնը մատուցիր քու կեանքիդ, որ ծայրէ ի ծայր շարք մըն էր ազգիդ համար բնականօրէն, գրեթէ անգիտակցօրէն մատուցուած ծառայութիւններու: Եւ դուն, Արփիա՛ր, որ հերոս մը կոչուելէ կը վախնայիր, եղար իրական ճշմարտապէս մեծ հերոս մը՝ որովհետեւ՝ մահէն չվախցար ու խարանեցիր ոճրագործները, որովհետեւ՝ մահը չտեսնել ձեւացուցիր ու կուրծքդ բա՛ց կեցար՝ մէկ կողմէն կռուելով ու միւս կողմէն ժպտելով, ժպիտը շրթունքիդ վրայ ու պարսատիկը ափիդ մէջ:*[63]

«[Զ]անոնք պատճառողին դատապարտեցիր եւ զանոնք գործադրող մտքերն ու ձեռքերը հարուածեցիր» եւ «խարանեցիր ոճրագործները», կ'ըսէ Թէքէեան։ Գիտենք, որ Արփիարեան «դատապարտեց», «հարուածեց» եւ «խարանեց» միայն ու միայն Վահէ Արզումանին։ «Շատերը, քու բարւոյդ համար, քեզ զգուշացնել ուզեցին այստեղ», կ'աւելցնէ Թէքէեան։ Որմէ՞ պիտի զգուշացնէին եթէ ոչ այն անձէն որուն «կը դատապարտէ», «կը հարուածէ» եւ «կը խարանէ»։

Թէքէեան իրաւացիօրէն զայրացած է։ Մտաւորական մը կը սպաննուի։ Քանի մը օր ետք, դամբանականին սկիզբը կատարած մատնաշումին փակագիծերը կը բանայ.

*Ոճրագործ խմբակին առաջին շահատակութիւնը չէ աս։ Ամէն ոք գայն կապեց իսկոյն Ունճեանի եւ Թաւշանճեանի սպաննութեանց հետ, եւ չսխալեցաւ։ Անոնց առջեւ սակայն, Հայութիւնը չկանգնեցաւ մէկ մարդու նման, հայ լրագրութիւնը չի գոռացուց իր միահամուռ չանթահարող ձայնը, եւ թող տուաւ այս նոր ոճիրին գործադրութիւնը։*[64]

«Ոճրագործ խմբակը» արդէն բոլորին յայտնի Արզումանն է։ Բայց այստեղ Թէքէեան նաեւ կը մեղադրէ մտաւորականութիւնը (լրագրութիւնը)՝ որ «չի գոռացուց իր միահամուռ շանթահարող ձայնը», առիթ տալով ուրիշ ոճրագործութիւններու։ Այս «չգոռացողներ»-էն մէկն է Արշակ Չօպանեան։ *Անահիտ*ի 1907-ի թիւերէն մէկուն մէջ ան հակաճառելով Արփիարեանին, գրած էր.

*Եւ ի՞նչ լրբութիւն՝ վերագրել այս նոր* [իմա՝ Թաւշանճեանի, Հ.Ա.] *սպանութիւնը «դրամաշորթ խմբակ»-ի մը... Ի՞նչ անշնորհք եւ հակազգային զրպարտութիւն։ Դրամաշորթ խմբակ չկա՛յ Հայոց մէջ։ Այդ հեքեաթը Պ. Արփիարեան ստեղծեց՝ ինքզինքը պաշտպանելու համար կարգ մը Հնչակեաններու դէմ (զոր առաջ ինքն իսկ անօրինակ հերոսներ կը հռչակէր) երբ անոնք, զինքը նկատելով անկարող վարիչ, եւ մատնիչ, արտաքսեցին կուսակցութենէն։*[65]

Արփիարեանի սպանութենէն ետք Թէքէեան կը յիշէ ու կը յիշեցնէ այս գրութիւնը.

*Ահ, կը յիշեմ...։ Պարոն Չօպանեան, հինգ ամսուան խոհեմ լռութենէ մը վերջ, երբ ստիպուած, իր պրուստին մուրացածոյ ապահովութեանը համար, Անահիտի թիւ մը մէջտեղ հանեց՝ անխուսափելի գտաւ խօսիլ Թաւշանճեան ոճիրին վրայ...։ Ի՛նչ քաշքշուկ, երկարապատում տողերով սակայն, ի՛նչ զգուշաւորութեամբ, ի՛նչ դարձուածքներով, սակայն։ «Դրամաշորթ խմբակը» դրամաշորթ խմբակ կոչել՝ զզուելի սուտ մըն էր իրեն համար, «զոր Արփիարեան ստեղծած էր»։ «Կայէնը» կայէն անուանողը անոր ապերախտ մէկ բարեբարեալն էր. եւ այս ոճիրը գործող «հայ յեղափոխականներուն» դրամ չտուող դրամատէրնե՛րն էին ոճիրին գլխաւոր պատասխանատուները...։ Եւ այս ամէնը՝ արտածորող զզուելի*

*իմաստակութեան չեղջակոյտ, գլուխ-գործոց յօդուածէ մը զոր կարդացողը վերջ ի վերջոյ այն տպաւորութիւնը կ'ունենար – բան մը որուն արդէն կը ցանկար յօդուածագիրը – թէ շատ աւելի մեղաւոր էին Արփիարեան, Պարթեւեան եւ Հայ Հարուստները քան «Կայէն»-ն ու իր մեղսակից արբանեակները:*[66]

Յիշենք 1902-ին Արփիարեանի եւ Չօպանեանի փոխամբաստանութիւնները *Հայ հանդէս*ի եւ *Անահիտ*ի մէջ, որուն կարեւոր նիւթերէն մէկը Արզուեանն էր։

*Հայ հանդէս*ի 1902 Նոյեմբեր 15-ի թիւին մէջ Արփիարեան ուղղակիօրէն կ'ամբաստանէր Չօպանեանն ու *Անահիտ*ը իբրեւ Արզուեան խմբակի գործիք.

*Տօլանտրճիական խմբակ մը Հայ ժողովուրդը խաբելու, դրամ շորթելու կը հետամտի: Պ. Չօպանեան իր Անահիտովը անարգ գործիքն է այդ խմբակին, որուն չորս տարուան ձեռնարկներուն պատմութիւնը այժմ ամբողջապէս գիտենք:*[67]

Եւ ահաւասիկ, Արփիարեանի գրութենէն հինգ ու կէս տարի ետք, Թէքէեան կ'արտայայտէ միեւնոյն կարծիքը։

Ապա, *Լուսաբեր* կը տպագրէ հետեւեալ կարճ «լուր»-ը.

*Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հայ ամէն շրջանակներուն մէջ մեծ իրարանցում մը կը նշմարուի եւ կը շեշտուի օր օրի համերաշխութեան ոգին մութին մէջ գործող դրամաշորթ-մարդասպաններու ծանօթ վոհմակին դէմ:*[68]

Ուշադրութիւն դարձուցէք «ծանօթ» արտայայտութեան վրայ։

Ուրիշ «լուր» մը.

*Ծանօթ ասպատակ եւ աղխատւոր ազգադաւ՝ Վահէ Արզուեան եւ Լեւոն Լարենց, որոնք խստիւ կը փնտռուին Ամերիկեան եւ Եգիպտական կառավարութեանց կողմէ, դեռ չեն ձերբակալուած՝ ինչպէս որ կը խօսուի:*[69]

Արզուեանի համբաւը կը հասնի Եգիպտոսի ֆրանսական մամուլ՝ *Լը Փրոկրէ Էժիփսիէն*։ *Լուսաբեր* կը թարգմանէ յօդուածը։ *Լը Փրոկրէ Էժիփսիէն* ուղղակիօրէն անդրադառնալով Արզուեանին, կը գրէ.

*Այս աւազակը յաճախ Եգիպտոս եկած է, ու գաղտնի ապրած է, ընդհանրապէս ծպտեալ. կասկածողներ կան որ ոճիրէն քանի մը օր առաջ տեղւոյս մեծ պանդոկներէն մին իջեւանած էր: Կ'ատէր Արփիարեանը, որ առաջինը եղած է դիմակազերծ ընելու այս կեղծ յեղափոխականը եւ մատնանիշ ընելու իրեններուն այս կեղծ մարդասպանը: Իր դրամաշորթութիւնները անհամար են. մահուան սպառնալիքով յաջողած է Հայ հարուստներէն ահագին գումարներ գանձել: Իր վերջին հիւանդութեան առթիւ* 50,000 *ֆր.ք. ծախսուած է եղեր: Կազմուածքով*

*տկար, եւ նոյն իսկ Թոքախտաւոր՝ ըստ ոմանց։ Աւելցնենք թէ Ֆրանսուհիի մը հետ ամուսնացած է։ Այս Սեւ-Խումբին անդամները ուժգնապէս կրած են իրենց սոյն պետին զազրելի ազդեցութիւնը եւ մեծ պատկառանքով կը վերաբերուին անոր նկատմամբ։*[70]

Շարունակելով իւրաքանչիւր թիւի մէջ մանրամասն անդրադառնալ հայ եւ օտար մամուլի արձագանգներուն, ինչպէս նաեւ ներկայացնել դատական գործընթացքը, Ապրիլ 4-ի թիւի առաջին էջը *Լուսաբեր* նոյնիսկ կը հրատարակէ Արզուեանի լուսանկարը՝ հետեւեալ մակագրութեամբ.

*Տխրահռչակ Ալիքսան Արզուեան (Վահէ)։ Հոս կը գետեղենք հանրածանօթ դրամաշորթ խմբակին պետ Ալիքսան Արզուեանի պատկերը որ յեղափոխութեան անունով ի գործ դրած իր բոլոր չահատակութիւններով յայտնի է ամբողջ հայութեան եւ հեղինակն է վերջին տասը տարիներու հրէշային ոճրագործութեանց եւ ազգասպան արարքներու։*[71]

Լուսանկարներու միջոցով *Լուսաբեր* կը շարունակէ մատնանշել ոճրագործները, այս անգամ տեղադրելով Լեւոն Լարենցի սեւեռուն լուսանկարը, հետեւեալ մակագրութեամբ.

*Լեւոն Լարենց։ Հոս կը գետեղենք ոճրագործ եւ իր տխուր չահատակութիւններով յայտնի Լեւոն Լարենցի պատկերը. այս տխրահռչակ ասպետը մէկն է Դրամաշորթ Խմբակի գործօն անդամներէն եւ արդէն կառավարութեան վճիռով խարանուելէ վերջ աներեւութացած է Եգիպտոսէն Մելքոնեան եղբայրներուն ըրած իր յանդուգն դիմումէն ետք։*[72]

Եւ այսպէս, *Լուսաբեր* տակաւին երկար պիտի շարունակէր արծարծել սպանութեան գործը։

Արփիարեանը վերացուցին վախնալով իր անակնկալ յայտնագործութիւններէն, *Ազգ*ին մէջ կը գրէ Սուրէն Պարթեւեան.

*Արփիարը սպաննեցին, այո՛, մէջտեղէն վերցնելու համար նախ վախցուած հակառակորդ մը, որուն վերջին մերկացումները – դեռ չնչին մաս մը միայն իր գիտցածներէն – մեզի համար անգամ անակնկալ յայտնութիւններ էին։ Եւ յետոյ, Արփիարը սպաննեցին՝ մէկ կողմէն ափ մը խեղճ տղաքներու հոգիին մէջ բռնկցուած ոճիրի ծարաւին յագուրդ տալու, եւ միւս կողմէն՝ սարսափի «ցնծալ» հրաւիրող թելադրանքներուն ենթարկելու համար մեր երանելի ունեւորները։*[73]

1908 Մարտ 1-ին, Արփիարեանի սպանութեան առիթով կազմակերպուած Գահիրէի Միթինկին կը բանախօսէ Միհրան Տամատեան, ուր կը շեշտէ թէ Արփիարեան իր վերջին բացայայտումներուն զոհը գացած էր.

*Մենք եկած ենք դատապարտելու Ոճիրը որ իր դիւական քմահաճոյքով յանկարծ կը կասեցնէ բազմաշխատ կեանք մը, կը դադրեցնէ բազմաբեղուն մտքի մը գործունէութիւնը, կը լռեցնէ՜ ձայն մը, - ձայն մը՝ որուն գո՛նէ վերջին, մանաւանդ վերջին գանգիւնները այնքան վճռականօրէն եւ այնքան արդարացիօրէն կը բարձրանային դատափետելու նոյն այդ ոճիրը, խարանելու, դիմակազերծելու ոճիրին ու եղեռնին չարաշուք ասպետները։*[74]

Մատնանշումը յստակ է։
Բայց Տամատեան աւելի կը բացատրէ.

*[Կ]այ Զարագործ Խմբակ մը, բաղկացած տասնեակ մը հանրածանօթ ոճիրի ասպետներէ եւ գուցէ մէկ երկու տասնեակ ալ անգիտակից կամ շահակից հետեւորդներէ։ Այդ Սեւ Տասնեակն է որ, երբեմն Յեղափոխութեան մէջ սպրդած՝ շարքերուն մէջ սերմանեց երկպառակութիւն, դաւադրութիւն, եղբայրասպանութիւն, իսկ շարքերէն դուրս՝ ջանաց տարածել բռնաբարում, սարսափ եւ արհաւիրք։ Այդ Սեւ Տասնեակն է որ երկնեց Յեղափոխութիւնը շահագործումի աղբիւր դարձնելու, յեղափոխականները ենիչէրիական եւ աւազակային խումբի մը վերածելու դժոխային խորհուրդը, եւ երբ օր մը վերջնականապէս դիմակազերծուած՝ յեղափոխական ամէն շարքերէ արտաքսուեցաւ, վտարուեցաւ, այդ Սեւ Տասնեակը, փոխանակ սթափելու եւ կզղջացման մէջ քաւելու իր անցեալ ոճիրները, աւելի յուսահատ մոլեգնութեամբ, բայց աւելի գաղտագողի եւ խաւարային միջոցներով, նետուեցաւ Եղեռնի ու Ոճիրի ճամբաներուն մէջ։ Տասը տարիներէ իվեր այս Սեւ Տասնեակն է որ հայ հանրային մթնոլորտը կ՚ապականէ, եւ աջ ու ահեակ մահ կը սերմանէ իր անիծապարտ գոյութիւնը քաշկռտելու համար։ Ո՞վ պիտի պատմէ այս Սեւ Տասնեակին ոճիրներուն շարքը. Զիթճեանի, Մխօ-Շահէնի, Սագունիի, Որսորդի եւ Համրի ուրուականները վրէ՜ժ կը գոչեն իրենց արեան բո՛ւն պատասխանատուներէն. բայց անոնք անպատիժ եւ անարգել կը շարունակեն իրենց եղեռնագործութիւնները։ Ունճեան-Թաւշանճեան-Արփիար կարմիր շարքը նոյնպէս այդ արիւնարբու Սեւ Տասնեակի՛ն գործն է։*[75]

Արզուեանական խմբակի լրագրող Լեւոն Լարենց *Ձայն հայրենեաց*ի մէջ կը տեղեկացնէ «անողնայար վատասերած» Արփիարեանի սպանութիւնը Գահիրէի մէջ,[76] իսկ յաջորդ թիւին մէջ ողբացեալը կը ներկայացնէ իբրեւ «ստրկիոգի խառնակիչի մը դիակ»։[77] Մեկնաբանելու տեղ չկայ։

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 7/20 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1300, էջ 1:

2. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 1/14 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1294, էջ 1:

3. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 7/20 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1300, էջ 1:

4. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 7/20 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1300, էջ 1:

5. Միհրան Թէլեան՝ Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարանի դիւանապետ:

6. Երուանդ Սրմաքէշխանլեան, «Արփիարի կեանքէն», *Լուսաբեր*, Գահիրէ, 27 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 488, էջ 1-2:

7. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 8/21 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1301, էջ 1:

8. Ա. Ա., «Նոր դաշանց թուղթը», *Լուսաբեր*, 16 Փետրուար 1907, Գ. տարի, թիւ 331, էջ 1:

9. Լեւոն Մկրտիչեան, «Մարդկային տգիտութիւնը չափ ու սահման չունի, Բ.», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 18 Փետրուար 1925, ԺԱ. տարի, թիւ 1820, էջ 1:

10. Արշակ Ալպօյաճեան, *Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, Բ. հատոր, Գահիրէ, Հրատարակութիւն Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան Գահիրէի Վարչութեան, 1937, էջ 2135:

11. «Ընկեր Տամատեանի բանախօսութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Ազգ*, շաբաթաթերթ, Պոսթոն, 18 Յունուար 1908, Ա. տարի, թիւ 40, էջ 1:

12. Օմէղա, «Ապականութիւնն ու կեղծիքը կը շարունակուի», *Ազատ բեմ*, լրագիր, Գահիրէ, 19 Սեպտեմբեր 1906, Դ. տարի, թիւ 43, էջ 1:

13. Տե՛ս, օրինակ, *Հնչակ*, կեդրոնական օրկան Վեր. Հնչակեան Կուսակցութեան, Պոսթոն, Փետրուար 1907, քսաներորդ տարի, թիւ 2:

14. «Պաշտօնական յայտարարութիւն» *Լուսաբեր*, 12 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 341, էջ 1:

15. «Պաշտօնական յայտարարութիւն», *Լուսաբեր*, 14 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 342, էջ 2:

16. «Պաշտօնական», *Հնչակ*, Փետրուար 1907, քսաներորդ տարի, թիւ 2, էջ 1: «Վերակազմեալ կացութիւնը», *Ազգ*, 4 Մայիս 1907, Ա. տարի, թիւ 3, էջ 2:

17. «Մաքրագործում», *Հնչակ*, Փետրուար 1907, քսաներորդ տարի, թիւ 2, էջ 1:

18. «Պաշտօնական յայտարարութիւն», *Լուսաբեր*, 14 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 342, էջ 2:

19. «Բացատրութիւն մը», *Ձայն հայրենեաց*, շաբաթաթերթ, Պոսթոն, 20 Փետրուար 1907, Ը. տարի, թիւ 431, էջ 1:

20. «Պաշտօնական ազդ», *Հայրենիք*, շաբաթաթերթ, Պոսթոն, Փետրուար 1907, թիւ 8:

21. «Նրբացեալ կեղծիք», *Ձայն հայրենեաց*, 27 Փետրուար 1907, Ը. տարի, թիւ 432, էջ 1:

22. Նահանգային Վարչութիւն Ամերիկայի Վեր. Հնչ. Մասնաճիւղերուն, «Պաշտօնական յայտարարութիւն», *Ազգ*, 20 Ապրիլ 1907, Ա. տարի, թիւ 1, էջ 2:

23. Անդ:

24. Անդ:

25. «Բացատրութիւն մը», *Ձայն հայրենեաց*, 20 Փետրուար 1907, Ը. տարի, թիւ 431, էջ 1: Նահանգային Վարչութիւն Ամերիկայի Վեր. Հնչ. Մասնաճիւղերուն, «Պաշտօնական յայտարարութիւն», *Ազգ*, 20 Ապրիլ 1907, Ա. տարի, թիւ 1, էջ 2:

26. «Յ. Թավշանճեան սպաննուած», *Ձայն հայրենեաց*, 24 Յուլիս 1907, Ը. տարի, թիւ 452, էջ 3:

27. «Արձագանք. Թաւշանճեան սպաննուած», *Ազգ*, 27 Յուլիս 1907, Ա. տարի, թիւ 15, էջ 1:

28. «Ազգային-յեղափոխական քաղաքականութիւն», *Ազգ*, 27 Յուլիս 1907, Ա. տարի, թիւ 15, էջ 1:

29. «Թաւշանճեանի սպաննութեան շուրջը», *Երիտասարդ Հայաստան*, շաբաթաթերթ, Նիւ Եորք, 14 Օգոստոս 1907, հինգերորդ տարի, թիւ 7, էջ 54:

30. «Թաւշանճեանի սպաննութեան շուրջը. Արզուեան Սուլթանի ակէնտը», *Երիտասարդ Հայաստան*, 21 Օգոստոս 1907, հինգերորդ տարի, թիւ 8, էջ 62:

31. Անդ:

32. «Արձագանք. ոճիրին շուրջ», *Ազգ*, 17 Օգոստոս 1907, Ա. տարի, թիւ 18, էջ 1:

33. «Ազդարարութիւն եղբայրասպան չարիքին պատասխանատուներուն», *Ազգ*, 24 Օգոստոս 1907, Ա. տարի, թիւ 19, էջ 1:

34. «Պաշտօնական», *Ազգ*, 7 Սեպտեմբեր 1907, Ա. տարի, թիւ 21, էջ 1:

35. *Ձայն հայրենեաց*, 31 Յուլիս 1907, Ը. տարի, թիւ 453. 7 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 454. 14 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 455. 18 Սեպտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 460. 25 Սեպտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 461:

36. *Ձայն հայրենեաց*, 21 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 456:

37. *Ձայն հայրենեաց*, 28 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 457:

38. *Ձայն հայրենեաց*, 6 Նոյեմբեր 1907, Ը. տարի, թիւ 467:

39. *Ձայն հայրենեաց*, 7 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 454. 14 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 455. 21 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 456. 28 Օգոստոս 1907, Ը. տարի, թիւ 457:

40. *Ձայն հայրենեաց*, 18 Սեպտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 460. 25 Սեպտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 461. 2 Հոկտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 462. 9 Հոկտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 463. 16 Հոկտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 464. 23 Հոկտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 465. 30 Հոկտեմբեր 1907, Ը. տարի, թիւ 466. 6 Նոյեմբեր 1907, Ը. տարի, թիւ 467:

41. «Այս ալ Ամերիկայէն», *Լուսաբեր*, 26 Յունուար 1907, Գ. տարի, թիւ 322, էջ 2:

42. «Պաշտօնական յայտարարութիւն», *Լուսաբեր*, 12 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 341, էջ 1-2. 14 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 342, էջ 2:

43. Սլաք, «Բացատրութիւն մը», *Լուսաբեր*, 16 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 343, էջ 2:

44. Կարմիր Հնչակեան, «Բողոքարկու Վերակազմեալները», *Լուսաբեր*, 23 Մարտ 1907, Գ. տարի, թիւ 346, էջ 2:

45. «Առաջարկութիւն մը», *Լուսաբեր*, 4 Ապրիլ 1907, Գ. տարի, թիւ 351, էջ 3:

46. Ա. Ա., «Մոռացօնք», *Լուսաբեր*, 3 Օգոստոս 1907, Գ. տարի, թիւ 401, էջ 1:

47. Ա. Ա., «Նիւ-Եորքի ոճիրին մանրամասնութիւնները», *Լուսաբեր*, 20 Օգոստոս 1907, Դ. տարի, թիւ 408, էջ 1:

48. «Թաւշանճեանի սպանումը. մամուլի տեսութիւն», *Լուսաբեր*, 22 Օգոստոս 1907, Գ. տարի, թիւ 409, էջ 2:

49. «Թաւշանճեանի սպանումը. մամուլի տեսութիւն», *Լուսաբեր*, 3 Սեպտեմբեր 1907, Գ. տարի, թիւ 414, էջ 2:

50. Ա. Ա., «Դատավարութեան շուրջը», *Լուսաբեր*, 7 Սեպտեմբեր 1907, Գ. տարի, թիւ 416, էջ 1-2:

51. «Արզուեան Սուլթանի աճէնտը», *Լուսաբեր*, 12 Սեպտեմբեր 1907, Գ. տարի, թիւ 418, էջ 2:

52. Ա. Ա., «Վաղեմի պատմութիւն մը», *Լուսաբեր*, 12 Հոկտեմբեր 1907, Գ. տարի, թիւ 431, էջ 1:

53. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 24 Օգոստոս / 6 Սեպտեմբեր 1912, Դ. տարի, թիւ 1199, էջ 1:

54. Ա. Ա., «Գծէն ելած», *Լուսաբեր*, 5 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 441, էջ 2:

55. Ա. Ա., «Միակ պատասխանատուն», *Լուսաբեր*, 7 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 442, էջ 1:

56. Ա. Ա., «Դիկտատորը», *Լուսաբեր*, 9 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 443, էջ 2:

57. Ա. Ա., «Երդմնադրուժները», *Լուսաբեր*, 12 Նոյեմբեր 1907, ԺԳ. տարի, թիւ 444, էջ 2:

58. Ա. Ա., «Ապուշներու աշխարհէն», *Լուսաբեր*, 16 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 446, էջ 1:

59. Ա. Ա., «Տխուր դերակատարները», *Լուսաբեր*, 23 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 449, էջ 2:

60. Ա. Ա., «Որովայնախօսը», *Լուսաբեր*, 30 Նոյեմբեր 1907, Գ. տարի, թիւ 452, էջ 2:

61. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, 7/20 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1300, էջ 1: 8/21 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1301, էջ 1: 9/22 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1302, էջ 1: 13/26 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1306, էջ 1: 14/27 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1307, էջ 1: 31 Դեկտեմբեր/13 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1325, էջ 1: 2/15 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1326, էջ 1:

62. *Լուսաբեր*, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484, էջ 1-2:

63. «Վ. Թէքէեանի դամբանականը», *Լուսաբեր*, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484, էջ 3:

64. Վահան Թէքէեան, «Յեղափոխութիւն եւ ոճիր», *Լուսաբեր*, 22 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 486, էջ 2:

65. Ա. Չ., «Քրոնիկ», *Անահիտ*, հանդէս ամսեայ, Փարիզ, Յունիս-Սեպտեմբեր 1907, Թ. տարի, թիւ 6-9, էջ 155:

66. Վահան Թէքէեան, «Յեղափոխութիւն եւ ոճիր», *Լուսաբեր*, 22 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 486, էջ 2:

67. «Պապանձումը», *Հայ հանդէս*, ազգային եւ գրական կիսամսեակ, Վենետիկ, 15 Նոյեմբեր 1902, Ա. տարի, թիւ 8, Յաւելուած, էջ Դ:

68. «Ոճրագործին շուրջը», *Լուսաբեր*, 27 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 488, էջ 2:

69. «Ոճրագործին շուրջը», *Լուսաբեր*, 3 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 490, էջ 3:

70. «Օտար թերթերու կարծիքը», *Լուսաբեր*, 7 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 492, էջ 2:

71. *Լուսաբեր*, 4 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 504, էջ 1։
72. *Լուսաբեր*, 9 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 506, էջ 1։
73. [Սուրէն Պարթեւեան], «Արփիար», *Ազգ*, 14 Մարտ 1907, Ա. տարի, թիւ 48, էջ 1։
74. «Ընկեր Տամատեանի բանախօսութիւնը Գահիրէի Միթինկին մէջ, գումարուած 1908 Մարտ 1-ին, Արփիար Արփիարեանի սպանութեան առթիւ», *Ազգ*, 28 Մարտ 1908, Ա. տարի, թիւ 50, էջ 2։
75. «Ընկեր Տամատեանի բանախօսութիւնը Գահիրէի Միթինկին մէջ, գումարուած 1908 Մարտ 1-ին, Արփիար Արփիարեանի սպանութեան առթիւ», *Ազգ*, 4 Ապրիլ 1908, Ա. տարի, թիւ 51, էջ 2։
76. [Լեւոն Լարենց], «Սողնազգիները», *Ձայն հայրենեաց*, 19 Փետրուար 1908, Թ. տարի, թիւ 482, էջ 4։
77. [Լեւոն Լարենց], «Սողնազգիները, Բ.», *Ձայն հայրենեաց*, 26 Փետրուար 1908, Թ. տարի, թիւ 483, էջ 4։

## Դ.
## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ, ԴԱՏԱԿԱՆ ՆԻՍՏԵՐ, ԴԱՏԱՎՃԻՌՆԵՐ

Ստորեւ կը ներկայացնեմ Գահիրէի *Լուսաբեր* եռօրեայ լրագիրին մէջ լոյս տեսած բոլոր լուրերն ու յօդուածները՝ որոնք կը վերաբերին Արփիարեանի սպանութենէն ետք տեղի ունեցած ձերբակալութիւններուն, կատարուած դատական նիստերուն եւ արձակուած վճիռներուն։

Բաց աստի, Երուանդ Օտեան անձամբ ներկայ եղած է 1908 Յուլիս 6-ի Գահիրէի Եղեռնադատ Ատեանի դատավարութեան, որուն գործընթացքը ամբողջութեամբ արձանագրած է եւ յետագային հրատարակած պոլսահայ մամուլին մէջ։ Իր շահեկանութեան համար զայն եւս կը ներկայացնեմ ստորեւ։

Ինչպէս կ՚երեւի ներքոբերեալներէն, դատական ամբողջ գործընթացքը խուսափած է խորքային հարցերը քննարկելէ եւ բաւարարուած սպաննող ձեռքի (Պետրոս Հիւսընեան) եւ անոր անմիջական դրդողի (Զարեհ Գոչեան) դատաքննութեամբ։ Կազմակերպող խմբակը՝ գործառնութեան բուն յղացողը, մնացած է հետաքրքրութենէ դուրս։ Հաւանաբար ասիկա աշխարհի որեւէ դատաքննութեան մը յատկանիշը ըլլայ։ Դատարաններուն եւ օրէնքներուն կը հետաքրքրեն իրենց կոչած «առարկայական փաստեր»-ը։ Արդիւնքը կ՚ըլլայ այն՝ որ անմիջական գործադրողները կը պատժուին իսկ բուն պատճառողներն ու կարգադրողները՝ ոչ, որուն շնորհիւ, յետագայ սպանութիւններու կարելիութիւնը՝ միեւնոյն մարդոց կողմէ, կը մնայ բաց։ Աւելին. բուն մտայղացողները զերծ մնալով դատավճիռէ, կը դառնան անմեղ։ Այս իմաստը նկատի ունենալով, դատարանի արդիւնքներէն ետք Վահան Թէքէեան կը գրէ՝ թէ Արփիարեանի սպանութեան խնդրոյն մէջ տեղական Արդարութիւնը ցոյց տուաւ իր «սնանկութիւնը»։[1]

Պետրոս Հիւսընեան կը բարձրանայ կախաղան, իսկ Զարեհ Գոչեան կ՚աքսորուի Իզմիր եւ կը յանձնուի Սուլթան Համիտի ոստիկանութեան։ Այս վերջին քայլը եւս ուժեղօրէն կը մեղադրէ Թէքէեան.

*Սուլթանը, երբ Գոչեանը ձեռք անցնէ, անոր մէջ պիտի տեսնէ ո՛չ թէ վերջին հայասպանութեանց հեղինակ մը, այլ հայ յեղափոխական մը, զոր իբր այդ պիտի ուզէ պատժել։*

*Այս զոհունակութիւնը չտալու համար է՝ ո՛չ հայակեր Սուլթանին եւ ոչ հայասպան յեղափոխականին՝ որ պարտք կը համարինք բողոքել ենթադրեալ կարգադրութեան դէմ։ Այս իմաստով է որ, սոսկ պղատոնական բողոքի մը սահմաններուն մէջ չուզելով*

*պարփակուիլ՝ կ՚զգացնենք անհրաժեշտութիւնը գործնական քայլի մը – ինչպէս միթինկի մը գումարում եւ բանաձեւի մը ներկայացում տեղական իշխանութեանց – որուն պատրաստ ենք նոյնպէս նուիրելու մեր բովանդակ աջակցութիւնը։*[2]

## *ՈՃԻՐԻՆ ՔՆՆՈՒԹԻՒՆԸ*

*Արփիարեանի սպաննութեան առթիւ կուզանք զեկուցանել հայ հասարակութեան թէ՝ արդէն սկսած է ոճրագործին պաշտօնական հարցաքննութեան ձեռնարկութիւնը։ Օրինական դիմումները կատարուած են։ Ընդհ. Դատախազ Վսեմ. Ալի Պէյ Թէվֆիք հայ թարգմանի մը ներկայութեան ոճրագործին նախնական հարցաքննութիւնը կատարած է։ Բաւական թուով հայեր ինքնաբերաբար անձամբ գացած էին ոճրագործը տեսնելու եւ սպաննութեան շուրջը իրենց գիտցածն ու կարծիքը հաղորդելու։ Եղած են արդէն բաւական կարեւոր յայտնութիւններ։ Տեղւոյս հայ գաղթականութենէն հետզհետէ ինքնաբերաբար շարժում մը կը նկատուի երթալ հաղորդելու համար ինչ որ գիտեն եւ ինչ որ արդարութիւնը պարտք կը դնէ իրենց վրայ։*

*Մանրամասնութիւնները յառաջիկայ թիւով։*

*Լուսաբեր*, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484, էջ 4

## *ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ԶԵԿՈՅՑ*

*Լ՚Օրիան թերթը կը հաղորդէ թէ՝ Աղեքսանդրիոյ ոստիկանութիւնը լաւագոյն պարգեւ մը կը խոստանայ տալ անոր որ կը յաջողի մի ոմն Լ. Լ…ի* [Լեւոն Լարենցի] *հետքերը իրեն մատնանիշ ընել. այդ պարոնը դրամական տագնապէ սաստկօրէն մղուած վճռեր է երկու նշանաւոր հայերու – որոնք եղբայր են եւ կը կոչուին Մ…եան* [Մելքոնեան] *– մահուան սպառնալիքով նամակ գրել 3 օրուան մէջ առ նուազն 2,000 ոսկի պահանջելով անոնցմէ, հակառակ պարագային սպաննելու վճռականութեամբ. յիշեալ Պարոնը իր վճռին գործադրութեան ճամբուն վրայ է եղեր սպաննելու համար Մ…եան եղբայրներէն մէկը, երբ անյայտացեր է։*

*Ոստիկանութեան որոնումներն ի զուր են անցած. ուստի՝ ի բացակայութեան այդ անձը դատապարտուած է։*

*Լուսաբեր*, 22 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 486, էջ 2

## *ՈՃՐԱԳՈՐԾԻՆ ՇՈՒՐՋԸ*

*Ծանուցած էինք թէ Արփիարեանի մարդասպանը ձերբակալուած պահուն հարցաքննիչ դատաւորին հետեւեալ յայտարարութիւնը ըրած էր. «Սպաննեցի Արփիարեանը, որովհետեւ այդ մարդը իր հրատարակութիւններով էնթրիքներ կը դարբնէր հայերուն մէջ եւ այսպէսով Ազգին կը վնասէր:»*

*Մեր վերջին տեղեկութեանց նայելով, Հիւսէնեան բոլորովին փոխած է իր պաշտպանողականը:*

*Յայտարարած է որ վերջերս վիճաբանութիւն մը ունեցած է Արփիարեանի հետ՝ որ երեսին «սրիկայ» պոռացած է: Ասոր վրայ պզտիկ վրէժ մը կապած է: Իսկ ոճիրին գիշերը, գինովցած ըլլալով, գացած է սպաննել Արփիարեանը: Աւելցուցած է թէ զղջացած է ըրածին եւ կ՚ընդունի մեծ սխալ մը գործած ըլլալը. փորձանք մը՝ ըսած է՝ որուն պատիժը կրելու պատրաստ եմ:*

*Ինչպէս կ՚երեւայ, սոյն գիրքը շատ խախուտ ըլլալուն ո եւ է կարեւորութիւն արուած չէ եղեռնագործին հակասական սոյն խօսքերուն:*

*Աւելորդ չէ յիշեցնել թէ Արփիարեան նմանօրինակ վիճաբանութիւն մը ունեցած է ասկէ* 3-4 *ամիս առաջ Լեւոն Լարենցի հետ, որ յարձակում մը ըրած է Արփիարեանի վրայ, երբ սրճարան մը նստած՝ իր յօդուածները գրելու զբաղած էր ըստ սովորութեան, ու ինքը նախատելէ վերջ՝ նշանակալից սպառնալիք մը ըրած է:*

*Այս սպառնալիքը ահա գործադրած է՝ վատ գործիքի մը միջոցաւ:*

*Ոճրագործը, Պետրոս Հիւսէնեան* (?) *միջահասակ ու նիհար, թափթփած սինլքոր արարած մըն է. շատ թուխ, դէմքը ծաղիկի նշաններով այրուած. մօրուքը ոճիրէն քանի մը օր առաջ ածիլած է եղեր:*

*Իրեններուն մօտ քանի մը ամիս պատսպարուելէ վերջ, օթէլ տը Քօնսթանթինօբլ փոխադրուած է, հաւանօրէն ոճիրին կանխամտածութեամբ: Վերջին օրը, ժամը* 4*-ին, պանդոկապետին վճարած է իր հաշիւը:*

*Ոստիկանատունը պայուսակ մը գտած է պանդոկը, մէջը գտած զգեստներ, եւ ոչ ուրիշ բան:*

\- - -

*Կը լսենք թէ քսանէ աւելի վկաներ մտիկ եղած են ցարդ, ու քանի մը ձերբակալութիւններ կատարուած են: Խոհեմութիւնը կը պահանջէ որ լռենք իրենց անունները:*

\- - -

*Ոստիկանութիւնը համոզուած է թէ այս սպաննութիւնը շարունակութիւնն է Պօլսոյ եւ Նիւ-Եորքի վերջին ոճիրներուն, եւ գործն է նոյն դրամաշորթ ու ասպատակ հրէշ վոհմակին, որուն անդամներուն ցուցակը ունի արդէն:*

*Ընդհանուր Դատախազին ալ կարծիքը ան է որ այս ոճիրը արդիւնք է անձնական ատելութեան եւ միջոց մը դրամաշորթական որոշ ծրագրի գործողութեանց:*

*Օտարները եւս համոզուած են թէ այս ոճիրները յեղափոխական գործունէութեան մը հետ կապ չունին եւ թէ զուրկ են գաղափարական ո եւ է հանգամանքէ:*

*Լուսաբեր*, 22 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 486, էջ 3

## *ՈՃՐԱԳՈՐԾԻՆ ՇՈՒՐՋԸ*

*Վերջին վկայութիւնները վայրկեան մը կասկած արթնցուցած են թէ Տիգրանակերտցի Պետրոս Հիւսըննեան ուրիշ չէ բայց եթէ Արաբկիրցի Մարտիրոս Հացագործեան (էքմէքճեան)։*

*Ոճրագործը կ'ուրանայ իր ինքնութիւնը։*

*Գաղտնիք մը չէ թէ Հացագործեանն էր որ Վենետիկի մէջ Արփիարեանի վրայ մահուան փորձ մը ըրած էր, եւ արդարութեան ճիրաններէն կրցած էր ազատիլ հանգուցեալին վեհանձն լուութեան շնորհիւ։*

*Արփիարեան վերջերս ըսած էր իր մտերիմներուն թէ իր սոյն «Տէրրօր»-ը Գահիրէ եկած է՝ հաւանականօրէն զինքը սպաննելու պաշտօնով։*

* * *

*Քննութիւնները խստիւ կը շարունակուին եւ քանի մը անձերու վրայ կը ծանրանան կարեւոր կասկածներ՝ իբրեւ դրդիչ կամ մեղսակից։*

*Կը լսենք թէ առանց սպասելու քննութեանց վճռական արդիւնքին, Ընդհ. Դատախազը քիչ օրէն եղեռնագործը պիտի յանձնէ յառաջիկայ Գուռ տ'Ասիզին առջեւ դատուելու համար։*

*Ինչպէս յայտնի է, եգիպտական պատժական օրինագրքի տրամադրութեանց համաձայն կանխամտածութեամբ մարդասպանը մահուան կը դատապարտուի։*

* * *

*Հաւաստի աղբիւրներէ կը լսենք թէ, միւս կողմէն կառավարութիւնը մասնաւոր ուշադրութեամբ կը զբաղի ամբաստանուած քանի մը ծանօթ անձերու քննութեամբ, եւ թէ վերջնականապէս որոշած է երկիրէն արտաքսել ատոնց պարագլուխները ինչպէս նաեւ դատարկաշրջիկ կասկածելի հայերը։*

*Ցաւալի է որ կառավարութիւնը հարկ տեսած է խիստ միջոցներու դիմել հայերու նկատմամբ, պարագայից բերմամբ փոխելով իր բարեացակամ վերաբերումը դէպի եգիպտահայերը։*

*Լուսաբեր*, 27 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 488, էջ 2

## *ԱՄԲԱՍՏԱՆԱԳԻՐ*

*Աղեքսանդրիոյ Տեղական Դատարանի հետեւեալ ամբաստանագիրը հրատարակուած է պաշտօնաթերթին 18-րդ թիւին մէջ։*

17 *Փետր.* 1908

*Առայժմ բնակութիւնը անյայտ Լեւոն Լարենց*, 2 *Դեկտեմբեր* 1907-*ին, Աղեքսանդրիաբնակ վաճառական Տ. Գրիգոր եւ Կարապետ Մելքոնեանի դիմելով, մահուան սպառնալիքի տակ*, 2000 *ոսկի հատուցում մը պահանջած, եւ յիշեալ արարքը պատժական օրինագրքի* 194 *յօդուածին համաձայն մահուան պատիժի արժանի ըլլալով, Աղեքսանդրիոյ Ընդհ. Դատախազութեան* 3492 *թիւ ամբաստանագրով, ըստ պատժ. օրինագրքի* 283, 284, 45 *եւ* 46

*յօղուածներուն, Ամբաստանիչ Ատեանի կողմէ իբրեւ եղեռնագործ ամբաստանուած է, Ոճրադատ Դատարանի առջեւ դատուելու համար:*

*Լուսաբեր*, 27 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 488, էջ 2

## ՈՃՐԱԳՈՐԾԻՆ ՇՈՒՐՋԸ

*Անցեալ օր կառավարութեան լուսանկարիչը ոճրագործին լուսանկարը քաշած է: Ինչպէս ըսած էինք, քանի մը օրէն պիտի կրնանք մեր ընթերցողներուն ներկայացնել ճիւաղին պատկերը:*

*- Ոճրագործին մասին, որ Ամերիկայի մէջ Փէթր Հիւսն անունով ծանօթ ըլլալը յայտարարած է, մեր առած տեղեկութեանց նայելով, վիչեալը գործած ոճիրին ջերմ հաւատացեալը չէ եւ շատ խղճալի գործիք մը եղած է իր հրամայողներուն ձեռքին մէջ:*

*Կ'ըսուի թէ արդէն հիւանդկախ է, եւ բոլորովին ընկճուած ու մտածկոտ: Իր պահապանները կը հարցափորձէ եղեր գիտնալու համար թէ կախաղանը իր անխուսափելի պատի՞ժը պիտի ըլլայ արդեօք: - Ըսենք նաեւ – խեղճ զոհը՝ անիծապարտ ոճրագործներուն:*

*- Ծանօթ ասպատակ եւ ագիտաւոր ազգադաւ՝ Վահէ Արզուեան եւ Լեւոն Լարենց, որոնք խստիւ կը փնտռուին Ամերիկեան եւ Եգիպտական կառավարութեանց կողմէ, դեռ չեն ձերբակալուած՝ ինչպէս որ կը խօսուի:*

*Լուսաբեր*, 3 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 490, էջ 3

## ՈՃՐԱԳՈՐԾԻՆ ՇՈՒՐՋԸ

### ԶԱՐԵՀ ԳՈՉԵԱՆ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ<br>ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐ<br>ՓԱՍՏԱԿԱՆՆԵՐ

*Հինգշաբթի առաւօտ ժամը* 10-*ին, նոյն ժամանակ, Ոստիկանութիւնը խուզարկութիւններ կատարեց Զարեհ Գոչեանի տունը եւ խանութը ի Գլօդ-Պէյ, ինչպէս նաեւ Ատոմ Ասլանեանի բնակարանը, ի Շարիա Նուպար: Մեծ քանակութեամբ ձեռագիրներ եւ լուսանկարներ կառավարչատուն փոխադրուած են:*

*Զարեհ Գոչեան բանտարկուած է անմիջապէս վերջը: Իր Ամերիկեան քաղաքացիութիւնը չէ հաստատուած, ինչպէս որ կառավարութեան ղրկուած պաշտօնագրով մը Ամերիկեան Հիւպատոս Մ. Խոտինկս վերջին պահուն հաղորդած է:*

*Այս վերջին լուրերը մեծ յուզմունք առաջ բերած են ժողովուրդին մէջ:*

*Տեղական թերթերը շատ կարեւորութիւն կուտան այս դէպքին եւ յոյս կը յայտնեն թէ կառավարութիւնը ամենախիստ միջոցներ ձեռք պիտի առնէ գռեհիկ ոճրագործներուն դէմ, որ ամբողջ Ազգ մը տակնուվրայ ըրած են։*

\- - -

*Արտաշէս Քէօլէեան որ Ամերիկայէն նոր եկած էր, եւ կը բնակէր Զարեհ Գոչեանի մօտ, անհետացած է քաղքէս։*

*Նոյնպէս Մարտիկ Կարապետեան, երբեմն խմբագիր Ազատ բեմ լրագրի, ու Մանտաճեան (Աղեքսանդրիայէն). վերջինս, ընկերակցութեամբ Մարտիրոս Հացագործեանի, երեք տարի առաջ փորձած էր սպաննել Արփիարեանը։*

*Յիշեալ անձերը կը փնտռուին եղեր ոստիկանութեան կողմանէ։*

\- - -

*Յովհաննէս Մեհանեան (Ճօն), որ ոճրագործին հետ ճամբորդած է մինչեւ Գահիրէ եւ որ հոս ալ մէկտեղ բնակած է, Ամերիկեան հիւպատոսարանի հրամանով՝ շաբաթ օր քաղաքէս հեռացուցուած է։ Կ՚ըսուի թէ Բիրէա ղրկուած է։*

\- - -

*Կը լսենք թէ Ամերիկեան Ընդհ. Հիւպատոսը, որ ընդհանրապէս շատ աննպաստ գաղափար ունի իր Ամերիկահայ հպատակներուն վրայ, Ուաշինկթընի հետ կը բանակցի՝ հետզհետէ խիստ միջոցներ ձեռք առնելու համար ընդհանրապէս կեղծ եւ յաճախ կասկածելի հայ հպատակներու մասին։*

*Ինք համոզուած է եղեր թէ Թաւշանճեանը սպաննող խմբակն է որ Արփիարեանը սպաննած է, եւ թէ այդ խմբակին կեդրոնն է Ամերիկա եւ օրկանը Ձայն հայրենեաց անունով լրագիրը։*

\- - -

*Արփիարեանը սպաննելու ծառայող ըէվօլվէրը ամերիկեան հրաշալի զէնք մըն է, որուն 6 ոսկի արժէք դրուած է։ Այդ՞քան ճոխ զէնք մը՝ խեղճուկրակ անօթի Հիւսընեանի մը քով, որ չոգենաւին մէջ ածուխ նետելով ճամբորդած է, որ հոս իրեններուն փշրանքովը կերակրուած է։*

*Լուսաբեր*, 7 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 492, էջ 2-3

## ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ

### ԶԱՐԵՀ ԳՈՉԵԱՆ ԱՄԲԱՍՏԱՆՈՒԱԾ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՐԷՎՕԼՎԷՐ

*Վկաներու յայտնութիւնները, նամակներու պարունակութիւնը եւ մանաւանդ ոճրագործին խոստովանութիւնը, զոր Էժիբթ կը հաղորդէ՝ այլեւս կասկած չեն ձգած թէ Արփիարեանի բուն մարդասպանը Զարեհ Գոչեանն է, որ ոճիրին գործադրութիւնը հրամայած է Պետրոս*

*Հիւսըննեանի՝ յանձնելով անոր համբաւաւոր ըէվօլվէրը, ինչպէս նաեւ 2 ոսկի որպէսզի ձեռք մը նոր զգեստ գնէ:*

*Կառավարութիւնը մեծ քայլ մը առած ըլլալով կը կարծէ՝ գտնելով վերջապէս ոճիրին թելադրիչը:*

*Զարեհ Գոչեան կը մնայ միշտ բանտը եւ հաղորդակցութենէ զրկուած է:*

*Ամբողջ պատմութիւնն է որ այսպէսով կը քակուի ինքնիրեն:*

*Մեր ստացած ամենաստոյգ տեղեկութեանց նայելով, Արզուեան-Լարենց եւ Ընկ. Ամերիկայի մէջ կ'որոշեն Արփիարեանի սպաննութիւնը: Արտաշէս Քէօլէեան դէպի Եգիպտոս կը մեկնի՝ բերելով հրամանը եւ վեցհարուածեանը. իր գրած մէկ նամակով՝ պաշտօն կը յանձնէ իր սիրելի Մարտիրոս Կարապետեանին՝ այդ «Պատուական» զէնքը նաւահանգիստէն անվտանգ ընդունելու միջոցները ձեռք առնել: Զէնքը Զարեհ Գոչեանին կը յանձնուի եւ յիշեալը, Արփիարեանի մահուան ծարաւի, պաշտօն կուտայ Հիւսըննեանի սպաննել զոհը, որպէսզի ըլլայ հերոս* (!):

*Տարակոյս չիկայ թէ Արզուեանի աջ բազուկը նկատուած այդ Զարեհ Գոչեանի խանութը ոճրագործ խմբակին որջը նկատուած է, ուր, Արփիարին խօսքով, «սովալլուկ Գայլերը» կուգային երազել արիւնաղաւեր եւ ոսկի-հասոյթներ:*

\- - -

*Ուրբաթ եւ շաբաթ օրերը Գոչեանի եւ Ասլանեանի գրաւուած թուղթերուն զտումովը զբաղած են: Անշուշտ կարեւորները անհետացնելու համար ժամանակ անցած էր:*

\- - -

*Ատոմ Ասլանեան երաշխաւորութեամբ առժամապէս ազատ արձակուած է: Օտար թերթ մը հետեւեալը կը գրէ իր մասին. – Ասլանեան վար չէ դրուած տակաւին, բայց մենք կը յուսանք որ պիտի չուշանայ Զարեհ Գոչեանի քովը երթալու, որովհետեւ մենք կարեւոր պատճառներ ունինք հաւատալու թէ այս երկու անհատները տարաբախտ Արփիարեանի սպաննութեան գործին մէջ օտար չեն:*

*Լուսաբեր*, 10 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 493, էջ 2

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*

### *ՄԱՐԴԱՍՊԱՆԸ ԿԸ ԽՈՍՏՈՎԱՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆՆԵՐ*

*Պետրոս Հիւսըննեան կը շարունակէ իր շահեկան խոստովանութիւնները: Դէմ առ դէմ բերուելով Զարեհ Գոչեանի հետ, անոր երեսն ի վեր յայտարարած է անգամ մը եւս թէ ինքը հրամայած էր իրեն սպաննել Արփիարեանը եւ տուած էր իրեն զէնքը: Գոչեան ըսուած հերոսը, զոհին եւ մարդասպանին արիւնը մտնալէն վերջ, վատութիւնը ունեցած է ուրանալու:*

*Բարքէին եւ Բօլիսին դիմելով՝ տեղեկացանք որ տարակոյս մնացած չէ թէ Գոչեան եղած*

*է ոճիրին Թելադրիչը։*

*Հիւսընեան, որ զղջացած է՝ իր եղեռնէն ինք իսկ սարսափած, քանի մը մեղսակիցներու վրայօք կարեւոր յայտնութիւններ ըրած է, որ լոյս կը սփռեն ոճիրին եւ ոճրագործ խմբակին վրայ։*

- - -

*Գրաւուած նամակներու եւ ոճիրը լուսաբանող լրագիրներու Թարգմանութիւնը առաջ կը տարուի։ Ասոնց մէջէն ըէվօլվէրին մասին կարեւոր նամակ մը գտնուած է փօսԹատուփէն։*

- - -

*Հիւսընեանի լուսանկարը պիտի չի կրնանք ներկայացնել այս օրերս. Հետաքրքիրները կրնան տեսնել աստ կառավարչատունը, Մաժօր Քարթիէի մօտ։*

*Ինչպէս ըսած ենք, յիշեալին իսկութիւնը կարելի չէ եղած հաստատել հաւանական չէ որ Տիգրանակերտցի ըլլայ, իսկ Արաբկիրցիները եւս չեն ճանչցած եղեր զինքը։ Կեղծանուն մը ըլլալու է։*

*Լուսաբեր*, 12 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 494, էջ 2

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*

*Զարեհ Գոչեանի համախոհները փաստաբաններու դուռները ափ առած են վերջին օրերս, յիշեալին պաշտպանութիւնը յանձնելու համար։*

- - -

*Ինչպէս հաղորդեցինք, Ա. Ասլանեան երաշխաւորութեամբ առժամապէս ազատ ձգուած է. մեզի լուր կուտան Թէ իր երաշխաւորն է Տիար Մարտիրոս Արիեան։*

- - -

*Մեր ստացած ստոյգ տեղեկութեանց նայելով, Յովհաննէս Միհանեան (Ճօն), որուն արտաքսումը հաղորդած էինք՝ իր յայտարարութենէն դատելով, անծանօԹ է Ամերիկեան Հիւպատոսարանին եւ վերջինը երբէք լուր մը չունի անոր արտաքսումէն։*

*Տարակոյս չի կայ ուրեմն Թէ յիշեալը եւս որուն մեղսակցութիւնը պահ մը կասկածուեցաւ փախած է Եգիպտոսէն։*

*Լուսաբեր*, 14 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 495, էջ 2

## *ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՔ ԱՄԵՐԻԿԱ*

*Դրամաշորթ խմբակի տէռօր Մարտիրոս Հացագործեանը կը գտնուի Ամերիկա՝ Վաշինկ-Թընի մէջ, որով կը հաստատուի Թէ Արփիարեանի ոճրագործը կարծեցեալ Հացագործեանը չէ։*

*Լուսաբեր*, 2 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 503, էջ 2

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*

*Ողբացեալ Արփիարեանի սպաննութեան մասին քննութիւնները յառաջ կը տարուին: Գահիրէի Ոստիկանապետ Մանսֆիլտ բաշա, ինչպէս նաեւ ամերիկեան Ընդհ. Հիւպատոս Մ. Իտտինքս, մեղսակիցներու մասին կը բանակցին ամերիկեան ոստիկանութեան հետ որ, ինչպէս յայտնի է, մասնաւոր ուշադրութեամբ կը զբաղի Արզուեան վոհմակին շահատակութեանց գործով:*

*- Մարդասպանին ինքնութիւնը չէ հաստատուած. կը մնայ միշտ Պետրոս Հիւսընեան կամ Բեդր Հիսսն յարանուանեալը, ինչպէս կ'երեւայ նաեւ գրպանէն ելած հաւանաբար կեղծ վկայագրէ մը (անգլիերէն գրուած եւ յոյն նաւապետէ մը ստորագրուած), որով կը յայտարարուի թէ ամբաստանեալը երեք ամիսի չափ Հելլէնական շոգենաւի մը մէջ ծառայած է իբրեւ նաւազ:*

*Մինչեւ այսօր, սակայն, ոչ ոք կրցած է հաստատել իր ինքութիւնը: Քանի մը օր առաջ երեք Տիգրանակերտցի ազգայիններ կառավարչատունը հրաւիրուած են, բայց չեն ճանչցած մարդասպանը:*

*- Ստոյգ աղբիւրէ կը լսենք որ քանի մը օրէն Հիւսընեանի թուղթերը Գուր տ'Ասիզին պիտի յանձնուին:*

*Դատավարութեան օրը կը հաղորդենք նախապէս:*

*Մեղսակիցներուն քննութիւնները, միւս կողմէն, պիտի շարունակուին:*

*Լուսաբեր*, 21 Ապրիլ 1908, Դ. տարի, թիւ 511, էջ 2

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*
### *ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ*

*Ինչպէս տեղական թերթերը հաղորդեցին, ողբացեալ Արփիար Արփիարեանի սպաննութեան խնդրին նախաքննութիւնը աւարտած եւ ծրարը յանձնուած է Դատարանին: Նախաքննիչ դատաւորը՝ Ալի պէյ Թէֆիք, եզրակացուցած է Պետրոս Հիւսնեանի (այսպէս անուանեալ) իբրեւ մարդասպան յանցապարտութեան եւ Զարեհ Գոչեանի իբրեւ դրդիչ՝ ոճիրին մէջ մեղսակցութեան:*

*Մասնաւոր տեղեկութեանց համաձայն՝ դատավարութիւնը տեղի պիտի ունենայ Յունիսի ոճրադատ ատեանին մէջ, որ կ'սկսի նոյն ամսուն 6-ին:*

*Յառաջիկայ թիւով կը հաղորդենք դատին սկզբնական մանրամասնութիւնները:*

*Լուսաբեր*, 5 Մայիս 1908, Դ. տարի, թիւ 516, էջ 3

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋ*

*Ողբացեալ Արփիարեանի մարդասպանը Պետրոս Հիւսըննեան (?) եւ իր Թելադրիչ մեղսակիցը Զարեհ Գոչեան պիտի դատուին յառաջիկայ յունիս 6-ին, տեղական Գուռ տ'Ասիզի առջեւ:*

*Լուսաբեր*, 28 Մայիս 1908, Դ. տարի, թիւ 526, էջ 2

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*

*Այսօր, 6 Յունիս, առաւօտեան ժամը 9 եւ կէսին խուռն բազմութեան մը ներկայութեան Եղեռնադատ ատեանին առջեւ քննուեցաւ ողբացեալ Արփիար Արփիարեանի վրայ ի գործ դրուած ոճիրին պարագաներուն հարցաքննութիւնը:*

*Ոճրագործ Պետրոս Հիւսըննեան եւ ամբաստանեալ Զարեհ Գոչեան զինուորներու հսկողութեան տակ առաջնորդուեցան դատարանին սրահը եւ գրաւեցին ամբաստանեալներու համար սահմանուած յատուկ տեղը:*

*Երեք դատաւորներ, նախնական հարցաքննութիւնները վարող Նիապի պէյը եւ դատարանի պաշտօնական քարտուղարները գործին ընթացք տուին: Հայ թարգմանի մը միջոցաւ հետզհետէ լսուեցան ոճրագործին եւ Զարեհ Գոչեանի եղած հարցաքննութեանց պատասխանները. հարցաքննուեցան ոճրագործը ձերբակալող կաֆիրը եւ այս ոճիրին հետ ուղղակի կապ ունեցող անձեր, որոնց տուած բացատրութիւնները լսուելէ վերջ, կանչուեցաւ եւ անձամբ ներկայացաւ ոստիկանապետ Վսեմ. Մանսֆիլտ փաշա եւ գործին շուրջ տուաւ լուսաբանող հարկ եկած բացատրութիւնները. ի վերջոյ Կուպրան պէյ ներկայանալով ոճիրին շուրջ պէտք եղած բացատրութիւնները տուաւ:*

*Հարցաքննիչ դատաւորը Արփիարեանի ոճիրին շուրջ եղած քննութեանց վրայ յենլով երկար ամբաստանագրով մը դատապարտեց ոճրագործը. ի վերջոյ ոճրագործին եւ Զարեհ Գոչեանի փաստաբանները զատ զատ ջանացին իրենց պաշտպանողական ճառերով արդարացնել իրենց պաշտպանեալները:*

*Ապա կարճ դադարով մը դատավարութիւնը ընդհատուելէ վերջ Եղեռնադատ ատենին նախագահը հակիրճ կերպով զեկոյց թէ այդ դատավարութեան արդիւնքը պիտի հաղորդուի Միւֆթիին եւ ամսոյս 10-ին, յառաջիկայ չորեքշաբթի վերջնական վճիռը պիտի արձակուի:*

*Լուսաբեր*, 6 Յունիս 1908, Դ. տարի, թիւ 529, էջ 2

## *ՏԱՍՆԵՐԿՈՒ ՏԱՐԻ ՊՈԼՍԷՆ ԴՈՒՐՍ* 1896-1908

*ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ*

*Ոճրադատ Ատեանին առջեւ ղրկուած անձին վրայ շատ քիչ բան գիտենք: Յայտարարած է որ Պետրոս Հիւսէյինեան կը կոչուի, բայց իր ինքնութիւնը բաւական կասկածելի է:* 28 *տարեկան է, թուխ դէմքով, միջահասակ: Իր կերպարանքը չմատներ վճռական մարդու մը նկարագիրը: Հարցաքննիչ դատաւորին առջեւ իր դիրքը եղած է մարդու մը դիրքը որ ուրիշներուն ձեռքին տակ գործիք եղած է:*

*Պետրոս Հիւսէյինեան կ'ըսէ թէ Տիարպէքիրցի է եւ կը յայտարարէ թէ մէկ քանի տարի Ամերիկա եւ Յունաստան աշխատած է գործարաններու մէջ: Ամերիկայի մէջ անդամակցած է Հայ «մաֆիայ»-ի:*

*Գահիրէ գալէն առաջ Անվէրսի մէջ կեցած է: Գահիրէի մէջ յաճախակի յարաբերութիւններ ունեցած է Զարեհ Գոչեանի հետ, որ երկու ամիսէն աւելի է որ բանտարկուած կը մնայ իբրեւ ոճրին դրդիչը եւ Հիւսէյինեանի ենթադրեալ մեղսակիցը եւ որ այսօր անոր հետ միասին ոճրադատ Ատեանին առջեւ պիտի դատուի:*

***Ոճիրը**.- Ժամը ինը քառորդ անցած էր երբ Արփիար Արփիարեան կը մեկնի Սիւլէյման փաշա փողոցը գտնուող իր բնակարանէն եւ կ'ուղղուի դէպի էլ Մանախ փողոցը, թեւին տակ ունենալով թերթերու իր անբաժանելի ծրարը: Մալախրինօյի սիկառէթի գործարանին առջեւ հասնելուն՝ պայթիւն մը կը լսէ, միեւնոյն վայրկեանին գնդակ մը իր սրունքը կը վիրաւորէ եւ գետին իյնալէ առաջ ուրիշ գնդակ մը կը ծակէ իր աղիքները, մինչ երրորդ գնդակ մը զինքը բազուկէն կը վիրաւորէր:*

*Անցորդները իր քով կը փութան, մինչ ոճրագործը, Պետրոս Հիւսէյինեան, որ բախչելու կ'աճապարէր, կը ձերբակալուի գործատան պօապին (դռնապան) եւ փողոցի կաֆիրին (գիշերապահ) կողմէ:*

*Դժբախտ հրապարակագիրը ճամբան իր վերջին շունչը կուտայ, մինչ զինքը, գգայազիրկ վիճակի մէջ, Ապտինի քարաքօլը կը փոխադրէին:*

*Ոճրագործը Մանսֆիլտ փաշայի եւ հարցաքննիչ դատաւորին կողմէ հարցաքննուելով՝ կատարեալ խոստովանութիւններ կ'ընէ, իր ոճիրը վերագրելով Արփիարեանի հրատարակութեանց իր վրայ գործած ազդեցութեան:*

***Ատեանին առջեւ**.- Դատաստանը այս առտու տեսնուեցաւ Գահիրէի բնիկ ոճրադատ Ատեանին առջեւ որ Պապ էլ Խալք գումարուած էր: Տեսնուելիք առաջին դատը այս ոճրագործութիւնն էր:*

*Ոճրադատ Ատեանը կը կազմէին նախագահ Ահմէտ պէյ Հիլմի եւ Վիլմօր եւ Ալի պէյ Զիւլֆիքեար անդամները: Ընդհանուր դատախազն էր Ալի պէյ Թէվֆիք: Ատեանը բացուեցաւ ժամը* 9*-ին:*

*Երկու ամբաստանեալները, Պետրոս Հիւսէյինեան եւ իր մեղսակիցը իրենց բանտերէն բերուեցան: Մին, գլխաւոր ամբաստանեալը լուրջ կերպարանք մը ունի, իր մազերն ու մօրուքը շատ սեւ են, խուսափողական նայուածք մը ունի:*

*Իր մեղսակիցը աւելի երիտասարդ կը թուի, իր դիմագծութիւնը աւելի համակրելի է եւ կարծես թէ մեծ ուշադրութեամբ կը հետեւի դատին: Երկուքն ալ ոտքի կեցած են:*

*Թարգման մը կեցած է քովերնին իրենց խօսքերը թարգմանելու համար:*

*Պետրոս Հիւսէյինեան կը յայտարարէ թէ իր երկրին մէջ կօշկակարութեամբ կը զբաղէր, թէ 27 տարեկան էր, Տիարպէքիր ծնած եւ թէ Ամերիկա բնակած է:*

*Զարեհ Գոչեան կ՚ըսէ թէ վաճառական է, Անատօլու ծնած է եւ թէ 37 տարեկան է:*

*Դիւանադպիրը ամբաստանագիրը կարդալէ ետքը, Ալի պէյ Թէվֆիգ կ՚ըսէ թէ Պետրոս ամբաստանուած է որ Փետրուար 13-ին, Էլ Մանախ փողոցը, Արփիար Արփիարեանի վրայ ըէվոլվէրի չորս հարուած պարպած է զայն մահացու կերպով վիրաւորելով կռնակէն, բազուկէն եւ կողերէն: Ոճիրը կանխամտածուած է, Գոչեան իր մեղսակիցն է որովհետեւ զայն տուած է իր գործածած զէնքը:*

*Հիւսէյինեան՝ հարցաքննուելով՝ կ՚ուրանայ ամբաստանութիւնը, կ՚ըսէ թէ նոյնիսկ բան մը չյիշեր: Կը հաստատէ թէ գինով էր եւ գիտէ միայն որ վէճ մը ունեցած էր Արփիարեանի հետ: Նախագահը դիտել կուտայ իրեն թէ նախապէս խոստովանած էր ոճիրը, Պետրոս կ՚ըսէ թէ երբեք չյիշեր այդպիսի խոստովանութիւն մը ըրած ըլլալը: Այն ատեն իրեն կը կարդան իր նախորդ հարցաքննութեանց եւ խոստովանութեանց տեղեկագիրը, որոնց մէջ յայտարարած էր ըէվոլվէրի հարուածներ պարպելը:*

*Տեղեկագիրը կը թարգմանուի ամբաստանեալին որ կը պնդէ թէ բնաւ խոստովանութիւնը չէ ըրած, թէ ըէվոլվէրը միշտ իր վրայ կը կրէր. յետոյ կ՚աւելցնէ որ ոճիրին գիշերը կատարելապէս գինովցած էր եւ թէ այդ միջոցին հանդիպած էր Արփիարեանին որ իրեն հետ վէճ մը ունեցած էր: Հարցաքննութեան մնացորդ մասը կը վերաբերի ամբաստանեալին եւ Արփիարեանի միջեւ եղած յարաբերութեանց:*

*Պետրոս յետոյ կը խոստովանի թէ երկաթեղէններու մէջ աշխատած է եւ թէ Պետրոս Հիւսէյինեանէ ուրիշ անուն չէ կրած երբեք:*

***Վկաները**.- Առաջին վկան կաֆիր մըն է, Մահմուտ Հասան, 26 տարեկան, որ լսած է ըէվոլվէրի երեք կամ չորս հարուածները, ետեւէ ետեւ, իննուկէսին միջոցները, Սիւլէյման փաշա փողոցէն: Պայթիւնին վայրը փութացած միջոցին Պետրոս զինքը կը տեսնէ եւ կը փորձէ փախչիլ, ըէվոլվէրը ձեռքը բռնած: Զայն կը ձերբակալէ: Իրեն եղած հարցումներուն պատասխանելով՝ կաֆիրը կը յայտարարէ թէ տեսած է Պետրոսին ըէվոլվէրի հարուածներ արձակելը, տեսած է զոհին երերալ ու գետին իյնալը: Այն ատենն է որ ամբոխը սկսած է ոճրին վայրը հաւաքուիլ: Յետոյ կաֆիրը կը ճանչնայ եւ ցոյց կուտայ Պետրոսը որուն հետ զինքը կ՚երեսցնեն: Պետրոս կ՚ըսէ թէ երբեք չէ տեսած կաֆիրը եւ բնաւ չճանչնար զայն:*

***Պօապի մը վկայութիւնը**.- Ահմէտ Ապտէլ Նապի, Ասուանցի գիշերապահ, եպենոսեայ սեւութեամբ, 38 տարեկան, կը յայտարարէ թէ՝ Էլ Մանախ փողոցը, Պասիլի պէյ Կապալուիի տան դրան առջեւ կեցած էր, երբ տեսաւ Պետրոսը որ Սիւլէյման փաշա փողոցին կողմէն ըէվոլվէրի հարուածներ կը պարպէր մէկու մը վրայ: Գիշերապահը կ՚ըսէ թէ վիճաբանութիւն տեղի չունեցաւ երբ մօրուօք մարդը (ցոյց կուտայ ամբաստանեալը) կրակ ըրաւ զոհին վրայ: Ոճրագործը ձերբակալեցին Նասիօնալ Պանքին մօտ: Ոճիրը տեղի ունեցաւ Էլ Մանախ, Շավարպի փաշա եւ Սիւլէյման փաշա փողոցներուն իրար կտրած տեղը: Զոհը կամաց կամաց*

կը քալէր Պետրոսը տեսնելէ առաջ. այս վերջինը կամաց մը մօտեցաւ Արփիարեանին եւ երեք չորս ըէօլվէրի հարուած պարպեց կռնակէն: Ոճրագործը ձերբակալուեցաւ ամբոխին ձեռքով որ ետեւէն կը վազէր գոչելով «գողը բռնեցէ՛ք»:

***Կառապան մը կը վկայէ***.- Ահմէտ Օսման անուն վկայ մը չպատասխաներ հրաւէրին:

Յետոյ կը կանչեն Տէրվիշ Մուսթաֆա անուն կառապան մը: Նասիօնալ պանքին մօտ, իր կառքին գահաւորակին վրայ նստած էր: Ըէվոլվէրի հարուածները լսած՝ եւ ամբոխին հետ վազած է ոճրին վայրը եւ տեսած է գետին փռուած զոհը: Շավարպի փաշա փողոցին մէջ տեսած է Պետրոսի եւ ուրիշ երկու անձերու վազելը, «ոստիկան» պոռացած է եւ տեսած է որ Նասիօնալ պանքին մօտ կաֆիր մը ձերբակալած է Պետրոսը:

Վկան ցոյց կուտայ ամբաստանեալը իբրեւ իր տեսած ոճրագործը:

***Ոստիկանի մը վկայութիւնը***.- Փոքրիկ չավուշ մը (ոստիկան) կը ներկայանայ, Փիէթրօ Բաօլօ անուն Գահիրէ ծնած Իտալացի մը: Իր վկայութիւնը արաբերէն լեզուով կ'ընէ: Էլ Մանախ փողոցն է եղեր երբ հրազէնի պայթիւնները կը լսէ եւ դէպքին վայրը կը փութայ որ ղռնապան մը, գիշերապահ մը եւ կառապան մը կը վազեն: Արփիարեան գետին փռուած էր, ոստիկանը անոր քով կը մնայ:

Ասոր վրայ կը հարցաքննեն ամբաստանեալը ղռնապանին վկայութեան մասին որ կը յայտարարէ թէ վկաները չար մարդիկ են եւ կ'աւելցնէ որ բոլոր վկայութիւններն ալ սուտ են:

***Միւս վկաները***.- Սփիրօ անուն վկայ մը կը կոչուի Ատեան, բայց չներկայանար բացակայ ըլլալով:

Յետոյ կը կանչուի օնպաշի մը, Տիգրան Օհանեան, Գահիրէի ոստիկանութենէն: Կը յայտարարէ թէ պաշտօնին գլուխը անցնելու համար տունէն մեկնած ատեն երկու երեք հրազէնի հարուած լսած է, յետոյ ոստիկաններու սուլիչի ձայնը, իսկոյն դէպքին վայրը փութացած է եւ տեսած է իր ընկերը Արփիարեանին քով: Այս ատեն կառք մը բռնած է եւ վիրաւորը փոխադրած է դեղարան մը, ուր հաստատած են թէ Արփիարեան դադրած էր ապրելէ:

Յետոյ երկու ուրիշ վկաներ ալ կը կանչուին որոնք չեն երեւար:

Ետքը կը ներկայանայ ծերուկ Հայ մը, Գարագաշ Զուլազեան, 53 տարեկան, Թուրքիոյ մէջ ծնած:

Ծանօթութիւններ կուտայ որոնք մինչեւ 1902 թուականը կ'երկարին: 1901-ին Զարեհ Գոչեան Գահիրէ եկած էր Լոնտոնէն ուր կը գտնուի հայկական Մաֆիայի կեդրոնը: Գոչեան այդ թուականին ըսեր է իրեն թէ Մաֆիան որոշած է սպաննել Արփիարեանը որովհետեւ Արփիարեան զիրենք կը մատնէր:

Արփիարեան այդ թուականին Վենետիկ կ'երթայ ուր յարձակում կը կրէ երեք անձերէ: Յետոյ Արփիար կուգայ Գահիրէ ուր կը գտնուէր մօտաւորապէս երկու-քուկէս տարիէ ի վեր: 1901-էն ի վեր վկան ամէն յարաբերութիւն խզած էր Զարեհ Գոչեանի հետ: Այս վերջինը երկու երեք տարիէ ի վեր Եգիպտոս կը գտնուէր, այսինքն Արփիարի հոն գտնուած միջոցին: Արփիարը կը յարձակէր Մաֆիայի անդամներուն վրայ որոնք սպառնալիքով դրամ կը չորթէին: Վկան յարաբերութիւն ունէր Արփիարի հետ եւ անոր իմաց տուած էր թէ իր կեանքին կը

*սպառնայի՛ն։*

*Վկան կ՚երեսցնեն երկրորդ ամբաստանեալին հետ։ Դատարանը փաստաբաններուն հետ համաձայնութեամբ կը հրաժարի բացակայ վկաները լսելէ։*

*Գոչեանի փաստաբանը Մուհամմէտ Զաքի Էֆէնտի Ապտէլ Մէկիտ մէկ քանի դիտողութիւններ կ՚ընէ որոնց մէջ խնդիր կը յարուցանէ Պօղոս փաշա Նուպարի, Մանսֆիլտ փաշայի մասին եւ ժամը 10-ը 45 անցած Ատեանը հինգ վայրկեանի համար կը դադրի։*

*Վերստին բացուելուն՝ կը կոչուի ոստիկանապետ Մանսֆիլտ փաշան։*

*Կը յայտարարէ թէ՝ Փետրուար 20-ին ատեններն իր Աղեքսանդրիոյ պաշտօնակիցէն նամակ մը ստացած է որով իրեն իմաց կը տրուէր թէ ամբաստանեալին իսկական անունը Պետրոս Հիւսէյինեան չէ եւ այն ատեն ինքն ալ Գահիրէի ապահովութեան պետ Կուպրան պէյ Մուսքաթի պաշտօն կը յանձնէ այս մասին քննութիւն մը կատարելու։*

*Այս վերջինը կը կանչուի ատեան եւ կը կրկնէ թէ Մանսֆիլտ փաշա նամակ մը կամ հեռագիր մը ստացած էր որով իմաց կը տրուէր թէ Պետրոս Հիւսէյինեան անունը սուտ անուն մըն էր։ Այն ատեն Պետրոսը իր տունը, իր գրասենեակը կանչել կուտայ, եւ այս վերջինը կը մերժէ ո եւ է խոստովանութիւն ընել եւ կամ իր իսկական անունը յայտնել. թէեւ տրամադիր էր խոստովանելու՝ բայց բան մը չէ եղած։*

*Պետրոս՝ Պօղոս փաշա Նուպարի խօսքը չըներ, Կուպրան պէյ Մուսքաթ այս խնդրոյն մասին պէտք եղած տեղեկութիւնները կուտայ դատարանին, դէպքէն թէ՛ առաջ եւ թէ ետքը։*

*Յետոյ կը կանչուի Արթին Պէրպէրեան, որ կը յայտարարէ թէ երկու Հայեր դիտաւորութիւն ունէին սպաննելու Զարեհ Գոչեանը եւ թէ այս նպատակով իրեն դաշոյն մը եւ դրամ տուած են։*

*Այն ատեն գացած է հազարապետ Քարթիէի եւ իրողութիւնը պատմած. հազարապետին գիր մը յանձնած է որով կը յայտարարէ թէ իրեն 15 ոսկի տուած են եւ 75 ոսկի ալ խոստացած են տալ ոճիրը գործելէն ետքը։ Այս իրողութիւնը տեղի ունեցած է 9-10 ամիս առաջ։ Դատարանին մէկ հարցումին պատասխանելով՝ վկան ըսած է որ թէեւ ընդունած է այսպիսի պաշտօն մը, սակայն չէ կատարած։*

*Ասկէ զատ, վկան կը յայտարարէ թէ, դրամի փոխարէն, իբրեւ միջնորդ ծառայած է ձեռք ձգելու համար Մաթարիէի մէջ Մուխթար փաշայի որդւոյն ունեցած կալուածքին յատակագիծը։*

*Ապա կը կանչուի Հմայեակ Գալըպճեան, 43 տարեկան։ Կը յայտարարէ թէ ինը ամիս առաջ Արթին Ռաֆայէլեան իր տունը գացած է եւ ըսած է որ մէկը կայ որ 100 ոսկի խոստացած է տալ ոճիր մը գործելու համար։ Այցելուն իրեն յայտնած է «գործը», աւելցնելով թէ ամէն միջոց ձեռք պիտի առնէ ոճիրէն ետքը զինքը փախցնելու համար։ Այս մասին շատ գումարումներ եղած են։ Քանի մը օր ետքը, Ռաֆայէլեան իրեն հանդիպած եւ ըսած է որ «գործը», այսինքն ոճիրը Յոյնի մը յանձնուած է։*

***Ընդհ. դատախազին ամբաստանագիրը***.- *Ժամը 11-ը 35 անցած Ալի պէյ Թէվֆիք խօսք կ՚առնէ։*

*Ընդհանուր դատախազը կը զբաղի Հայ Հնչակեան տէրօրական կուսակցութեամբ, որուն անդամները սպառնալիքով դրամ կը շորթէին։ Կուսակցութիւնը բաժնուեցաւ եւ երկու օռկան*

*ունեցաւ: Արփիար բուռն լեզուով քննադատեց սպառնալիքով դրամ պահանջելու կուսակիցները եւ զանոնք կը կոչէր աւազակ, ոճրագործ, մարդասպան: Այդ կուսակցութիւնը թերթ մը ունէր եւ պարութային մէջ այդ թերթին մէկ թիւր կայ ուր յօդուած մը՝ ստորագրուած Զարեհ Գոչեանէն՝ ցոյց կուտայ այդ ամբաստանեալին բարոյականն ու նպատակները: Գոչեան Արփիարեանին հակառակորդն էր:*

*Առաջին ամբաստանեալը անդամ էր այդ Մաֆիային: Իր երկրէն մեկնած է տասնըմէկ տարի առաջ ու Նիւ Եորք գացած, ուր իբրեւ սրճարանի կամ ճաշարանի աշկերտ ծառայած է, յետոյ գացած է Եւրոպա եւ կեցած Պելճիգայի մէջ: Նիւ Եորքի ոստիկանութենէն իմացանք որ մասնակից եղած է Թաւշանճեանի սպանութեան: Ամբաստանեալը անուն փոխած է եւ մինչեւ հիմա չենք գիտեր իր իսկական անունը: Թաւշանճեանի սպանութենէն ետքը անյայտացած է եւ ասիկա իր յանցաւորութեան մէկ ապացոյցն է: Պետրոս յետոյ եկած է Աղեքսանդրիա, ուր հանդիպած է Միհրան անուն մէկու մը եւ փոխանակ իր առաջնորդարանը երթալու՝ գացած փնտռած է Լօռանս անուն մէկը որ նոյն կուսակցութեան կը պատկանի, յետոյ գացած է Ազատ բեմի խմբագրատունը: Այդ օրէն արդէն իր կուսակցութեան համար կ՚աշխատէր:*

*Ալի պէյ Թէվֆիք յետոյ խօսեցաւ Պետրոսի կեանքին վրայ եւ ցոյց տուաւ որ այս վերջինը իր ապրուստը ճարելու համար չէր եկած Եգիպտոս, այլ Գահիրէ եկած էր ոճիրը գործելու համար: Ոճիրէն քանի մը օր առաջ օթէլ մը իջեւանած էր, ուրիշ անունով մը, ինքզինքը իբրեւ Իտալացի ցոյց տալով:*

*Յետոյ, ընդհանուր դատախազը կը պատմէ Փետրուար 13-ի ոճիրը, Ատեանին ներկայացնելով նոյն ըէվոլվէրը որով ոճիրը գործուած էր: Ձերբակալուած գիշերը, ոստիկանատան մէջ վրան խուզարկուելով՝ գրպանէն վեց գնդակ գտնուած է: Մէմուրին առջեւ խոստովանած է ըէվոլվէրին իրն ըլլալը:*

*Ոստիկանատան մէջ հարցաքննուելով՝ Պետրոս խոստովանած է ամէն բան եւ ամէն ինչ ցոյց կուտայ թէ ոճիրը կանխամտածութեամբ գործուած է: Ոճիրին գիշերն իսկ խոստովանութիւնները բացորոշ էին:*

*Ոճրին շարժառիթին վրայ խօսելէ ետքը, Ալի պէյ Թէվֆիք կը զբաղի ոստիկանական խուզարկութիւններով:*

*Կը պատմէ թէ ոստիկանապետը նամակ մը ընդունած է Աղեքսանդրիա գտնուող հայէ մը, որ կը խնդրէր ոճրագործին հետ երեսուիլ:*

*Փետրուար 25-ին քննութիւնը սկսած է եւ ոստիկանութիւնը հարցաքննած է Պետրոսի բնակած տան տիրուհին, Ամելիա անուն կին մը, որ հաստատած է թէ՝ Պետրոս Արաբերէն կը խօսէր:*

*Հարցաքննիչ դատաւորը այն ատեն հետը արաբերէն խօսեցաւ եւ Պետրոս ուզեց գաղտնաբար յայտարարութիւններ ընել: Այն ատեն է որ գործը ծածուկ կատարուելով՝ Պետրոս որ Կուպրան պէյ, Մուսքաթի տունէն կուգար, գրեթէ բան մը չըսաւ, ոչ Գոչեանի վրայ, ո՛չ ալ ուրիշներու վրայ: Ինչո՞ւ չխօսեցաւ, Աղեքսանդրիայէն եկող հայուն հետ երեսուելէ ետքը:*

*Քանի մը օր ետքը յայտնիչ նամակ մը երեւան ելաւ: Նիւ Եորքէն կուգար եւ կատարելագործեալ ըէվոլվէրի մը մասին կը խօսէր: Այս նամակը, Գոչեանի քովէն գտնուած, համաձայն*

*էր էլ Մանախ փողոցին մէջ գործածուած ըէվոլվէրին գործածութեան։ Նոյն իսկ Գոչեան կեղծ անուններ ունէր։*

*Առաջին ամբաստանեալը խոստովանած է։ Ոճիրը հաստատող վկայութիւններէ ետքը ա՛լ կասկածի տեղի չի կայ։*

*Կատարուած քննութիւններէն կ՚երեւայ որ Պետրոս զինով չէր Փետր. 13-ին եւ զինով չէր քանի որ զինքը ձերբակալողը կը ճանչնար։*

*Կանխամտածութիւնը ապացուցուած է վկայութիւններով։*

*Գալով երկրորդ ամբաստանեալին՝ իր յանցաւորութիւնը կ՚երեւայ առաջին ամբաստանեալին յայտարարութիւններէն։ Մինչեւ 26 Փետր. Պետրոս բան մը ըսած չէ Գոչեանի մեղսակցութեան մասին։ Մարտ 5-ին է որ Պետրոս խոստովանութիւններ կ՚ընէ որոնք Գոչեանը կ՚ամբաստանեն, երբ կը տեսնէ որ Գոչեան ոստիկանատուն կը բերուի ու ազատ կ՚արձակուի։*

*Ամբաստանեալը այստեղ երեւցածին պէս պարզամիտ մը կամ միամիտ մը չէ։ Գալով երկրորդ ամբաստանեալին՝ Արդարութեան կը դիմեմ իր մասին վճիռ մը տալու համար։*

*Կէսօրը կէս ժամ անցած փաստաբանները խօսք առին։*

*Ապտէլ Ազիզ պէյ Ֆահմի, Պետրոս Հիւսէյինեանի փաստաբանը կը սկսի խօսիլ։*

*Կ՚ըսէ թէ Պետրոս ոճրագործի դիմագիծ մը ունի բայց իրականութեան մէջ զգայավար մըն էր քաղաքական նպատակներու ձգտող։ Իր դիմագծութիւնը բան մը չըսեր իր զգացումներուն մասին։*

*Խնդիրը պարզ ոճրագործութեան մը վրայ է. կանխամտածութիւն չի կայ։ Իր խոստովանութեան մէջ իսկ ամբաստանեալը կը յայտարարէ թէ իր ոճիրը գործած է վայրկենական տպաւորութեան տակ։ Փետր. 13-էն մինչեւ 25, իր ըրած բոլոր յայտարարութիւններէն կ՚երեւայ որ ոճիրը յղացուած է գործուած վայրկեանին իսկ։ Իր խոստովանութիւններու թարգմանութեան մէջ սխալներ եղած են։*

*Յանուն Արդարութեան, ամբաստանեալին փաստաբանը կը բողոքէ ոստիկանութեան կարգ մը արարքներուն դէմ. կը պախարակէ Փետրուար 25-ի դէպքը, յետոյ ատեանին ուշադրութիւնը կը հրաւիրէ իր պաշտպանեալին զանազան ու հակասական յայտարարութիւններուն վրայ։*

*Վկայութիւններէն ալ կ՚երեւայ որ գործին մէջ կանխամտածութիւն չի կայ եւ թէ խնդիրը պարզ ոճիրի մը վրայ է։ Փաստաբանը յետոյ կը խօսի «Մարտիրոս ազգ»-ին վրայ մարդասիրական տեսակէտով եւ կ՚ըսէ թէ ոճիրին շարժառիթը գաղափարային է եւ կը պահանջէ որ Պետրոսը անպարտ արձակուի։*

*Գոչեանի փաստաբանը՝ Մօհամէտ Զաքի էֆէնտի Ապտէլ Նակիպ յետոյ կը խօսի հաստատելու համար թէ ո՛չ ապացոյց եւ ո՛չ ալ կասկածներ կան երկրորդ ամբաստանեալին դէմ եւ պարզապէս անոր անպարտ արձակուիլը կը պահանջէ։*

*Ժամը մէկը քառորդ անցած Ատեանը խորհրդակցութեան կը մտնէ եւ նախագահը կը ծանուցանէ թէ վճիռը խորհրդակցութենէն վերջ պիտի տրուի, չորս օր յետոյ, Եգիպտոսի միւֆթիին կարծիքը առնուելէ ետք։*

*Ժամանակ*, օրաթերթ, Պոլիս, 10/23 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1333, էջ 1։ 11/24

Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1334, էջ 1: 12/25 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1335, էջ 1: 13/26 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1336, էջ 1:

## ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ
## ՎՃԻՌԸ

*Երէկ, ճիշդ կէս օրին, Եղեռնադատ Ատեանին նախագահը դատարանի սրահին մէջ հաւաքուած խուռն բազմութեան մը առջեւ հանդիսաւորապէս կարդաց քաղաքիս Միւֆթիին վաւերացուած վերջնական դատավճիռը, որ արձակուած էր ողբացեալ Արփիար Արփիարեանի վրայ ի գործ դրուած զազրելի ոճրագործութեան հեղինակ Պետրոս Հիւսըննեանի եւ անոր մեղսակից համարուող Զարեհ Գոչեանի դէմ:*

*Ոճրագործ վճռին համաձայն ոճրագործ Պետրոս Հիւսըննեան դատապարտուեցաւ կախաղանի:*

*Զարեհ Գոչեան անպարտ հռչակուեցաւ:*

*Լուսաբեր*, 11 Յունիս 1908, Դ. տարի, թիւ 531, էջ 2:

## ԶԱՐԵՀ ՔՕՉԵԱՆ

*Զարեհ Քօչեան, որ Զորեքշաբթի օրուան վճռոյն համեմատ ազատ արձակուած էր, երկու ժամ յետոյ դարձեալ ձերբակալուելով արտաքսուեցաւ եգիպտական հողէն, ոստիկանական հրամատարին եւ ներքին գործոց նախարարին կարգադրութեամբը:*

*Լուսաբեր*, 13 Յունիս 1908, Դ. տարի, թիւ 532, էջ 2

## ԳՈՉԵԱՆԻ ԽՆԴԻՐԸ

*Այլեւս հաստատուած իրողութիւն մըն է թէ Զարեհ Գոչեան Եգիպտոսի ոստիկանութեան կողմէ յանձնուած է Թուրք կառավարութեան: Այս բանը կը յայտարարուի ֆրանսերէն Բռօկրէ Թերթին միջոցաւ, կէս պաշտօնական ձեւով, եւ կ՚աւելցուի թէ եգիպտական ոստիկանութիւնը պիտի շարունակէ Թուրք ոստիկանութեան յանձնել այն հայերը որ այս երկրին խաղաղութիւնը վրդովեն եւ հարուստ հայերէն սպառնալիքով դրամ պահանջեն:*

*Տնօրինութիւն մըն է այս որ Եգիպտոս ապաստանող Թրքահպատակ հայերուն կացութիւնը տարօրինապէս կը փոխէ այսուհետեւ:*

*Լուսաբեր*, 25 Յուլիս 1908, Դ. տարի, թիւ 550, էջ 3

## *ՏԱՍՆԵՐԿՈՒ ՏԱՐԻ ՊՈԼՍԷՆ ԴՈՒՐՍ* 1896-1908

*ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ*

*Արդարեւ քանի մը օր ետքը դատարանը իր վճիռը արձակեց որուն համեմատ Պետրոս մահուան կը դատապարտուէր, իսկ Գոչեանի մեղսակցութեան մասին պէտք եղածին չափ նիւթական ապացոյցներ չըլլալով՝ դատարանի կողմէ անպարտ կ՚արձակուէր:*

*Եւ սակայն հակառակ այս վճիռին՝ Գոչեան ազատ չարձակուեցաւ եւ բանտարկուած մնաց որովհետեւ հարցաքննիչ դատաւորը Կուպրան պէյ Մուսքաթ համոզուած ըլլալով անոր յանցաւորութեան՝ կ՚ուզէր վարչական անօրինութեամբ մը զայն երկրէն արտաքսել:*

*Կուպրան պէյ Մուսքաթ նոյնիսկ այնպէս կարգադրած էր որ Գոչեան Պոլիս մեկնող շոգենաւ մը դրուի եւ Օսմանեան ոստիկանութեան յանձնուի: Արդ, Գոչեան Պոլսոյ ոստիկանութեան ծանօթ էր իբրեւ վտանգաւոր յեղափոխական մը, այնպէս որ այդ յանձնումը կը նշանակէր զայն առ նուազն ցկեանս բանտարկութեան դատապարտել:*

*Եւրոպական ո՛չ մէկ Արդարութիւն այսպիսի արարք մը պիտի գործէր: Եթէ Գոչեան յանցաւոր էր՝ հարկ էր որ եգիպտական կառավարութիւնը ինք պատժէր զայն, իսկ եթէ անմեղ էր հարկ էր անպայման ազատ թողուլ:*

*Ոստիկանական այս կարգադրութիւնը բնականաբար յուզում առաջ բերաւ Հայերուն մէջ, որոնք թերեւս կ՚ուզէին Գոչեանի պատժուիլը, որովհետեւ իր խաղցած դերը ակնյայտնի էր Արփիարեանի սպանութեան գործին մէջ, բայց չէին ուզեր որ անմեղ հռչակուելէ ետքը զայն Ապտիւլ Համիտի ոստիկանութեան ճանկը նետէին:*

*Գոչեանի պարագան այնքան ընդվզեցուցիչ էր որ նոյնիսկ իր հակառակորդները ձայն բարձրացուցին եգիպտական ոստիկանութեան ընթացքին դէմ, ինչպէս, օրինակի համար, Վահան Թէքէեան, որ Հուսաբերի մէջ յօդուածով մը կը դատապարտէր ոստիկանական անօրինութիւնը եւ կ՚առաջարկէր բողոքի միթինկ մը գումարել տեղական կառավարութեան դէմ:*

*Բայց եղածը եղած էր, Զարեհ Գոչեան, խտիւղական շոգենաւով ղրկուած էր Իզմիր եւ հո՛ն յանձնուած Թուրք ոստիկանութեան, որ Թանկագին որս մը ձեռք ձգողի մը ուրախութեամբ զայն ղրկած էր Պոլիս:*

*Բայց բախտը Գոչեանի հետ էր: Հազիւ Պոլիս փոխադրուած ու բանտարկուած՝ ահա՜ Յուլիս 10-ի յեղափոխութիւնը կը ծագէր, Սահմանադրութիւնը կը հռչակուէր, բանտերու դուռները կը բացուէին եւ Գոչեան ազատ կ՚արձակուէր Աբիկ Ունճեանի տէրոր Վարդանեանի հետ:*

*Բայց միւսը, հէգ Պետրոս Հիւսէյինեանը, թերեւս առանց իսկ Սահմանադրութեան աւետիսը առնելու, բանտին մէջ, միս մինակ, կախաղան կը բարձրանար ոճիրի մը համար որ հայրենասիրական կամ օգտակար ըլլալու չքմեղանքն ալ չունէր:*

*Ըսին թէ Տիգրանակերտցի տէրօրը, վերջին րոպէին, կախաղանին ոտքին տակ, դառնապէս զղջացեր է իր արարքին համար եւ անիծեր է զանոնք որոնք զինքը մղած էին այդ եղեռնին:*

*Ժամանակ*, օրաթերթ, Պոլիս, 13/26 Յունուար 1913, Ե. տարի, թիւ 1336, էջ 1

## *ՈՃԻՐԻՆ ՇՈՒՐՋԸ*
## *ՈՃՐԱԳՈՐԾԻՆ ԻՆՔՆՈՒԹԻՒՆԸ*

*ՏԱՃԱՏ*
*Ուէսդ Հօպօքըն*, 18 *մայիս* 902

*Չեմ կրնար զայրոյթս զսպել երբ կը մտաբերեմ որ ինծի Հայրենակից, քաղաքակից եւ ընկեր մը միանգամայն, իւր կուսակցամոլ բնաւորութեանն Հաւատարիմ ուխտաւոր՝ ականաւոր Հայ գրագէտի մը, ողբացեալ Արփիար Արփիարեանի արիւնը թափելու աններելի յանցանքով այսօր Եգիպտական կառավարութեան ճանկին մէջ րոպէ առ րոպէ կը սպասէ կախաղանի չուանին իր վիզն անցուելուն։*

*Տարաձայնութիւններ շատ եղան այդ մասին, մի քանի անուններ իրար Հետ շփոթելով. սակայն Լուսաբերի* 28 *մարտ* 1908*ի շաբաթ օրուան թիւին մէջ* (*թիւ* 501) *այդ «ճիւաղ»-ի պատկերը Հրատարակուելով՝ մեր Ուէսթ Հօպօքընի Տիգրանակերտցիներուս տարակոյսը փարատեց։ Թէեւ պատկերը գէշ ու անկատար ելած էր, մենք նորէն կրցանք ճանչնալ այդ դէմքը, Յովսէփ Ալիփունարեանը, բնիկ Տիգրանակերտի Ալի Փունար գիւղէն Ալփնարցի Կօկօի* (*Կիրակոսի*) *որդին*, 27-28 *տարեկան անուս ու անմշակ երիտասարդը, որ երկար ատեն Հոս կը բնակէր եւ վերջերս միայն գրեթէ տարիէ մը ի վեր, Նիւ Եօրքի մէջ նպարավաճառի խանութ մը բռնած էր, որուն ներքնայարկէն, անցեալ օգոստոսին, Թաւշանճեանի սպանութենէն Հազիւ ամիս մը յետոյ, գտնուեցան թունաւոր զէնքեր, պայթուցիկ նիւթեր եւ այլ եւ այլ բաղադրութիւններ։ Շնորհիւ Բրօվիտէնսի Հանդէսին, ուր գնացած էր մասնակցելու պաշտօնապէս տեղիս կաճառը, ինքն ալ իբրեւ անդամ մը Հոն կը գտնուէր՝ «սպայ» ճիմիին Հետ, երբ այդ յայտնութեան լուրը կ'առնեն, ալ չեն վերադառնար Նիւ Եօրք եւ ... կծիկը կը դնեն։*

* * *

*Հէ՛գ, Հէգ Յովսէփ, կը մեղքնամ քու երիտասարդ արեւիդ որ ձեռքովդ խաւարեցուցիր, քեզի անէծքի եւ նողկանքի յուշարձան մը կանգնեցնելով Հայ յեղափոխական պատմութեան մէջ. փոխանակ Հայ Հրապարակագրի մը արիւնին մէջ թաթխելու քու գեղջկական ձեռքերդ եւ նախատինքի խարանը դրոշմելու քու ճակտիդ, Վարդանեանի եւ Համբարձումեանի Հետ ամբողջացնելով Վերակազմեալներու ոճրագործ երրորդութիւնը կրնայի՛ր քու ազգակիցներուդ խողխողուելուն վրէժը լուծել, Ալիփունարցի քիւրտ Ալօն կամ Հասանէ Քանճօն ոչնչացնելու դիւցազնական քաջութիւնը գործել եւ քեզի ալ յիշատակելի անուն մը յաւերժացնել։ Եւ սակայն, ինչ որ ալ լինի, քեզի Հետ Համահաւասար անէծքի մէջ թաթխուած է զքեզ գործածող շաՀախնդիր կուսակցութիւնը...։*
*Արմէնիա*

*Լուսաբեր*, 20 Յունիս 1908, Դ. տարի, թիւ 535, էջ 2-3

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Վահան Թէքէեան, «Վճիռէն ետք», *Լուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 18 Յունիս 1908, Դ. տարի, թիւ 534, էջ 1։

2. Վահան Թէքէեան, «Գոչեանի պարագան», *Լուսաբեր*, 11 Յուլիս 1908, Դ. տարի, թիւ 544, էջ 1։

# ՎԵՐՋԱԲԱՆ

Որքան գրիչ, ճիգ եւ ժամանակ վատնած են կուսակցութիւնները իրենց միջեւ պայքարելու, փոխադարձ ամբաստանութիւններ արձակելու, մարդոց ահաբեկելու եւ սպաննելու համար։ Որքան գրիչ, ճիգ եւ ժամանակ վատնած են կուսակցութիւնները իրենց դէմքը պանծացնելու, իրենց հանրային պատկերը ստեղծելու, իրենց յաջողութիւնները գունազարդելու եւ ձախողութիւնները քօղարկելու համար։

Արփիար Արփիարեան մասնակցած է այս գործընթացքին։ Կրնար չմասնակցիլ։ Կրնար ընդհանրապէս հեռու մնալ կուսակցութիւններէն եւ բաւաբարուիլ գրական գործունէութեամբ։ Մասնակցելու ընտրութիւնը ամբողջապէս իրն էր, որքան որ կը կարծենք թէ մարդը իր սեփական ընտրութիւններուն տէրն է։ Բայց մասնակցելով, արդարեւ, իրեն համար անխուսափելի դարձան կուսակցական բանավէճերը եւ ահաւոր չափի հասած ժամավաճառութիւնները։ Ժամավաճառութիւն է նաեւ սոյն գրութիւնս՝ որ խօսեցաւ այդ ժամավաճառութիւններուն մասին։ Կատարուածները՝ որոնք պէտք չէ կատարուած ըլլային, թելադրեցին զայն։ Ես ինքս հեռու չմնացի այս ժամավաճառութիւններէն, թէեւ ընտրութիւնը ամբողջապէս իմս էր։

Գործնապաշտ առումով, արդարեւ, Արփիարեանի շնորհիւ՝ յանձին Արզուեանի, բացայայտուեցաւ գաղափարախօսութեան անունին տակ տեղի ունեցող դրամական շողոքորթութիւններուն կարելիութիւնը կուսակցութիւններէն ներս։ Իսկ իր սպանութիւնը փաստեց՝ թէ որքան վտանգաւոր է բացայայտել այդ շողոքորթութիւնները, շողոքորթութիւններ՝ որոնք տարբեր մակարդակներով եւ շատ աւելի վերահսկուած միջոցներով կրնան տեղի ունենալ մինչեւ այսօր։

Ոչ ոք յաջողեցաւ լռեցնել Արփիարեան։ Արփիարեան մինակ էր իր պաքայրին մէջ։ Եւ այս պատճառով սպաննուեցաւ գրեթէ անհատաբար գործող խմբակի մը կողմէ։ Երեւակայեցէ՛ք, եթէ բոլոր մտաւորականները միաբերան քննադատէին շողոքորթութիւնները։ Հարցերը բոլորովին ուրիշ ընթացք կ՚ունենային եւ այս գրքոյկը չէր գրուէր երբեք։ Կը գրուէր ուրիշ բան...։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)*

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը*

2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ, (ծննդեան 135-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը*

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան